# ՊԱՏԿԵՐՆԵՐԸ

ԳՐԵՑ

ՄՈՒՇԵՂ ՎԱՐԴԱՊԵՏ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Օ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

Mushegh, Archbishop
Patkernere

# ՊԱՏԿԵՐՆԵՐԸ



ԳՐԵՑ

ՄՈՒՇԵՂ ՎԱՐԴԱՊԵՏ








Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Օ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ
1901



ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԻՄ ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄՕՐՍ

## ՏԻԿԻՆ ԿԱՏԱՐԻՆԷ Հ. ՍԵՐՈՎԲԵԱՆԻ

*ԾՆԱԾ*

**1846 Դեկտ. 21**

*ՄԵՌԱԾ*

**1877 Յուլիս 12**

---

Երեսուն եւ մէկ գարուններս ջնջեցին մանուկ հոգիիս մէջ հազիւ փորագրուած պատկերիդ գծերը, զոր անդրաշխարհ տարիր իր աշխարհայնութիւնը կորուսած հոգիիդ հետ։ Ի զուր՝ քանիերեք տարիներ՝ թեւ տուի իմ երեւակայութեանս, քու դէմքդ լուսագրելու, բայց անի չը կրցաւ ճեղքել քեզ վարագուրող ամպերը։ Հիմա երեսունեւերկուերորդ աշնանս այս ցուրտ հովերուն, որոնց մէջ ծնար զիս, Մայր, եւ ուրկէ քու հիւանդագին հառաչանքիդ եւ մաշած ձայնիդ հեծկլտուքը կը փորձուիմ լսել, կը ջանամ վերակազմել ջինջ երեսիդ նիշերը, սոյն ՊԱՏԿԵՐՆԵՐուս գծերով, զորս յիշատակիդ կը նուիրեմ, Մայր։ Ընդունէ, զանոնք իբր շիրիմը քու ցուրտ գերեզմանիդ, եւ իբր ցոլացումը քու պայծառ եւ կատարուն հոգիիդ, որ իմ մէջս կը բնակի։

*1900 Նոյ. 22* ՄՈՒՇԵՂ ՎԱՐԴԱՊԵՏ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Կրօնական հաւատալիքներու մէջ ժողովրդեան միտքը՝ ինքնիրեն թողուած ատեն՝ միշտ դէպի այլանդակը կը միտի :

Պէտք է ուղղել այդ միտքը, ճամբայ մը գծելով անոր առջեւ, եթէ երբեք կ'ուզուի փրկարար դեր մը կատարած ըլլալ մարդկային կեանքի պատմութեան մէջ : Յիսուսի գործը գերազանց յայտնութիւնն է այս ճշմարտութեան :

Դիտուած է որ ժողովրդեան ըմբռնած կրօնը երբ իր բոլոր ազդեցութիւնը գործէ ռամիկ մտքին վրայ, այն ատեն կը սկսի ***կրօնական տենդը*** որուն վրայ ոչ ոք կրնայ հակազդել այնուհետեւ. ուղեղային տենդէն ա՛լ աւելի ուժգին ցունց կուտայ անոր հոգիին, իրականութիւն տալով մտքի այն ամէն յափշտակութիւններուն, որոնք այնքան շփոթ կերպով՝ յաջորդաբար կը ներկայանան իր խանգարուած տեսութեան. եւ մարդ այդ վիճակին մէջ այլեւս չի կրնար որոշել լաւագոյնը անարգէն, շինարարը կործանարարէն : Հոս է որ կը սկսի զեղծումը, հոս է որ ամէնէն սուրբ ներշնչումները աղտոտ շունչերու տակ կը թառամին, եւ սրբավայրը, այնքա՛ն անբծութեամբ ու պարզութեամբ հաստատուած սրբավայրը, Քրիստոսի ձեռքէն ելած այդ հրաշակերտը, կը կորսնցնէ ամէն բան որ Աստուածային է, որ հոգեկան է, որ մարգարէական ոգւով խնկուած է :

Հակառակ հեթանոսական կրօնքի աստուածներուն, որոնք կը նախանձէին մարդերու անմահութեանը վրայ, եւ կը պատժէին ամէն անոնք որոնք յանդգնէին երկնքի խորերէն գողնալ կրակը, կեանք տալու համար ցուրտ եւ կաւային արձաններու, եւ Սոմա, Ամրիդա կամ Նեկտարը՝ անմահութիւն տալու մարդկային մեռած բնութեան, Քրիստոնէութեան մէջ՝ (Պուտտայականութե-

նէ յետոյ) այդ հաւատալիքները յօդս կը ցնդին . հոս Աստուած եւ մարդ շատ կը մօտենան իրարու , այնպէս որ Աստուած մարդ կ'ըլլայ , մարդը աստուածացնելու համար :

Միակ հաւատքը , որ կարող պիտի ըլլայ միշտ մարդը իր բարոյական բարձրութեան եւ հոգեկան անձնիշխանութեան մէջ պահել , պիտի ըլլայ ա՛յն հաւատքը , որ պարզ է , մաքուր , հոգեկան , ներքնական եւ կարելի եղածին չափ հեռի նիւթական թանձրացումներէ , հաւատքը՝ որ գիտակից համոզումներէ կը ծնի : « Վա՜յ այն գիտունին , կ'ըսէ *Մարգարէ*ի հեղինակը (Ճէյմս Տարմէսդէդէր) որ Աստուածային բաներուն կը մօտենայ առանց ունենալու իր գիտակցութեան խորը , իր էութեան անկործանելի յետնախաւին (arrière-couche) մէջ , հո՛ն ուր կը ննջէ իր նախնեաց հոգին , անծանօթ սրբավայր մը , ուրկէ երբեմն դուրս գայ խունկերու բուրում մը , տող մը սաղմոս , վշտագին կամ յաղթական նիչ մը , զոր տղայ եղած ատեն դէպի երկինք բարձրացուցած էր , իր հայրերուն օրինակին հետեւելով , եւ որ պիտի թոյլատրէ իրեն յանկարծ յարաբերութեան մտնել երբեմնի մարգարէներուն հետ » :

Երբ Կրօնքի եւ հաւատքի վրայ կը խօսուի , պէտք է խոստովանիլ թէ զանոնք լաւ հասկնալու եւ անոնցմով մեր ընթացքը ուղղելու համար , պէտք է հաւատացեալի մը անկեղծ զգացումներուն խառնել քիչ մը սկեպտականութիւն, որովհետեւ տարակոյսը այն միակ ճամբան է , որ կրնայ մեզի ճշմարտութեան տանիլ , մեր մանկական քայլափոխերուն եւ խարխափումներուն մէջէն :

Դժբախտաբար Եկեղեցիին նախնի հայրերը , որոնք իմացականութիւնը սպաննելու չափ յառաջ գացին , եւ ***հաւատամ զի անտեղի է*** ըսելով , խապառ փակեցին բանականութեան առջեւ փրկութեան դռները , չպիտի ուշանային՝ տակաւին հեթանոսութիւն բուրող աշխարհի մը հանդէպ , իյնալ այնպիսի վիճակի մը մէջ , որ հեռացնելով նախկին պարզ բունէն , պիտի պատրաստէր զիրենք ընդունելու եւ հիւրընկալելու բեկորներ ա՛յն հաւատալիքներուն , զորս հեթանոս աշխարհը կ'ու-

զեր՝ իբր վերջին յաղթանակ՝ Քրիստոնէութեան հրիտակել :

Այդ հրիտակուած բեկորներու կարգէն էին նկարները, կամ պատկերները, որոնց առջեւ եկեղեցին իր դռները բացաւ, չգիտենք ի շինութի՞ւն թէ ի գայթակղութիւն բազմութեան մը, որ հազիւ մէկ քայլ առած էր դէպի քրիստոնէութիւն :

Հարցում՝ որուն չենք ուզեր կանխաւ պատասխանել :

Մեր այս համառօտ ուսումնասիրութեան նպատակն է . —

1. Ցոյց տալ այն մեծ երեւոյթները, որոնք տեղի ունեցան պատկերներու աշխարհի հորիզոնին վրայ . ցոյց տալ այն զեղծումները ու գայթակղութիւնները , որոնք երեւցան Արեւելեան եւ Արեւմտեան եկեղեցիներու մէջ . ցոյց տալ այն արիւնհեղութիւնները , որոնք քրիստոնեայ գետինը կարմիր ներկեցին պատկերներու դատին համար : Սոյն երեւոյթները բացատրելու համար , մեր տեղեկութիւնները եւ յիշատակարանները պիտի քաղենք եւրոպական ընտրելագոյն մատենագիրներէն , կազմելու համար մեր Պատկերներու մենագրութիւնը .

2. Մեր երկնաւոր Վարդապետին դիմագծութեան եւ պատկերներուն նուիրուած ուսումնասիրութիւնները համառօտել , արդէն եղած աշխատութիւններէն օգտուելով .

3. Հայ եկեղեցւոյ առաջին օրէն մինչեւ ԺԳ–ԺԴ դար՝ ընթացքը ուսումնասիրել, եկեղեցական մատենագրութեան վրայ յենլով, բան մը , որ մեր աշխատութեան ամենէն ինքնուրոյն մասը պիտի կազմէ :

Այս ամէնուն հասնելէ առաջ պիտի բաւականանանք համառօտակի ներկայացնել՝ մեր ընթերցողներուն՝ պատկերագրութեան հեթանոս գետնին վրայ վայելած դիրքը , եւ ցոյց տալ այն կարեւորութիւնը , զոր անիկա ստացած էր շատ կանուխ ժամանակներէ ի վեր :

Պէտք է կանխաւ ըսենք , թէ այս նիւթերնուս մէջ տոհմային եկեղեցական պատկերներու մենագրութիւնը բրած ատեննիս , կարելի եղածին չափ հրաժարեցանք *նիւթը մշակելէ*: Այդ մասին մէջ, տետրակիս ամբողջութիւնը կազմուած պիտի ըլլայ՝ մեծաւ մասամբ՝ անտաշ ատաղձներէ , ու գործը ինքնին ձուլածոյ

ամբողջութիւն մը կարենալ կազմելու համար, պէտք պիտի ունենայ հալոցի մը: Այդ հալոցի պաշտօնը թողուցինք ժողովրդական քննադատ մտքին, ուր պիտի հրահրուի մեր նիւթը, գաղափարներու հոսանքին մէջ ձուլուելու, եւ իր փայլուն արդիւնքը ցոյց տալու համար:

Եթէ չեմ սխալիր, ցարդ մերիններէն միայն Կարապետ Վարդապետ Տահնազարեան *անխոհեմութիւնը* ունեցած էր՝ ժամանակէն *շատ կանուխ*՝ կարծիք մը յայտնել պատկերագրութեանս մասնաւոր մէկ կէտին համար: Ժամանակը եւ այն ատենի տիրող ոգին լռեցուցին զինքը: (Տես. Արեւել. Մամուլ 1875. էջ 217. 257. 286. 321. 370):

Տակաւին այսօր պիտի գտնուին ոմանք որ *անժամանակ* համարին մեր այս գործը: Պատմական ուսումնասիրութիւն մը՝ անկախ կրօնական բոլոր հաւատալիքներէ՝ իրեն ժամանակի չափ չի ճանչնար բնաւ: Ճշմարտութիւնը միեւնոյնն էր երէկ, այսօր, ու պիտի մնայ մինչեւ յաւիտեան: Հետեւաբար մարդուն գործը պիտի ըլլայ փնտռել զայն, դատել, կռուել եւ հասկնալ քան թէ հաւատալ, երբ խնդիրը, նիւթական ու պատմական ճշմարտութեան մը վրայ ըլլայ: Այս ընթացքով մարդ իրաւունք պիտի ունենայ միշտ երկբայիլ ստուգելու համար, եւ ստուգել ի բաց մերժելու համար այն ամէնը, որոնք հաւատքի մաս չեն կազմեր: Ո՛չ անկեղծ ու պարզ հաւատքը, եւ ոչ մարդկային բանականութիւնը պիտի դատապարտէ զանի, որ այդպիսի խնդիրներու մէջ աւելի մեծ բաժին մը կու տայ գիտակցութեան, որ հոգիին յայտնութիւնն է մեր բոլոր գործերուն մէջ:

Այս հաւատքով միայն ձեռնարկեցինք գրքուկիս պատրաստութեան:

**ՄՈՒՇԵՂ. ՎԱՐԴԱՊԵՏ**



# ՊԱՏԿԵՐՆԵՐԸ





## ՆԿԱՐՉՈՒԹԵԱՆ ԱՐՈՒԵՍՏԸ

*Արուեստը կանխամտածուած հետեւութեան մը համար գործածուած մեթոտը եւ պայմաններու ամբողջութիւն մը կ՚ենթադրէ ։ Լիդրէ այսպէս սահմանեց արուեստը․ «Մեթոտի մը համեմատ բան մը շինելու եղանակ»․ եւ Ժիւպէր ըսաւ․ «Արուեստը տեսականին գործնականի վերածուած ճարտարութիւնն է»։ Արուեստը իր մէջ կ՚ընդգրկէ ամէն ինչ որ մարդկային մտքի, ձեռքի ու կամքի միջամտութիւնը կը պահանջէ ։ Բայց զարգացման եւ երեւակայութեան կարգին, մարդկային գործունէութեան յայտնութիւններուն վերապահուեցաւ* **արուեստ** *բացատրութիւնը, որով կը հասկցուին բանաստեղծութիւն, երաժշտութիւն, ճարտարապետութիւն, քանդակագործութիւն եւ նկարչութիւն ։ Սակայն արուեստ ըսելով ընդհանրապէս կը հասկցուին վերջին երեք ստորագրութիւնները, որոնք կը կոչուին նաեւ ծրագրական արուեստ* (art du dessin) *կամ* **կերպընկալ արուեստ** (art plastique) ։

*Մեր նպատակը ըլլալով խօսիլ միայն այս վերջիններու մասին, ըսենք որ մարդ իր տարրական քաղաքակրթութեան եւ կէս-վայրենի վիճակին մէջ անգամ, ունեցաւ այդ* **ծրագ-**

**ռական** արուեստի զգացումը, որ տեսակ մը բանաստեղծութիւն եղաւ իրեն համար։ Այսօր հաստատուած է որ հագուելու պէտքէն առաջ է մարդուն համար, զարդարուելու գաղափարը։ Շատ մը քարայրներու մէջ, այդ դարաշրջանէն՝ գտնուած են քարի, ոսկրի եւ փղոսկրի վրայ կայծքարով քանդակուած և զարմանալի հաւատարմութեամբ ծրագրուած պատկերներ, մարդու եւ անասուններու, ինչպէս նաեւ բնութեան տեսարաններ։ Այդ բնապաշտական արուեստաւորները եղան հաւերը Փիդիասներու և Ջեւկսիսներու, Ռաֆայէլներու և Միքէլ-Անճէլօներու, որոնք յետոյ այդ արուեստներուն տուին կատարելութիւնը՝ յարացուցական անաղօտ ներշնչումներու տակ։

«Նախապատմական դարերու կամ վայրենի ժողովուրդներու յիշատակարաններէն, կ'ըսէ Բօլ-Շարբանթիէ, կարելի է միայն հետեւեալ եզրակացութիւնը հանել. մարդ նոյն իսկ իր վայրենի վիճակին և քաղաքակրթութեան ամենախոնարհ աստիճանին մէջ իրեն յատուկ բնազդում մը ունի, զոր կրնանք կոչել **Գրչական բնազդում** (instinct graphique), եւ այս բնազդումը կը բովանդակէ՝ իբրեւ սերմ՝ ապագայ բոլոր զարգացումներու չարքը»։ (Սոյն տեսութիւնները քաղուած են Grande Encyclopédieի «Art» յօդուածէն, զոր գրած է Շարբանդիէ)։ Մարդկութեան խոնարհ զարգացումին մէջ տակաւ կատարելագործուած արուեստը կ'ըլլայ այն լեզուն, որով մարդ կարելի եղածին չափ պիտի բացատրէ իր անգիտակից բաղձանքներն ու հաւատալիքները, այսինքն մարդկային հոգիին յաջորդական վիճակները, կրօնական պայմաններու տակ։

Հէգէլ ծրագրական. արուեստի պատմութեան մէջ երեք **մեծ ձեւեր** կ'որոշէ, համապատասխան գաղափարի երեք մեծ ժամանակամիջոցներուն։ Առաջին ձեւն է խորհրդանշանականը (symbolique). ջանք՝ որով Արեւելքի մէջ կ'ուզէին մարդիկ տարտամ և անորոշ յղացումներ բացատրել ա'յն ատեն, երբ միտքը տակաւին անկարող էր բնութենէն վեր բարձրանալ։ Ապա կուգայ **դասական** ձեւը (classique), յորում միտքը տակաւ թողլով իր անորոշ վիճակը, բնութենէն ձեւեր փոխ կ'առ-

նէ գաղափարելու համար նիւթը, և կը յաջողի գաղափարին եւ անոր արտաքին յայտնութեան միջեւ ներդաշնակութիւն, հաւասարակշռութիւն և պատշաճաւորութիւն դնել։ Դասական արուեստին համար այլ եւս նշանակութիւն չունի արտաքին բնութիւնը, կը կտրէ կ'անցնի անոր անձուկ սահմանները, և ինքնիրեն յղացումներուն և իմացումներուն արտաքին յայտնութիւն մը կուտայ։

Հէգէլի գաղափարով, դասականին մէկ ճիւղն է քրիստոնէական արուեստը, զոր ինքը վիպական կը կոչէ։ Ծրագրական արուեստի այդ նոր ձեւը նախամեծարութեամբ կը պատկերացնէ մարդացեալ Աստուածը, իր մօրը, Առաքելոց եւ Ս. Հոգիին պատմութիւնը։ Մարդացած և խաչով չարչարուած Աստուածը տառապանքի անհուն արժէքը կուտայ. արուեստը հաճոյք կը զգայ անկէ, և մահը որ Յոյներուն համար պարզ անցք մըն էր դէպի անդրաշխարհ՝ աներկիւղ, թատերական արժէք մը կ'առնէ քրիստոնէական արուեստին մէջ։ «Բնութիւնը անհետ կ'ըլլայ», «Տիեզերք կը թանձրանայ մէկ կէտի վրայ, մարդկային հոգիին վառարանին մէջ», և հոգին իր Աստուծոյն հետ միանալու միակ խորհուրդէն մղուած «ցոյց կուտայ վաղեմի դիւցազնութենէն բոլորովին տարբեր դիւցազնութիւն մը, դիւցազնութիւնը հլութեան եւ հպատակութեան»։

Հէրպերդ Սբենսըր ալ սոյն արուեստներու յեղաշրջութիւնը (évolution) մեքենական օրէնքով մը կը բացատրէ։ Մեծանուն ընկերաբանին համար նկարչութիւնն ու քանդակագործութիւնը նախապէս մասերն էին ճարտարապետութեան, այնպէս որ կ'ըսէ, Աւստրալիացիք անձերու պատկերներ կը նկարէին քարայրներու մէջ, որոնք իրենց համար սրբավայրեր էին. Եգիպտացիք և Ասորեստանցիք որմանկարներով կը դրուագէին Աստուածներուն տաճարն ու թագաւորին պալատը, որոնք ի սկզբան իրարմէ տարբերութիւն չունէին։ Այս որմական դրուագը տակաւ առ տակաւ նկարչութեան և քանդակագործութեան կը փոխուի։ Գունաւոր պատկերներ փորագրուեցան բարձր և խոր քանդակներով, ապա՝ գրոցով անոնց մի-

ջոցները հարթուեցան, և հուսկ ուրեմն փորագրուած պատկերը անջատուելով յառաջ եկաւ արձանը, որուն ոտքերը ի սկզբան բաժնուած չէին։ Այդ ոտքերու բաժանումը եղաւ արուեստի վերջին կատարելագործութիւններէն մին ։

Ի հնումն նկարչութիւնն ու քանդակագործութիւնը միացած ըլլալով ճարտարապետութեան հետ, կրօնի ու արքունիքի միանգամայն ծառայեցին ։

Սբենսըր քրիստոնէական արուեստի մասին խօսած ատեն, անոր մէջ ալ միեւնոյն մեքենական օրէնքը կը դնէ ։ Նկարչութիւնը և քանդակագործութիւնը, կ՚ըսէ, քրիստոնէական արուեստին մէջ ճարտարապետութեան մասերն են ։ Երկուքն ալ, ինչպէս յԵգիպտոս և յԱսորեստան, գործիքներն են կրօնքին ու կառավարութեան. կը դրուագեն չիրիմներ եկեղեցիներու և պալատներու մէջ, և նուիրուած են սրբազան գրոյցներու ։





## ՊԱՏԿԵՐԸ ՀԵԹԱՆՈՍ ԿՐՕՆՆԵՐՈՒ ՄԷՋ

Նկարչութեան եւ քանդակագործութեան գլխաւոր երեւոյթները ցոյց տալէ վերջ, քիչ մը աւելի ընդարձակօրէն յառաջ բերենք, թէ ի՛նչ եղաւ անոնց դերը նախկին հեթանոս կրօններու մէջ, ուր ծնունդ առաւ պատկերագրութիւնը իր նախնական վիճակով, և յետոյ կրցաւ իր բարձր կատարելութեանը հասնիլ, գոհացում տալու համար կրօնական կեանքի ամէն պահանջումներուն ։ Բայց մեր նիւթէն դուրս ըլլալով հոս մի առ մի թուել և տիեզերքի բոլոր մեռած ու-

կենդանի ազգերու վիճակը ցուցնել սրբազան նկարչութեան մէջ, բաւական պիտի համարինք գաղափար մը միայն տալ միջակ եւ բարձրագոյն քաղաքակրթութեան հասնող ազգերէ ոմանց կրօնա-քաղաքական գեղեցկագիտութեան մասին, վստահ ըլլալով որ այս՝ եթէ ոչ կատարեալ, գէթ կարի մերձաւոր վիճակը պիտի ներկայացնէ մեզի պատկերներու մասին ամբողջ հին աշխարհի ունեցած կրօնական մտածումներուն ։

Հնդիկ ժողովուրդին յատուկ եղող վաղնջական սովորութեան հետեւելով, Ճինայական (Djaïnaïsme) հասարակութիւնները ալ բուռն սիրահարներ եղան ուխտագնացութիւններու ։ Սրբավայրերն ու Տիրթաներն էին այն կեդրոնները, ուր կը գտէին ուխտագնացական բարեպաշտիկ զգացումները, և հաւատացեալներ անոնց կը դիմէին Հնդկաստանի ամէն կողմերէն՝ որոշեալ ժամանակներու մէջ ։ Այդ սրբավայրերը, որոնցմէ ոմանք փորուած ժայռեր էին, իրենց վսեմ պարզութեան հետ կը միացնէին ոճն ու ճարտարապետութիւնը, հարուստ զարդարանքի մանրամասնութիւններով և կատարելութեամբ ։ Ճինայական այդ մեհեանները զարդարուած էին քարէ ու պղնձէ արձաններով և միթաբանական տեսարաններով, որոնք փոխ առնուած էին Աստուածային զրոյցներէ (mythe) ։ Երբ Ճինայական գրոց հեղինակութեանն ու վկայութեան կը դիմենք, կը գրեն հնդկագէտները, կը տեսնենք որ տաճարներ կառուցանելու և պատկերներ քանդակելու արուեստը շատ հին է անոնց մէջ ։ Նոյն հեղինակներուն կարծիքին համեմատ, Ճինայականները՝ Պուտտայականներուն հետ՝ ընծայացուներն ու վարպետները եղան հնդկական արուեստին, այնպէս որ իրենց շինած պատկերներն ու խորհրդանշանները կը գտնուին դեռ հնդկական հնագոյն յիշատակարաններու վրայ ։

Իրաւամբ, ժամանակակից հնախօսութիւնը՝ միանալով հնդիկ աւանդութեան հետ, կը հաստատէ թէ Պուտտայականները եղան, որ Հնդկաստան մտցուցին նկարչութեան և քանդակագործութեան արուեստը ։ Պուտտայական պատկերներ

շատ կան, ո՛չ միայն այն գաւառներուն մէջ, ուր այժմ ծաղկած է այդ կրօնը, այլ և նոյն իսկ Հնդկաստանի մէջ։ Այդ պատկերները որ կրօնական մեծ բարեպաշտութեան մը առարկայ եղած են երբեմն, շինուած են ամէն տեսակ նիւթերէ, թանկագին մետաղներէ, քարէ, փայտէ, կաւէ, և նկարուած են լաթի ու թուղթի վրայ։ Այդ պատկերները կը ներկայացնեն Պուտտան՝ իրենց կրօնին հիմնադիրը, Պոտիսադվայները, իբր սուրբ պատուուած նշանաւոր քուրմեր, աստուածներ, ոգիներ ու դեւեր, անձնաւորութիւններ, որոնք դիւրաւ կ'որոշուին իրարմէ, իրենց ընծայուած դիմագծութիւններովը, ստորոգելիներովը և այն անասուններով, որոնք իբր խորհրդանշան դրուած են անոնց քով։

Այդ պատկերներուն մէջ Պուտտա նկարուած է 18-20 տարեկան գեղեցիկ երիտասարդի մը դիմագծութեամբ, անմօրուս, մազերը կարճ, յաճախ կանգուն, և երբեմն ծալապատիկ նստած անիւարի մը վրայ, որ ծաղիկ մըն է, խորհրդանշան սրբութեան. Պոտիսադվայներն ալ գրեթէ նոյն դիրքը ունին, Պուտտային հետ, անիւարի վրայ նստած և փիղերու, առիւծներու, վագրերու և ուրիշ այսպիսի կենդանիներու վրայ աշտանակած. Սուրբ քուրմերն ալ ներկայացուած են գերծուած գլխով. ասոնք կայծակ ունին իրենց ձեռքը, կռուելու համար դեւերուն հետ, և անիւար ծաղիկը։ Ասոքա թագաւորին ժամանակ կատարուած կրօնական առաքելութիւններուն մէջ պուտտայական քուրմեր իրենց հետ տարին պատկերներ և սուրբ գրքեր ի Քաշմիր, ի Նեբալ, ի Պիրմանիա, ի Սիամ և ի Գամպոճ։

Հնդկականութեան (Indouisme) մէջ տաճարներու ներքին մասերը ծածկուած են նկարներով ու քանդակներով, որոնք կը ներկայացնեն Աստուածային անձնաւորութիւններ և Միթաբանական տեսարաններ, որոնց մէջ կային նաեւ այնպիսի որմնանկարներ որոնք կը յիշեցնեն մեզ, կ'ըսէ Միլլուէ, Պոմպէի, ու Հերքուլանումի որմանկարները։ Սոյն կրօնի պաշտամանց մէջ շատ անգամ գլխաւոր աստուծոյն պատկերը առանձին կը դրուէր, չորս սիւներու վրայ բարձրացած ամպհո-

վանիի մը տակ ։ Արաբ և Պարսիկ արուեստի ազդեցու-
թեան ներքեւ շինուած մեհեաններու մէջ , կային ներքին
դուռներ՝ բացուած կոպուրամ (gopouram) կոչուած անհեթեթ
Պիրամիտներու մէջէն , որոնք ամբողջովին քանդակուած ու
նկարուած էին ։ Այդ քանդակները կը ներկայացնէին Բուրա-
նաներէ , Մահապարաթայէն և Ռամաեանայէ փոխ առնուած
միթաբանական տեսարաններ , որոնք՝ իբր սուրբ ներկայացում-
ներ՝ կը պահպանէին մեհեանին ներքին մասերը ։ Հնդիկները
մեհեաններէ զատ ունէին նաեւ բնական ժայռեր , որոնց վրայ
պատկերներ քանդակելով զանոնք առարկայ ըրած էին իրենց
բարեպաշտութեան ։

Յոյները՝ բնական ձիրքերով օժտուած ժողովուրդ , որուն
տեղագրութիւնը (topographie) նպաստեց իրեն գերագոյն
դիրքը գրաւելու քաղաքակրթութեան պատմութեան մէջ ,
կարող եղան կանուխէն կատարելագործուած արուեստ մը ու-
նենալու , առանց ո և է արտաքին ազդեցութեան ։ Յոյները
ո՛րքան կանուխ արտադրելով Հոմերեան աստուածային տո-
ղերը , իբր նախատիպ սրբազան բանաստեղծութեան , չպիտի
ուշանային այդ դիւցազուն ստեղծումները արտատպել քարե-
րու և կտաւներու վրայ ։ Այսու Պէրիկլէսի դարուն կոշտ քա-
րերն ու անտաշ մարմարները սքանչելի կերպարաններ հա-
գան Փիդիասներու գրոցին տակ ։ Աթէնք ծածկուեցաւ գե-
ղարուեստական յիշատակարաններով , որոնց մէջ յունական
հանճարը ի յայտ կուգայ իր հասունութեան անթերի փայ-
լովը , և պէտք է խոստովանիլ որ չկայ աշխարհի մէջ տեղ մը ,
ուր ո՛րքան կատարեալ կերպով բացատրուած ըլլայ գեղե-
ցիկը , քան Աթէնքի Ակրոպոլին մէջ ։ Փիդիաս յաւերժացաւ իր
դպրոցին մէջ ։ Եւ արձանագործութիւնը իր երախտագիտու-
թեան հաւաստին մատոյց անոր , Սկոպայի , Պրաքսիտէլի ,
Լիւսիպպոսի և միւս բոլոր վարպետներուն բերնով ։

Պերիկլէսի դարէն վերջն էր , որ նկարչութիւնը իր դա-
գաթնակէտին կը հասնի , զարդարելու համար պալատներն ու
մեհեանները , շողոմքի գործիք մը ըլլալու համար վեհապետ-

ներուն առջեւ ։ Դ. դարուն (Ն. Ք.) Զաքսիս, Ապեղէս և ուրիշներ հրաշալիքներ արտադրեցին իրենց վրձիններուն տակ ։ Ապեղէս նկարիչը եղաւ Մակեդոնիոյ արքունիքին և հրաշապէս նկարեց պալատներն ու մեհեանները, և իր վեհապետներուն յաղթութիւնները նկարներով արձանագրեց ։ Բէօլէ կը գրէ. «Աղեքսանդր մանուկ, երիտասարդ, մարդ, և նոյն իսկ աստուած, Աղեքսանդր ի ձի կամ ի կառս, պսակուած յաղթութեան ձեռօք, ընկերացած Դիոսկուրներու, գահու վրայ, կամ պատերազմի դաշտին մէջ. Աղեքսանդրի ընկերները, իր ձիերը, ահա ատոնք էին այն նիւթերը, որոնք իր վրձինը գրաւեցին, ցո՛րչափ կենդանի էր Աղեքսանդր» ։ Ասոնց պէտք է միացնել նաեւ Շնորհաց և Ափրոդիտէներու այլաբանութեանց մերկ պատկերները ։ Այս ժամանակամիջոցին լի է յունական Պանթէոնը ամէն աստուածներու պատկերներով ու արձաններով ։ Սակայն Դիոնիսոս, Ափրոդիտէ և Սէրերը եղան այն աստուածութիւնները, զորս նկարչութիւնը աւելի կը սիրէր ներկայացնել անօթներու, որմերու և պաստառներու վրայ ։

Երբ Յունաստան անհուն բաժանումներ ունէր իր մէջ, կրօնի ու քաղաքականութեան տեսակէտով, Միջերկրեանի լայն անկողինը՝ Եգիպտոսէն, Սուրիայէն, Փիւնիկէէն, Ասիայէն ու Ափրիկէէն անընդհատ իրեն կը բերէր վաճառականներու և ծովահէններու նաւեր, որոնց յաճախ իբր տէր կը հրամայէին քուրմերը կամ քահանաները տարբեր ազգայնութիւններու ։ «Անոնք իրենց նաւուն մէջ իբր նուիրական բան մը կը պահէին Աստուծոյ մը փայտէ պատկերը ։ Պատկերը անշուշտ անարուեստ քանդակուած էր, և այն ատենի նաւաստիները այդ պատկերին համար ունէին այն միեւնոյն փեդիշապաշտութիւնը, զոր մեր նաւաստիներէն շատեր ունին իրենց Madoneին համար (EDOUARD SCHURÉ. Des grands Initiés. էջ 222)» ։

Նեղոսի պարգեւը եղող Եգիպտոս իր Թագաւորական չորս հարստութիւններուն ժամանակ, քաղաքական պատմութեան մէջ յաղթութեան և փառքի էջեր գրաւելով հանդերձ, կրօնական ժողովրդեան մը որրանը եղաւ, և խանձարուրը բո-

լոր ésotérique կրօններուն ։ Ողջերի համար յաւիտենապէս մեռած Եգիպտոսը դուրս եկաւ իր մաստաբաներէն, հետը բերելով Մեռելոց գիրքը, որ աղօթքի բանաձեւերու հաւաքածոներէ կազմուած է ։ Այդ նուագներուն և աղօթքներուն մէջ կը գտնուի բանաստեղծական պատկերներու ճոխութիւն մը, որ կը բացատրէ կրօնական հաւատալիքներուն արուեստին վրայ ի գործ դրած ազդեցութիւնը ։

Մեմփեան հարստութեան ժամանակամիջոցին արուեստէն խպառ ջնջուած են տաճարներն ու պալատները . մնացած են միայն շիրիմները, որոնց մէջ կը բնակի կրկնակը (double), այսինքն «մարմնոյ մէկ երկրորդ օրինակը, մարմնական նիւթէն նուազ խիտ նիւթով, անհատին մէկ երփներանգ ստուերագրութիւնը, որ թէպէտ օդային, այլ զայն կը ներկայացնէ գիծ առ գիծ» ։ Աստի յառաջ եկաւ գերեզմանական արուեստին կարեւորութիւնը ։ Այդ կրկնակի գաղափարը ստիպեց Եգիպտացիները Սուրդաբներու (երկրորդ մասն շիրմի) մէջ դնել քարէ կամ փայտէ արձանիկներ, որպէսզի գայ և անոնց մէջ բնակի կրկնակը, և մարդ ներկայ ըլլայ շիրմին մէջ ։ Այդ արձանիկները կամ պատկերները զարմանալի հաւատարմութեամբ նկարուած են, մեռնող անհատներու գեղեցկութեան և տգեղութեան համեմատ, այնպէս որ պէտք է ըսել թէ Եգիպտացի նախնի արուեստաւորները ճշմարիտ կենդանագրողներ էին ։ «Այդ ճարտարութեան պատճառը, կը գրէ Ս. Բոյէտ, պէտք է փնտռել ժամանակին կրօնական հաւատալիքներուն մէջ . Եգիպտացիք կը խորհէին, թէ, եթէ մումիան եղծուի, կարելի է տակաւին կրկնակին գոյութիւնը, այն պայմանաւ միայն, որ մեռեալին մէկ պատկերը գտնուի հոն, խղճմտօրէն ճշգրիտ նկարուած» ։

Թեբեական և Սայիսական հարստութիւններու ժամանակ, եգիպտական մեհեաններու մէջ կային փոքր աւազաններ, որոնց մէջ տօնի օրեր շքեղաշուք նաւեր կը լողային աստուածներու պատկերներով ու խորհրդանշաններով լեցուն ։ Մեհեաններու ներքին մասը կը կազմէր Ժողովոյ կամ երեւման սրահը,

*ուր դրուած էր գերագոյն աստուծոյն պատկերը, և ուր թագաւորն ու մեծ քուրմերը միայն կրնային մտնել ։*

*Պէտք է աւելցնել նաեւ թէ եգիպտական քրմութեան մէջ անհրաժեշտ էր ունենալ կրծանոցներ* (rational) *որոնք ձեւով ու դիրքով կը համապատասխանէին Հրեաներու քահանայապետական լանջապանակին կամ դատաստանաց տախտակին, կամ լաւ եւս պէտք է ըսել թէ այդ կրծանոցները եղան տիպ եւ օրինակ հրէական լանջապանակին ։ Այդ կրծանոցներու մէջտեղ կը տեսնուէին լուսոյ ու ճշմարտութեան խորհրդանշանները, այսինքն պատկերը Ռաի որ աստուածն էր լուսոյ եւ արեւը կը խորհրդանշէր, և պատկերը Մաի, որ դիցուհին էր ճշմարտութեան ։*

*Փիւնիկէի վաճառականութեան մէջ ալ մեծ տեղ մը բռնեց կրօնական արուեստը ։ Փիւնիկեցիք թէպէտ կերպընկալ արուեստներու մէջ չունեցան կատարեալ ճաշակ, այլ սակայն տեսնելով որ արեւմտեան ժողովուրդները սիրահար են կրօնական նկարներու, եգիպտական, քաղդէական և ասորեստանեայ կրօնական նկարչութենէն տիպեր փոխ առին, և սկսան մեհենական պատկերագրութեան մղում տալ, առանց գիտնալու սակայն հեռանկարի* (perspectif) *օրէնքը, որ գրեթէ անծանօթ մնացած էր բոլոր հին աշխարհին ։ Փիւնիկեցիք գոհ եղան իրենց մեհեաններու ակնահաճոյ տեսքէն, և գոհ եղան մանաւանդ իրենց յաճախորդներէն, և ահա այս պատճառաւ, հանճարեղ հեղինակ մը կ'ըսէ. «Փիւնիկեցիք աստուածներ կը կերտէին շահագործելու համար» ։*

**Ծանօթ.** — Էրնէստ Հավէ կը գրէ թէ «Հռովմայեցիք անկեղծ հաւատք մը ունէին քանի մը աստուածներու մասին, որոնք 170 տարիներ տեւեցին մինչեւ Տարկէնեաններու ժամանակ, առանց երբեք պատկերով ներկայացուելու ։ Կիկերոն եւ Վարրոն կը դատապարտէին այն կրօնները, որոնք աստուածութիւնը պատկերներով կը ներկայացնէին ։ Սալոմոն Ռէյնաք ալ միեւնոյն կարծիքը կը յայտնէ ըսելով. «Իբր երկու դարեր Հռովմայեցիներուն անծանօթ էին պատկերները ։ Խորհրդանշաններով կը բաւականանային ։ Գետնի վրայ հաստուած սուր մը կը ներկայացնէր Մարս (Արէս), եւ քար մը կը պաշտուէր իբրեւ Եուբիդէր» ։ Հռովմայեցիներու

համար եղած այս գաղափարը հիմնուած պէտք է ըլլայ Պլուտարքոսի սա տողերուն վրայ . «Եւ չէր իսկ առ Նոմա (Հռովմայեցիս) յառաջագոյն ոչ նկարագիր պատկեր և ոչ այլ ինչ ձուլածոյ պատկեր նմանութիւն աստուծոյ , այլ ընդ հարիւր եօթանասուն ամսն առաջինս Թէպէտ և մեհեանս շինէին նոքա , եւ մատուռնս կանգնէին նուիրականս՝ սակայն դրօշելու պատկերաց երբեք չարարին նոքա» . Զուգակշիռք . Թարգ . Թոմաճեան Հտ . Ա . էջ 242 .





## ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆԸ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Երկար ատեն աշխարհիկ հարստութիւններու և հեթանոսութեան ծառայող նկարչութիւնը և քանդակագործութիւնը եկեղեցւոյ մէջ պաշտօնապէս չպիտի կրնային գործածուիլ , քրիստոնէական իրեր ներկայացնելու ։ Այսու ամենայնիւ պէտք է խոստովանիլ Ս. Պէրժէի հետ թէ «Քրիստոնէական արուեստը այնչափ հին է , որչափ հին է Քրիստոնէութիւնը» ։*

*Հրեաները որոնց ծոցը բուսաւ Քրիստոնէութիւնը , թէպէտ Պաղեստինի բնակիչ՝ միշտ դժուարահաճ եղան գեղագիտական զգացումին ։ Եգիպտացիներու եւ Ասորեստանցիներուն հետ իրենց ունեցած յարաբերութիւնները ո՛չ միայն չզարգացուցին արուեստի ճաշակը իրենց մէջ , այլ մանաւանդ սոսկումով և զզուանքով համակեցին զիրենք ։ Մովսիսական օրէնքը բացէ ի բաց կը մերժէր կենդանի էակներու ամէն ներկայացում կամ պատկեր , պատուիրելով անոնց . «Մի՛ արասցես դու քեզ կուռս ըստ ամենայն նմանութեան . որ ինչ յերկինս ի վեր է և որ յերկրի ի խոնարհ , և որ ինչ ի ջուրս ի ներքոյ երկրի , մի՛ երկիրպագանիցես նոցա , և մի՛ պաշտեսցես զնոսա զի ես եմ*

Տէր Աստուած քո՝ Աստուած նախանձոտ որ հատուցանեմ զմեղս հարանց՝ որդւոց, յերիս և ի չորս ազգս ատելեաց իմոց»։ (Ելք. Ի. 4-5)։

Եւ ահա այս աստուածային պատուիրանին իբր հետեւանք, անկարելի պիտի ըլլար մեզի՝ ի հնման՝ Հրեաներուն մէջ գտնել ուրիշ պատկեր, բայց միայն տապանակի երկու քերովբէները, որոնք քաղդէ-ասորիկ ծագում ունէին, և ուրիմն ու թումիմը որոնք կ'երեւայ թէ Եգիպտական Ռայի և Մայի մէկ խորհրդանշանական արտայայտութիւնն էին։ Սողոմոնեան տաճարին շինութեան ատեն, Փինիկեցի արուեստաւորներու ձեռքով, Սողոմոն «զամենայն որմս տանն չուրջանակի քանդակեալ գրեաց գրոցաւ քորոբս և արմաւինիս»։

Քրիստոնէական ընկերութիւնը՝ վերջնապէս անջատուելով Մովսիսականութենէն, մնաց ծոյլ հին ընկերութեան, որ դէպ ի իր անկումին կը դիմէր։ Հռովմէական օրէնքով արտաքսուած և չարունակ սոսկալի հալածանքներ կրելով հանդերձ, քրիստոնէութիւնը տարածուեցաւ ամէն դի և մեծ ազդեցութիւն ի գործ դրաւ։

Քրիստոնէութիւնը իր գոյութեան առաջին դարերուն փորձութեան մէջ ըլլալով, հաւանականապար կարելի եղածին չափ չկրցաւ ուշադրութիւն դարձնել արուեստին։ Բաց աստի, ինքը մովսիսականութեան հարազատ աղջիկը ըլլալով, իր մօրը նման պիտի արտաքսէր իրմէն պատկերներու գաղափարը։

Սուրբ Պօղոս սրտնեղ բարկութիւն մը կը զգայ, երբ իր քարոզութիւններուն ժամանակ կը տեսնէ որ Աթէնք լի է աստուածներու արձաններով ու պատկերներով։ (Գործ. ԺԷ. 16. 29)։ Այդ ատելութիւնը ժառանգեցին եկեղեցւոյ հայրերն ալ, եւ անոնք իսկ, որ հելլենական բարձր կրթութիւն մը առած էին կանխաւ. քրիստոնեայ ըլլալէ վերջ արուեստի հին հրաշակերտներուն մէջ կռապաշտութեան սերմեր միայն ուզեցին տեսնել։ Կղիմէս Աղեքսանդրացի արհամարհանքով կը խօսի Փիդիասի եւ արուեստագէտ դպրոցի մասին։ Արուեստներու այս անախրկլութիւնը մէկը եղաւ այն պատճառներէն,

որոնք դրդեցին Յուլիանոսը ձեռնարկել քրիստոնէութեան ջնջումին եւ անոր տեղ նորէն հիմնել հեթանոսական արուեստասէր կրօնը ։ Սակայն պատկերներու այս անսիրելութիւնը եկեղեցւոյ վարդապետներուն զգացումն էր լոկ ։ Ժողովուրդը հեռու էր իր վարդապետներուն պէս խորհելէ ։

Անշուշտ հակառակ չպիտի ըլլայ մարդկային զգացման եւ նոյն իսկ պատմական հաստատութեան, ըսել, թէ քրիստոնէութիւնը կարող եղաւ փոխել վարդապետութիւնները, բայց բարքերը փոխել նուազ դիւրին էր որչափ ալ մարդասէր ըլլար կրօնը ։ Յունա-Հռովմէական ընկերութեան մէջ դարերէ ի վեր այնքան հաստատուն արմատ ձգած արուեստին շուտով չպիտի կրնար յաղթել Աւետարանի քարոզած պարզութիւնը ։ Եւ ահա այս պատճառաւ Քրիստոնէութեան մէջ ալ մուտ գտաւ եւ զարգացաւ կրօնական արուեստը ։ Ասոր կը նպաստէր անշուշտ ժողովրդական զգացումը, որ կ'ուզէր իր գաղափարներուն եւ հաւատալիքներուն զգալի ձեւեր տալ հեթանոսական կեանքի վարժութեան վերջամնացութիւնով (survivance) ։

Քրիստոնէական նախնի նկարչութիւնը կը բացատրէ համակերպութեան եւ համբերութեան գաղափարներ, աստուածային ողորմութեան հաւատքը եւ յարութեան յոյսը ։ «Ամէնէն աւելի անգութ հալածանքներուն մէջ իսկ, կը գրէ Պէրժէ, անհնար է գտնել տրտունջի կամ բարկութեան հետքեր. պսակ մը, արմաւենի մը, ազաւնի մը եւ ձիթենեաց ճիւղեր, ահա այն նկարներու հաւաքածոն որ կը զարդարէր մարտիրոսին շիրիմը» ։ Այդ գերեզմանական նկարչութիւնը ծնունդ առաւ առաջին դարու վախճանին, ուր գործածուած պատկերներու ձեւերը յաճախ խորհրդանշանական են եւ այլաբանական։ Ձուկը պատկերն էր Քրիստոսի, որովհետեւ յունարէն ἰχθύς բառին իւրաքանչիւր տառերը առնելով կը կազմէին Ἰησοῦς, Χριστός, Θεοῦ, Υἱός, Σωτήρ, (Յիսուս, Քրիստոս, Աստուծոյ որդի, Փրկիչ) բառերը, ազաւնին (1) պատկերն էր հաւատացեալ եւ անբիծ

(1) «Առաքեալներու ժամանակ, և քրիստոնէութեան առաջին դարերուն,

*հոգիին, զի սուրբ հոգին աղաւնակերպ էր իջած, փիւնիկ թռչունը իբր խորհրդանշան յարութեան, ձիթենին ու արմաւենին՝ իբր պատկեր խաղաղութեան, աքաղաղը՝ որ արթնութեան խորհրդանշան ըլլալով հանդերձ, կը յիշեցնէր նաեւ Պետրոսի ուրացութեան եւ զղջման պարագաները, եւայլն ։*

*Քրիստոնեայ արուեստաւորը Հին եւ Նոր Կտակարաններու մէջէն կ՚ընտրէր նաեւ նիւթեր, որոնք՝ իր կարծիքով՝ աւելի լաւ կը յիշեցնէին քրիստոնէական վարդապետութիւնները, եւ որոնք ժողովրդական գոյն մը առած էին բոլորովին իրենց ընդհանրականութիւնով ու ռամկութիւնով ։ Այսպէս, Նոյ՝ իր տապանին մէջ կը յիշեցնէր փրկագործութիւնը․ Յովնան՝ որ երեք օր մնաց ձկան փորը, կը յիշեցնէր Քրիստոսի Յարութիւնը․ մահ Աբելին՝ անմեղութիւնն ու ոճիրը ։*

*Քրիստոնէական նախկին ըմբռնումներու եւ հաւատալիքներու համաձայն, ամէն նկար բարոյական ուսուցում մըն էր, հոգիին ուղղուած լեզու մը, որ մարդուս մտքին եւ երեւակայութեան հետ կը խօսէր։ Պաւղինոս Նոլի եպիսկոպոսը իր թուղթերէն մէկուն մէջ կը գրէ, թէ պատկերները կը գծուէին իբր զարդ Աստուծոյ նուիրուած սրբավայրերուն եւ ի չինութիւն տգէտ միտքերու, որոնց վրայ այնչափ ազդեցութիւն չէր կրնար ընել այդ դէպքերու գրաւոր պատմութիւնը ։ Այս ժամանակամիջոցին՝ սակայն՝ եւ ոչ մէկ պատմական նախագրաւում կար պատկերագրական նիւթերու ընտրութեան մէջ․ աւելի փրկչական խորհրդանշաններու նկարներ էին, որ ի յայտ կուգային արուեստաւոր վրձիններու եւ գրոցներու տակ, եւ ոչ ոք կը խորհէր տակաւին Քրիստոսի չարչարանքը եւ մարտիրոսներու նեղութիւնները նկարել ։*

---

*քրիստոնեայ ընծայացուները տեսանելի և անտեսանելի բնութեան իզական սկըզբունքը կը պատուէին Ս. Հոգի անունին տակ, որ կը ներկայացուի աղաւնիի կերպարանքով. նշան՝ իգական կարողութեան Ասիոյ և Եւրոպայի բոլոր մեհեաններուն մէջ։ Եթէ. այն ատենէն ի վեր, եկեղեցին ծածկած կամ կորուսած է իր խորհուրդներու բանալին, անոնց իմաստները տակաւին գրուած են իր խորհրդանշաններուն մէջ»* (Les grands Initiés. էջ 84)։

Ի սկզբան Քրիստոնեաներու այդ խորհրդանշական նկարները տարբերութիւն չունէին բնաւ հեթանոսական նկարներէն։ Այս հանգիտութիւնը բնական եւ անհրաժեշտ բան մըն էր, քանի որ քրիստոնեայ արուեստաւորները իրենց արուեստը կ'ուսանէին, կամ ուսած էին արդէն, հեթանոս վարպետներու մօտ, եւ ասոր խսկ է թերեւս այլաբանական նկարներու գոյութիւնը քրիստոնէական պատկերագրութեան մէջ։

Հին գետնադամբաններու մէջ ցայսօր դժուարին չէ տեսնել թէ ի՞նչ տարբերութիւններ ունի Քրիստոսի պատկերը. բարի հովիւին կերպարանքը յայտնապէս Հռովմէական նկարներու մէկ նմանողութիւնն է ([1]). մի զարմանաք երբ այդ պատկերներու մէջ տեսնէք զՔրիստոս անմօրուս, Հռովմէական պալատականի մը տարազով, որ իր դպրոցի բեմին վրայէն ատենաբան հռետորի մը պէս կը քարոզէ իր ունկնդիրներուն։ Բաց աստի, կարելի է ըսել որ շատ մը նկարներ բոլորովին հեթանոսական են քրիստոնէական հին պատկերագրութեան մէջ։ Այնպէս որ, օրինակի համար Որփէոս՝ որ անասունները կը դիւթէ իր քնարով՝ պատկերն էր Քրիստոսի եւ իր բարեբար ազդեցութեան. Փսիքէն՝իբր խորհրդանշան հոգւոյ, եւ Երոս մանուկը։ Այդ նկարները՝ ըստ ամենայնի հեթանոսական՝ իրենց տրուած նոր իմաստներու շնորհիւ կը մտնէին քրիստոնէական փարախը, աւելի աննիւթացած, ու աւելի հոգեկանացած։

Քրիստոնէութեան արտաքին ու ընկերական օժանդակ զօրութիւն մը գտնելէն վերջն է, որ արուեստը աւելի ընդարձակ տեղ մը կը դրաւէ, գերագոյն գաղափարներ ի յայտ բերելու համար եկեղեցիին ծոցը։ Հալածուած կրօնքը դուրս կ'ելլէ գետնադամբաններէն, կայսերական հովանաւորութիւնն ու պաշտպանութիւնը վայելող եկեղեցիներու մէջ կատարելու համար իր ծէսերը։

Քրիստոնեաներու գետնադամբաններուն մէջ ունեցած

---

([1]) On sait que le Bon Pasteur est . . . une imitation du Mercure Criophore. — G. Boissier. *Fin du Paganisme.* II. P. 51.

սովորութիւններն ալ դուրս ելան իրենց հետ լոյս աշխարհ տեսնելու, եւ այդպէսով պատկերը մուտ գտաւ եկեղեցին։

Պատկերներու՝ եկեղեցին մէջ իբր պէտք գործածուելուն դրական ծագումը եղաւ այն սովորութիւնը, որ հաստատուեցաւ չորրորդ դարու սկիզբէն ։ Այդ սովորութիւնն էր մարտիրոսներու նուիրուած եկեղեցիներու մէջ նկարել անոնց կրած չարչարանքի տեսարանները, որոնց ներքեւ պատմական տողեր ալ կ'աւելցնէին ։ Ինքնին անմեղ էր այս ձեռնարկը, որուն նպատակն էր հրահանգել ժողովուրդը եւ քրիստոնէական բարոյականին խստութիւնը ազդեցիկ ընել անոր բարքերուն վրայ ։ Ժողովուրդը, սակայն, շուտով կրնար զեղծանիլ այդ կիրառութենէն եւ կերպարանափոխել զայն աւելորդապաշտութիւններով ։ Եկեղեցին մնաց իր արդար միջավայրին մէջ, խորշելով իբր հեթանոսական՝ այն եղանակէն, որով հեթանոսները կը պատուէին պատկերները, եւ արգիլելով քրիստոնէից՝ որ այդ պատկերներուն չերկրպագեն կամ բացարձակ պաշտամունք մը չմատուցանեն ։

Ժողովուրդը՝ սակայն՝ դեռ կ'ապրէր հեթանոս մորթին մէջ . քրիստոնէութիւնը՝ իբր նոր ոյժ մը՝ դեռ չէր կրցած զանի նորոգել իր կենսաբեր օժտումովը, հետեւաբար անցումի այդ վճռական վայրկեաններուն միակ քայլ մը բաւական պիտի ըլլար ամէնէն աւելի անմեղ զգացումները թանձրացեալ նիւթապաշտութեան մը տանելու ։ Այդ զեղծման առաջին օրինակն էր անշուշտ այն, զոր մեզ կ'աւանդէ Թէոդորէտ ։ Սիմէոն Սիւնակեցի (Ե. Դար), կենդանութեանը առեն իսկ, իր խստակեցութիւններով Հռոմի մէջ ա'յնքան գրգռեց բարեպաշտ մտքերը որ գործաւորներ իրենց խանութներուն առջեւ դրին այդ սուրբին փոքրիկ պատկերները, իբրեւ տեսակ մը պահապան և բժժանք ։ Ուրեմն ինչ որ ի սկզբան զարդարանք մըն էր եղած կամ կրթութեան միջոց մը, կամ օրինաւոր պատուոյ մը առարկայ, անզգալաբար սրբապիղծ պաշտաման մը նիւթ եղաւ, այն հաւատքով թէ սրբոց զօրութիւնը մարմնացած էր իրենց մասունքներուն և պատկերներուն մէջ ։ Պատկերագրու-

*թեան սովորութիւնը, որ միայն մարտիրոսներուն համար սահմանուեցաւ եկեղեցւոյ մէջ, ընդարձակ կալուած մը գրաւեց հետզհետէ և այնուհետեւ նկարուեցան Ս. Երրորդութեան, հրեշտակներուն և Կոյսին պատկերները ։*

*Եկեղեցիի վարդապետներէն և ոչ մին համակերպութիւն ցոյց տուաւ այդ մասին, և Եփիփան կը պատմէ՝ թէ օր մը Պաղեստինի գիւղերէն մէկուն եկեղեցին մտնելով կը տեսնէ վարագոյր մը, որուն վրայ նկարուած էին Քրիստոսի և Հրեշտակաց պատկերներ. կը պատռէ զայն, և պարզ վարագոյր մը կը գնէ այդ եկեղեցիին համար ։ Սերենոս՝ Մարսիլիոյ Եպիսկոպոսը* (600)*, ականատես վկայ ըլլալով այդպիսի պատկերներու տեղի տուած զեղծումներուն, իր թեմի եկեղեցիներէն դուրս հանել տուաւ զանոնք ։*

*Ժողովրդեան աւելորդապաշտ ձգտումները կանուխէն զգալ տուին եկեղեցւոյ այն մեծ պայքարները, որոնք օր մը տեղի պիտի ունենային այդ պատկերներուն շուրջը ։ Անմեղ բարեպաշտութենէ մտած սովորութիւն մը տակաւ առ տակաւ պիտի տարածուէր, ժամանակը պիտի վաւերացնէր զայն, և ատեն անցնելով աւանդական հեղինակութիւն մը պիտի հագնէր, այնպէս որ, եկեղեցւոյ վարդապետներն իսկ, յետոյ պիտի վարանէին վճիռ արձակել պատկերներու կիրառութեան դէմ ։ Ուրեմն պէտք էր սովորութիւնը խեղդել իր մանկութեան ատեն, երբ տակաւին հեղինակութիւն չունէր անիկա. մտածումը կանուխէն վճիռի փոխուեցաւ* 306*ին, Էլվիրի մէջ գումարուած ժողովով, որ իր կանոններուն* 36*րդ յօդուածով խստիւ կը պատուիրէր.* (Placuit picturas in ecclisia non esse debere ne quod colitur at adoratur in parietibus depegnatur) *«Հաճոյ թուեցաւ մեզ որ ո՛չ մէկ պատկեր ընդունուի եկեղեցւոյ մէջ, և թէ՝ որ ինչ առարկայ է պաշտելութեան, երբեք չներկայացուի այդ չինուածոց պատերուն վրայ» ։*

*Զգիտենք, թէ Էլվիրի ժողովական այս որոշումը ունեցա՞ւ՝ գործնականին մէջ, իր արժանաւոր արդիւնքը, որ Եկեղեցիին ու Աւետարանին բացարձակ իրաւունքն էր ։*



## ՊԱՏԿԵՐ ԵՒ ԴԻՄԱԳԾՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Եկեղեցիին զարդի և հաւատացեալներուն բարոյական շինութեան համար նկարուած պատկերներուն մէջ Քրիստոսինը գերազանց դիրք մը գրաւած է հետզհետէ ։ Այս պարագային հանդէպ բնական հարցում մը կը ծագի մեր մէջ. թէ արդարեւ եկեղեցին ունեցա՞ծ է Քրիստոսի վաւերական ու իսկատիպ պատկերը ։ Ահա կարեւոր խնդիր մը, զոր պէտք է պատմականապէս լուծել ։

Քրիստոսի ժամանակ առաքեալներն ու աշակերտները՝ Հրէական դաստիարակութեամբ ու գաղափարներով սնած, պատկերներու մասին ունէին այն հայրենաժառանգ հակակրութիւնը, որ հիմնուած էր Տասնաբանեայի պատուիրանին վրայ ։ Նոր Կտակարանի գրքերուն և ոչ մէկը ունի բառ մը, որ կարենայ գաղափար մը տալ մեզի Քրիստոսի արտաքին կերպարանքին և անոր դիմագծութեանը մասին ։ Նաեւ իրաւամբ դիտել կը տրուի, թէ, մարդիկ՝ որ յենլով մարգարէութիւններու և Յիսուսի խօսքերուն վրայ՝ կը սպասէին, աշխարհի մերձաւոր վախճանին և բոլոր իրաց կերպափոխութեան, ինչպէ՞ս կրնային խորհիլ նկարելու դիմագծերը անոր՝ որ իրենց գաղափարին համեմատ՝ պիտի գար իսկոյն մեծ ու յաղթական փառքով ։

Երբ սրբազան նկարչութիւնը, ըստ բաւականին կարեւոր դիրք մը գրաւեց քրիստոնէութեան մէջ Բ. Դարուն, եկեղեցւոյ վարդապետները ուզեցին իրենց Փրկչին գրեթէ վաւերական պատկերը ունենալ . այս բաղձանքին գոհացման Նոր Կտակա-

րանը լոյս մը չէր տար իրենց. ուստի դիմեցին Հին Կտակարանին և մանաւանդ մեսիական մարգարէութիւններուն, հաւաքելու անոնցմէ դիմագծութիւններ, որոնց օգնութեամբ կարենար արուեստաւորը գաղափարել զանիկա իր վրձինին տակ։

Հռովմէական կայսրութեան բուռն հալածանքին մէջ, ուր քրիստոնեան համակերպութեան և համբերութեան ճշմարիտ տիպարն էր, իրողութիւններու հանգիտութեամբ առաջին անգամ իր ուշադրութիւնը դարձուց Եսայիի այն կտորին վրայ, ուր Քրիստոսը կը ներկայացնէր վիշտերու և անարգութեան մէջ ։ «Ո՛չ գոյր նորա տեսիլ և ոչ փառք, տեսաք մեք զնա, և ո՛չ գոյր նորա տեսիլ, և ո՛չ գեղեցկութիւն, այլ տեսիլ նորա անարգ՝ նուաղեալ քան զամենայն որդւոց մարդկան ։ Այր մի ի հարուածս» ։ (Ես. ԾԳ. 2. 3)։ Այդ դիմագծութեամբ նախ գծուեցաւ և նկարուեցաւ Քրիստոս, Հեթանոս ժողովրդեան հանդէպ, այնպէս որ Կելսոս առիթ ունեցաւ ըսելու. «Եթէ Աստուածային հոգին իջած էր մարդու մը մէջ, պէտք էր որ այդ մարդը հասակով, գեղեցկութեամբ, զօրութեամբ, մեծվայելչութեամբ, ձայնով ու ճարտարախօսութեամբ նշանաւոր ըլլար ուրիշներուն մէջ ։ Որովհետեւ անկարելի է որ մասնաւորապէս իր մէջ աստուածային զօրութիւնը կրող մէկը բանով մը չզանազանուէր միւս բոլոր մարդիկներէն ։ Արդ անիկա (Քրիստոս) ուրիշ մարդերէ աւելի բան մը չունէր, և նոյն իսկ ինչպէս կ'ըսեն քրիստոնեաները, փոքր էր, ցեղ եւ առանց ինչ ազնուութեան» (ՈՐՈԳԻՆԷՍ, ընդդէմ Կիղսոսի. Ձ. 75) ։

Կիլսոսի ամբաստանութիւնը, որ հաւատարիմ արձագանգն էր հեթանոս աշխարհին՝ հաստատութիւն գտաւ Եկեղեցւոյ հարց կողմէ, և այդ անարգ կերպարանին ի պաշտպանութիւն Յուստինոս գրեց իր առաջին ջատագովութեան մէջ. «Երկուս գալուստս քարոզեցին զնմանէ մարգարէքն, զմին՝ որ արդէն իսկ եղեւ, իբրեւ զայր անարգ և ի չարչարանս. զերկրորդն՝ փառօք յերկնից եկեալ հանդերձ իւրով հրեշտակական զօրու» (Գլ. ԾԲ)։ Կղիմէս Աղեքսանդրացի այդ մարգարէու-

թեան իրականութիւնը ուզեց հաստատել, ըսելով թէ Քրիստոս անարգ էր և տմոյն, որպէսզի ոչ ոք հրապուրուելով անոր գեղեցկութենէն՝ անփոյթ մնայ իր ուսուցման հանդէպ։ Այս է նաեւ գաղափարը Տերտուղիանոսի (De la chair de Jesus-Christ §. 9) և Կիւրեղ Աղեքսանդրացիին, իր **Զմերկութենէ Նոյի** գործին մէջ։

Յունաց արուեստագիտական զգացումն էր մանաւանդ, որ կ'ուզէր Քրիստոսը նկարել։ Երանոս խօսելով Գնոստիկեաններէ ոմանց մասին, կը գրէ. «Քրիստոսի պատկերներ ունին, որոնցմէ ոմանք նկարուած են, և այլք տարբեր եղանակաւ շինուած, և կ'ապահովեն, թէ Քրիստոսի ժամանակ Պոնտացին Պիղատոս շինել տուաւ նորա պատկերը։ Նոքա այդ պատկերներուն վրայ պսակներ կը դնեն և կը զետեղեն զանոնք Պիւթագորի, Պղատոնի, Արիստոտէլի, և ուրիշ փիլիսոփայից պատկերներուն կարգը. և հեթանոսներուն նման անոնց յարգանք կը մատուցանէին»։ Իսկ Լամբրիտի վկայութեան համեմատ, Աղեքսանդր Սեւերոս Կայսր (222-235) որուն Սեմական ծագումը կարծես բնական հակակրութեամբ մը օժտած էր զինքը Հռովմէական սովորութիւններու դէմ, իր պալատին մէջ մասնաւոր մատուռ մը ունէր, ուր հաւասար պատիւ կը վայելէին իմաստունները, բարի իշխանները, աստուածացեալ Կեսարներէ լաւագոյնները, և որոնց ի կարգ դրուած էին Ապողոնիոս Տիանացիին, Որփէոսի, Աբրահամի, և Յիսուս Քրիստոսի պատկերները. և մասնաւոր օրեր՝ կամ ըստ այլոց ամէն օր, հոն կը մտնէր առանձինն երբ ինքզինքը աւելի ազատ և անբիծ զգար։

Եւսեբիոս, Պաղեստինացւոց Կեսարիոյ եպիսկոպոսը (264–340), որ իր ամէն դրուածներուն մէջ բուռն կերպով կը հակառակի Քրիստոսը պատկերով ներկայացնել ուզողներուն, այսպէս կը պատասխանէ Կոստանդիանոս Կայսեր քրոջ, որ իրմէ Քրիստոսի պատկերը ուզած էր.

«Ո՞ր պատկերը կ'ուզես դուն, այն ճշմարիտ և անյեղլի պատկե՞րը, որ իր (աստուածային) բնութեան նկարագիրը կը

կրէ, թէ ա՛յն պատկերը, զոր առաւ ան մեզի համար, երբ ծառայի կերպարանքը հագած էր։ Չեմ կրնար մտածել, թէ աստուածային կերպարանքի պատկերը կ'ուզես, որովհետեւ դուն ալ սորված ես անորմէ, թէ «ոչ ոք ճանաչէր զՀայր եթէ ոչ որդի, և թէ ոչ ոք արժանապէս ճանաչէր զորդին, եթէ ոչ Հայր», յորմէ ծնաւ ան։ Դուն ստուգիւ կ'ուզես պատկերը ծառայի և անարգ մարմնոյն, զոր զգեցաւ նա մեր մէջ։ Բայց գիտենք թէ այդ մարմնոյն մէջ թափանցեց Աստուածային փառքը, և թէ մահկանացու մարմինը կեանք ծծեց...։ Ուրեմն ո՞վ պիտի կրնար՝ տմոյն և անշունչ գոյներով և նիւթական ծիրերով նկարել իր արժանաւորութեան փառաշուք և լուսաշող մեծվայելչութիւնները, երբ իր ընտրեալ աշակերտները անգամ, որոնք իրեն հետ էին լերան վրայ, չկրցան զանիկա դիտել, այլ գետին ինկան իրենց երեսներուն վրայ, և խոստովանեցան թէ չեն կրնար հանդուրժել իր տեսքին։ Եթէ իր մարդկային կերպարանը՝ իր մէջ բնակող աստուածութենէն ընդունեց այնպիսի կարողութիւն մը, ի՞նչ ըսել այժմ որ անմահ է և անապական, և իր ստրկական կերպարանը փոխած է Տիրոջ և Աստուծոյ փառքին։ Ի՞նչ ըսեմ հիմա որ յաղթեց մահու և երկինք վերադարձաւ, որ աթոռ նստաւ, Հօրը աջակողմը»։ Այս նամակը կարդաց Գրիգոր Եպիսկոպոս, Նիկիոյ Բ. Ժողովին մէջ։

Քրիստոնէութեան յաղթանակէն և Եւսեբիոսէն վերջն է որ, Եկեղեցւոյ անդամները հաճոյք չեն զգար Քրիստոսի անարգ կերպարանքէն։ Եկեղեցին յաղթանակեց, պէտք էր յաղթականի մը երեւոյթը տալ Անոր Հիմնադրին։ Այդ ձեռնարկին համար վաւերական յիշատակարաններ կը պակսէին իրենց։ Չեն վարանիր, սակայն. յիշատակարաններ կը ստեղծեն։ Եւ առաջ կը բերեն տիպարներ, որոնք կը փոխանցուին, և նմանողութիւնը տեսակ մը պաշտօնական նկարագիր կու տայ անոնց։ Այլեւս մէկը չէր ուզեր զանիկա նկարել բարի հովիւին խոնարհ երեւոյթովը, այլ միապետի մը պէս գահած, և հրեշտակներու բանակէն շրջապատուած։ Հին Կտակարանը,

ինչպէս երբեմն, տուած էր տգեղ դիմագծութեան մը նիւթերը․ հիմա ալ կարող կ'ըլլայ, հայթայթել գեղեցիկ տիպար մը յօրինելու հիմունքը։ Սաղմոսի սա տողերը՝ «Գեղեցիկ տեսանելով քան զամենայն որդիս մարդկան, սփռեցան շնորհք ի շրթանց քոց. վասն այսորիկ օրհնեաց զքեզ Աստուած յաւիտեան։ Աստուած զսուր ընդ մէջ քո, հզօր, վայելչութեան և գեղոյ քո» (ԽԴ. 3-4), բաւական էին գաղափարներու այս յեղաշրջութեան մէջ մեծ դեր մը խաղալով Քրիստոսը իր անարգ վիճակէն բարձրացնելու Դաւթի աթոռը։

Ոսկեբերան այս հատուածին վրայ յենլով կ'ըսէ թէ Քրիստոս «ոչ միայն երբ հրաշք կը գործէր, արժանի էր զարմացման, այլ և շնորհալի էր երբ զինքը կը դիտէին։ Մարգարէն զայս ցոյց կու տայ, երբ կ'երգէ, գեղեցի՛կ տեսանելով քան զամենայն որդիս մարդկան, և երբ Եսայի կ'ըսէ, ոչ գոյր նորա տեսիլ եւ ոչ գեղեցկութիւն, կը խօսի այն բաներու մասին, որոնք պատահեցան անոր՝ չարչարանաց ժամանակ, և գէշ վարմունքին՝ որուն համբերեց խաչին վրայ, և այն ստորնութեան՝ զոր կրեց իր բոլոր կեանքին մէջ»։ (Այս հատուածը յառաջ կը բերէ F. Münter, Sinnbibder գրքին մէջ II, 7)։

Ահա այս վկայութիւններէն կը տեսնուի այն տարօրինակ հակասութիւնը, որ կար Քրիստոսի կենդանագրութիւններուն մէջ, հակապատկեր՝ որ անհաշտելի պիտի մնար մտքերու համար, և ուրկէ Օգոստինոս ազդուած, իր Երրորդութեան երկասիրութեան մէջ կը գրէ․ «Մարմնաւոր Քրիստոսի դէմքին կերպարանը, որն և եղած ըլլար, մէկ եղած է միայն, բայց այդ կերպարանը յեղանակաւորուած է անթիւ ներկայացումներու զանազանականութեամբ» (Ը. 4)։

Այնքան դարերէ ի վեր, սակայն, ոչ ոք խորհած էր տակաւին, Քրիստոսի արտաքին երեւոյթին նկարագրութիւնը ընել պարզ և կատարեալ կերպով․ մինչեւ այն ատեն բաւականացած էին Քրիստոսը կերպարանել պատկերի վրայ, առանց իսկ տող մը աւելցնելու անոր այս կամ այն գիծերու մասին։

Առաջին ծանօթ և ինքնահնար նկարագրութիւնը, զոր

ըրած են Քրիստոնեաները՝ Քրիստոսի արտաքին կերպարանքին նկատմամբ, մինչեւ մեր Թուականին Ը. դարը կը վերանայ եւ զոր առաջ կը բերէ Յովհաննէս Դամասկացի, պատկերամարտական խռովութիւններու ժամանակ, զայն ընծայելով «հին պատմչաց», առանց տալու անոնց անունները։ Ահա Դամասկացիին նկարագրութիւնը.

«Բարձրահասակ, Թուայօն, աչք՝ չնորհալից, քիթ՝ լաւ պատշաճեալ, գանգրահեր, կեցուածք՝ թեթեւակի հակած, գոյն՝ վայելուչ, սեւամօրուս, դէմք՝ ցորենագոյն, նման իր մօր դէմքին, երկար մատներ, հնչուն ձայն եւ քաղցրաբարբառ։ Ծայրագոյն կերպով, հաճոյալի նկարագրով, հանդարտ համակերպող (résigné), համբերատար, եւ չրջապատուած այն ամէն առաքինութիւններով, զորս բանականութիւնը կրնայ երեւակայել Աստուած մարդոյն մէջ։ Ոչ մի չուք փոփոխութեան, ոչ զանազանակութիւն տարբերութեան չնչմարուեցաւ բանին Աստուածային մարդկութեան մէջ, ինչպէս կը բաղբաղեն Մանիքեցիք»։

Այս տողերը գրուելէն քանի մը դարեր վերջ միայն նմանօրինակ գրուածներ երեւեցան, Յոյն եկեղեցական մատենագրութեան մէջ, եւ ԺԴ. դարուն Նիկեփոր Կալիստոս յոյն պատմիչը Քրիստոսը կը նկարագրէ հետեւեալ բառերով, զորս յառաջ կը բերենք Դիոնիսիսի հանգարտի անպաճոյճ թարգմանութեան համեմատ.

«Իր դէմքը գերազանցապէս գեղեցիկ էր եւ առոյգ։ Իր մարմնոյն կեցուածքին ու մեծութեան բարձրութիւնը ընդամէնը եօթն թիզի կը հասնէր։ Իր խոպոպիքը քիչ մը դեղնագոյն էր, ոչ չատ խիտ, քիչ մը կը դառնար իր գանգ եւ խատուտիկ մազերուն վրայ։ Ունէր սեւ յօնքեր, որք չատ ծռած չէին։ Իր դեղինի զարնող աչերն սքանչելապէս բարեչնորհ կ՚ընէին զինքը։ Աչերը առոյգ էին եւ խորաթափանց, եւ իր քիթը բարեձեւ երկարութեամբ։ Ունէր մազ մօրուաց, դեղնագոյն, որ չատ երկար չէր, եւ ոչ ի վայր կախուած։ Բայց իր գլխու մազերը չատ երկար էին։ Որովհետեւ ոչ ածելի

դպաւ իր գլխոյն, և ոչ մարդու մը ձեռք հպաւ անոր. բայց միայն իր մօր ձեռքը, երբ ինք փոքրահասակ էր տակաւին: Իր վիզը քիչ մը ծռած էր, այնպէս որ իր մարմնոյն կեցուածքը (կամ չափը) ոչ շատ բարձր էր, և ո՛չ լայն, նաեւ գէթ ոչ ալ շատ ցած. ցորենի գոյնին պէս էր իր գոյնը. իր դէմքը ոչ բոլոր էր, և ո՛չ սուր, այլ այնպէս, ինչպէս էր իր մօր դէմքը, քիչ մը դէպ ի վար հակած, և միջակ կերպով կարմիր, որ լրջութեան և իմաստութեան երեւոյթ մը կուտար, միացած քաղցրաբարոյութեան հետ . . . : Հակիրճ յամենայնի և ըստ ամենայնի նման էր իր Աստուածային եւ անարատ մօր»: (Hist. Eccl. de Nicefore, fils de Calliste Xanthouplois.—Բարիզ 1587, Հտ. Ա. թերթ 64):

Քրիստոսի դիմագծութեան համար ա՛յսքան հետախուզութիւնները ծնունդ էին յունական նուրբ և արուեստասէր նկարագրին: Արեւմուտք՝ որ այնքան շռայլ էր պատկերներու մասին, և շահագործութեան աղբիւր մը ըրած էր զանոնք, տակաւին գաղափար մը իսկ չէր յղացած Փրկչի դիմագծութեանը համար: Մտածումները սակայն՝ իրարու հաղորդուեցան, եւ արեւմուտք ալ իր կողմէ չուզեց ետ մնալ, բաղդատմամբ արեւելքին, կամ մասնաւորապէս յունական երկրին: Այլ սակայն; հազիւ ԺԲ. դարուն երեւցաւ Քէնթըրպըրիի Անսելմոս Եպիսկոպոսին գրուածներուն մէջ՝ շինծու նամակ մը, զոր իբր թէ խմբագրած էր Լէնտուլոս բդեշխ, ժամանակակից Յիսուսի, և ուղղած Հռովմէական Ծերակոյտին: Այդ նամակին մէջ կը կարդանք.

«Այդ մարդը բարձր և լաւ համեմատական հասակ մը ունի, իր դիմագծութիւնը խիստ է և լի առաքինութեամբ, այնպէս որ զինքը տեսնողը կրնայ սիրել զինք, միանգամայն եւ երկնչիլ անորմէ: Իր գլխոյն մազերը գինիի գոյնը ունին, և մինչեւ ականջաց մօտ ուղիղ են և անփայլ: Բայց ականջներէն մինչեւ ուսերը կը փայլին և գռուլ են: Ուսերէն սկսեալ նման Նազովրեցւոց մազերուն երկուքի բաժնուելով կ՚իջնեն դէպ ի կռնակը: Ճակատը ջինջ է և միացած, դէմքն անբիծ

և կարմրութեամբ մը բարեխառնուած, դիմագծութիւնը ազնիւ և շնորհալից։ Բերանն ու քիթը անստգիւտ են։ Մօրուքը, որ մազերուն գոյնը ունի, առատ է և երկճիւղ։ Աչքերը կապոյտ են և շատ փայլուն։ Յանդիմանելու և կշտամբելու ատեն ահաւոր է. ուսուցանելու և յորդորելու ատեն, խօսքը սիրուն է, և փաղաքուշ։ Կերպարանքը՝ ծանրութիւն և սքանչելի շնորհ մը ունի։ Ոչ ոք տեսած է անոր խնդալը (1), եւ ոչ իսկ լացը։ Երկայնահասակ, ձեռքերը ուղիղ և երկար են. բազուկներն ալ հրապուրիչ։ Լուրջ և չափաւոր իր քարոզներուն մէջ, խօսելու ատեն ժուժկալ։ Կերպարանքով գեղեցկագոյնն է յորդիս մարդկան»։ (DIDRON Պատմ. Աստուծոյ (2), էջ 252)։

Վերոյիշեալ նկարագրութիւնները ինքնին ցոյց կու տան թէ որչա՛փ զանազանութիւն կայ հեղինակներու մտածման կերպին մէջ, երբ կ'ուզեն Քրիստոսը ներկայացնել իր բնական կազմուածքովը ու դիմագծութեամբ։

Այն միակ զգացումը, որ առաջ կը մղէր կրօնական հոգիները Քրիստոսը կերպարանելու համար, երեւակայութիւն էր, որ վաւերական յիշատակարաններուն պակսած ատեն կու գար ամենալայն տեղը գրաւելու, նոյն իսկ պատմական հողին վրայ, երբ խնդիրը ենթադրութիւն մը իբր իրականութիւն ներկայացնելուն վրայ էր։ Երեւակայութիւնը, որ Բասկալի խորհրդածութեան համեմատ «պատրողական մասն է մարդուն մէջ, Տիրուհին վրիպանքի և սխալներուն, որ անվրէպ կանոնը պիտի ըլլար ճշմարտութեան, եթէ անվրէպ կանոնը եղած ըլլար սուտին», վասնզի «միեւնոյն նկարագրով կը ներկայացնէ միշտ ճշմարիտն ու սուտը». երեւակայութիւնը խոր-

(1) Ոսկեբերան ալ նոյն կարծիքը ունի, թէ Քրիստոս չխնդաց բնաւ. «Քրիստոս այնպիսի ինչ (խնդալ եւ ծիծաղիլ) ո՞ւր արար, լուա՞ր երբեք յումեքէ» (տե. Եփրայեցիս «Ճառ ԻԲ. ԺԴ» տես Հատուածք Ոսկեբերանի, էջ 259)։

(2) Աստուածատուր Եպիսկոպոս Տ. Յովհաննէսեանց, իր «Ժամանակագրական պատմութիւն Ս. Երուսաղէմի» գործին մէջ այդ նամակը կ'ընծայէ Պիղատոսի, չգիտենք պատմական ինչ հաստատութեամբ (Հտ. Ա., էջ 15-16)։

հրդականն է մարդուն, երբ անգէտ կը գտնուի սա, բուն իրողութիւններու մասին, և կարգելու անոր վայրաւլատին թափառումը ունայնութեան մէջ։

Ահա ճիշդ այս բանը պատահեցաւ ամէն անոնց, որոնք փորձեցին Քրիստոսը ներկայացնել իր մարդկային բոլոր գծերովը։ Այնպէս որ եթէ մեր կրօնական ջերմեռանդութիւնը ստիպէր զմեզ ընդունելու այդ նկարագրութիւնները, որոնց ամէնքն ալ պատմական գոյներով սեթեւեթած են իրենց բնածին երեւակայութիւնը, այս պարագային հարկադրուած պիտի ըլլայինք ընդունիլ Քրիստոս մը, որ մօրուսաւոր էր, միանգամայն անմօրուս, որ կարճահասակ էր, և միանգամայն երկայնահասակ, որ տգեղ էր, և միեւնոյն ժամանակ գեղեցիկ, որ հրապուրիչ էր, միանգամայն և դաժան, որ դեղին աչք ունէր, և միեւնոյն ժամանակ կապուտաչուի էր։

Այն ընդհանուր հաւատքը թէ որչափ ճշգրիտ և մանրամասն ըլլայ նկարագրութիւն մը կամ պատմութիւն մը, այնչափ աւելի վաւերականութեան կնիքը ունի, վերոյիշեալ նկարագրութիւններէն դիւրաւ կրնայ համոզուիլ մարդ, թէ յաճախ հակառակ ուղղութեամբ կը ճշմարտի երբեմն, այսինքն թէ որչափ նկարագրութիւն մը կամ պատմութիւն մը ճշգրիտ և մանրամասն ըլլայ, այնչափ աւելի կը կրէ զայն երկնող երեւակայութեան դրոշմը. երեւակայութեան՝ որ միշտ բեղուն է, հակառակ իր արդիւնքներու զանազանութեան և որ եղած է և պիտի ըլլայ միշտ՝ հաւատքի զօրաւորագոյն օժանդակը։

Իսկ մասնաւորապէս խօսելով Լենտուլոս բդեշխին ընծայուած այն կարծական նամակին նկատմամբ, պէտք է ըսել թէ բոլորովին անհաւեր բան մըն է այն։ Որովհետեւ նախ Լենտուլոս անունով բդեշխ չէ եղած երբեք ի Հրէաստան։ Այն միակ բդեշխը կամ դատաւորը, որ ապրեցաւ ի Հրէաստան Յիսուսի ժամանակ, Պիղատոս Պոնտացին էր, իրեն նախորդ ունենալով Վալերիոս Գրատոսը։ Յակոբի աւետարանին հեղինակը թուղթ մը կ'ընծայէ Պիղատոսի, ղրկուած Հռովմայ Ծերակոյտին և Տիբեր Կայսեր, սա-

կայն այդ Թուղթին մէջ, բառ մը անգամ չկայ Քրիստոսի դիմագծութեանը նուիրուած։ Անոր մէջ կը պատմուի միայն Քրիստոսի կեանքը։ Երկրորդ, այնպիսի կէտեր կան այդ Թուղթին մէջ, զորս միայն Քրիստոնեայ մը կրնայ յղացած ըլլալ, որպէս են կերպարանիով գեղեցկագոյնն և յորդիս մարդկան, և այլն բացատրութիւնները որոնք կ'ակնարկեն Սաղմոսին բովանդակութեան, որուն մասին չէր կրնար Հռովմայեցի բդեշխ (?) մը տեղեկութիւն ունենալ։

Քրիստոսի մարմնական նկարագրութիւնը ըրած ժամանակ-նիս, պէտք չէ մոռնալ պատմութիւնը այն նշանաւոր արձա-նին, որուն կանգնումը տեառատես կնոջ ընծայած է եկեղեցա-կան աւանդութիւնը։ Եւսեբիոս առաջին անգամ ըլլալով կը յիշատակէ զայն, իր եկեղեցական պատմութեան մէջ (Է. 18) առանց սակայն մեծ կարեւորութիւն մը տալու. և Սողոմէն, յոյն պատմիչ (Ե. Դար) յառաջ կը բերէ զայդ, աւելցնելով միան-գամայն, թէ կայծակը զարկաւ խորտակեց զայն, երբ Յու-լիանոս փորձեց անոր վրայէն կտրել Փրկչին գլուխը, իրեն նուիրուած արձաններէն մէկուն գլուխը անոր տեղ դնելու հա-մար։

Ահա թէ ինչպէս կը պատմէ Եւսեբիոս.

«Եւ զի զքաղաքէս (զՊանէասայ) յիշատակեցաք ոչինչ, ի դէպ համարիմ լռել անցանել զարժանին յիշատակաց պատ-մութեամբ՝ վասն որոյ զկնի մեր եկեսցեն ազգք։ Վասն կնոջ տեառատեսի՝ զոր ուսաք ի սուրբ Աւետարանէն թէ բժշկեցաւ ի Փրկչէն մերմէ ի ցաւոց անտի իւրոց, յայնմ քաղաքէ ասեն թէ էր նա, և ցտուն նորա ցուցանեն անդէն ի քաղաքին. որ և ի Փրկչէն մերմէ առ նա եղելոյ բարերարութեանն նշա-նակ և ախոյեան կայ մինչեւ ցայսօր ժամանակի, զի առաջի դրաց տան նորա երեւի կանգուն ի վերայ բարձր վիմի, պատկեր պղնձի կնոջ՝ ի ծունր իջելոյ, և զբազուկս ի ձեռս աղաչաւորի տարածելոյ։ Եւ ընդդէմ նորուն կնոջ կայ դարձեալ առնապատկեր ի նոյն նիւթոյ՝ առեալ զիւրեաւ կրկնոց պարկեշտ, և կարկառեալ զձեռն իւր առ կինն։ Եւ ի

կողմանէ ոտից նորա ի խարսխի անդ բուսեալ երեւի արմատ ինչ օտար տեսլեամբ իւրով, որ ելանէ բարձրանայ մինչեւ ի դրօշակ հանդերձի նորա, և է դեղ ամենայն ցաւոց: Զայս անդրի զնմանութիւն պատկերի Փրկչին մերոյ ունել ասեն, և եկաց մնաց նա մինչեւ յաւուրս մեր, զոր և աչօք մերովք տեսաք, յուղեւորութեան մերում յայն քաղաք: Բայց ոչ զարմանալ ինչ է, թէ ի հեթանոսաց բարերարեալքն ի Փրկչէն զայս ինչ արարին նմա»:

Այդ արձանի մասին բանաւոր ու բնական է եկեղեցական պատմիչին կարծիքը, քանի որ հեթանոսները սովոր էին երախտագիտական յիշատակարաններ կանգնել ի պատիւ իրենց բարերարներուն. հաւանական է որ ուզած ըլլային նոյն պատիւը ընծայել Աստուածային բարերարի մը, առանց նկատողութեան առնելու անոր ազգն ու հայրենիքը: Պատմիչը յառաջ կը տանի իր խօսքը և կը վկայէ թէ նոյն հեթանոսներուն մօտ էր որ «Նաեւ զառաքելոցն Պետրոսի և Պօղոսի զնմանութիւն կերպարանացն, և զնորուն իսկ Քրիստոսի դեղովք նկարեալ մինչեւ ի մեր ժամանակս տեսաք պահեալ: Զի որպէս հասանեալս եմ անխտիր առաջինք ըստ օրինի հեթանոսաց իբրեւ Փրկիչս ոմանս այսօրինակ պատուել զոսա սովորեցան»:

Այդ արձանին պատմութիւնը շատ բնական գոյներ ունի իր մէջ, մանաւանդ հեթանոս սովորոյթներու տեսակէտով, այլ սակայն տարակոյս մը կրնայ ծնիլ տակաւին հետամուտ մտքերու մէջ, հաւատալու համար, թէ այդ արձանը իրապէս Քրիստոսի՞նն էր թէ ոչ: Այս մասին ո՛ և է ստոյգ և վաւերական վկայութիւն մը չկայ. և Եւսեբիոս որ զայն առաջին անգամ կը յիշատակէ, զայս անդրի զնմանութիւն պատկերի Փրկչին մերոյ ունել ասեն գրելով կը բաւականանայ: Պարզ ասել մը, իր մէջ չունի վաւերականութեան դրոշմ (1):

Այդ արձանին պատմութեան ճշգրիտ լուծում մը տալ

(1) Օրինակ մը բաւական պիտի ըլլայ գաղափար մը տալու այսպիսի Թիւրի-

ձեռնարկած են արդի պատմագէտները, քննադատութեան բովէն անցընելով անոր ամէն մասերը ։ Ահա թէ ո՛րպէս կարծիք կը յայտնէ Լուի լը Գլուա, իր Les Bibles et les initiateurs religieux de l'humanité գործին հատորներուն մէջ, ուրկէ քաղած ենք նաեւ վերոյիշեալ պատմական բոլոր յիշատակարանները. «Մեր թուականի առաջին դարերուն մէջ, պետութեան քաղաքներն ու նահանգները ներկայացուած էին յաճախ կնոջ մը պատկերով, որ մօտ կը կենար կայսեր, և անոր զոհ կը մատուցանէր, կամ ձեռքը կը համբուրէր և կամ պարզապէս անոր առջեւ կը խոնարհէր։ Արձանագրութիւնը երբեմն Կայսրը կը կոչէր «Փրկիչ»։ Այսպէս, Տրայիանոս կոչուած է «Փրկիչ բնակեալ երկրին», Ադրիանոս՝ «Փրկիչ աշխարհի» և այլն։ Բաւական էր որ Գանիմասայ խմբարձանին արձանագրութեան մէջ ջնջուած ըլլար Կայսեր անունը, և պահուած ըլլար միայն «Փրկիչ» բացատրութիւնը, որպէս զի Քրիստոնէական բարեպաշտութիւնը Քրիստոսի պատկերը տեսնէ Տրայիանոսի կամ Ադրիանոսի պատկերին մէջ։ Իսկ E. Guibbon իր Décadence Romaineի մէջ (Հտ. Բ. էջ 34, ծանօթ. 1) կը գրէ. «Երբ մարդ ուսումնասիրէ տարեգիրները, հրաշքներն ու հակասութիւնները մէկզի դնելէ վերջ, կը գտնէ, թէ 300 տարիէն սկսեալ Պաղեստինի Պանէաս քաղաքը պղնձէ խմբարձան մը ունէր, որ կը ներկայացնէր վերարկուի մէջ փաթթուած մեծ անձնաւորութիւն մը, և ծնրադիր կին մը՝ որ իր երախտա-

մայութեանց մասին։ Յուստինոս վկայ՝ իր առաջին ջատագովութեան մէջ կ'ըսէ, թէ Սիմոն մոգ «Սամարացի յազգէ, ի Դիտտոն աւանէ» իբրեւ Աստուած պաշտուեցաւ ի Հռոմ և «պատկերաւ . . . պատուեցաւ»։ Եւ կը յաւելու. «Այն պատկեր կանգնեցաւ ի Տիբերիս գետ ընդ մէջ երկուց կամրջացն և ունէր գիր Հռոմերէն այսպէս. Simoni Deo Sancto. «Սիմոնի Աստուծոյ սրբոյ»։ Ի կէս ԺԶ. դարու Տիբերիսի կղզիներէն մէկուն աւերակաց մէջէն գտնուեցաւ արձան մը, այսպիսի գրով. Semoni Sanco Deo Fidio։ Սանկոս Աստուած մըն էր Սաբինացւոց. իր դաշանց հաւատարմութեան կ'իշխէր, և անոր առաւ իր անունը։ Յուստինոս Semoniն շփոթած է Simoniին հետ և Sancoն ըրած է Sancto։ Նոյն սխալը գործած է և Կիւրեղ Աղեքսանդրացի իր «Կոչումն ընծայութեան» մէջ, Յուստինոսէն առնելով. (Կոչումն Ընծ. Զ. էջ 102)։

*գիտութիւնը կը յայտնէր կամ կ՚աղաչէր անոր և թէ պատուանդանին վրայ գրուած էր τῷ Σωτῆρι τῷ εὐεργέτῃ. — Քրիստոնեայք յայն կը տեսնէին զՅիսուս-Քրիստոս և այն խեղճ կինը, զոր ի տեռատեսութենէ բժշկեց (Եւս. Է. 18. Փիլոստորղոս, Է. 3, եայլն)։ Գ. տը Գօզօպր մեծ իրաւամբ կարծիք կը յայտնէ, թէ աստ խնդիրը Ասկղեպիոս իմաստասէրին կամ Վեսպասիանոս կայսեր վրայ է. այս վերջին ենթադրութեան մէջ կինը կը ներկայացնէ քաղաք մը, նահանգ մը կամ Թերեւս Բերենիկէ Թագուհին»։*





## ԱՆՁԵՌԱԳՈՐԾ ՊԱՏԿԵՐՆԵՐ ԿԱՄ ԴԱՍՏԱՌԱԿ ԵՒ ՎԵՐՈՆԻՔԱ

*Քրիստոսի պատկերներուն մասին խօսուած ժամանակ, պէտք է զանոնք երկու ստորոգութեանց բաժնել. 1 Նկարիչներու և քանդակագործներու չինածները, 2 Հրաշալի պատկերները։*

*Պատմութեան մէջ վերջին դասակարգի պատկերները կոչուած են* **անձեռագործ**, *որ է թարգմանութիւնը յունարէն* ἀχειροποίητος *բառին, կազմուած* ἀ *ժխտական մասնիկէն եւ* χειροποίητος *բառէն և որուն եւրոպական ձեւն է* (Acheiropoïctes)։

*Անձեռագործ պատկերներու թիւը կը զանազանուի տարբեր հեղինակներու կարծեաց համաձայն։ Բազմաթիւ եկեղեցիներ կան, որոնք կը պարծին թէ անձեռագործ պատկեր ու-*

նին, և այսպէսով ընդօրինակութիւնները, որ մեծ հանգիտութիւն ունին իրարու, շփոթուած են վաղնջական և սկզբնատիպ նկարին հետ: Ասոնցմէ նշանաւորագոյններէն առաջինն է Եդեսիոյ Դաստառակը և միւսը՝ Լատինաց Վերոնիկան:

Եդեսիոյ Քրիստոնէական եկեղեցիին հաստատութեան նկատմամբ եղած աւանդութեան աղբիւրները, բնագրի երեք դասակարգի կը վերածուին. Ասորական, Հայկական և Յունական բնագիրներ, որոնց իւրաքանչիւրը, յընթացս դարուց ճոխացած է տարբեր մատենագիրներու ձեռամբ, բացի Հայկականէն, որ Վարդապետութիւն Ադդէի կամ (Թադէոսի) գործոյն թարգմանութենէն զատ հազիւ քանի մը հատուկոտոր յիշատակութիւններ ունի:

Վերոյիշեալ բնագիրներէն երկուքը միայն, այսինքն Ասորականը, որ է Վարդապետութիւն Ադդէի առաքելոյ, և առաջին յունականը, որ է Եւսեբիոսի Եկեղեցական պատմութիւնը, բաւական են անձեռագործ պատկերին կամ Դաստառակին մասին նախնական ծանօթութիւններ տալ մեզի, որովհետեւ ատոնք են հնագոյն յիշատակարանները:

Եւսեբիոս, որ Եդեսական եկեղեցւոյ հաստատութեան պատմութիւնը ըրած ժամանակ կ՚ըսէ թէ իր տեղեկութիւնները քաղած է Եդեսիոյ արքունիքին դիւանատան թուղթերէն, մէջ կը բերէ այն կարծեցեալ թղթակցութիւնը, զոր ունեցած է Աբգար Յիսուսի հետ: Սակայն եկեղեցական պատմիչը իր այնքան մանրամասնութեանց մէջ, և ոչ իսկ պատկերի յիշատակութիւն կ՚ընէ (Տես. Եկեղ. Պատմ. Ա. 12-13 Բ. 1. 6. 7):

Ասորական բնագիրը, որ շատ նմանութիւն ունի Եւսեբիոսի պատմութեան և մանրամասն քան զայն, Յիսուսի բերանացի խօսքերը գնելէ վերջ կ՚աւելցնէ. «Եւ լուեալ զայս ամենայն Անան, զոր ասաց ցնա Քրիստոս առեալ նկարեաց զպատկերն Յիսուսի ընտիր դեղովք, և բերեալ մատոյց Աբգարու թագաւորի Տեառն իւրում: Եւ իբրեւ ետես Աբգար զպատկերն Յիսուսի, ընկալաւ զնա մեծաւ ուրախութեամբ և

եղ գնա պատուով ի սենեկի իւրում (Թուղթ Աբգարու, տպ. Վենետ. էջ 6)։»

Մեր Խորենացի Աբգարու թղթին պատասխանը դնելէ վերջ կ'աւելցնէ. «Զայս թուղթ եբեր Անան սուրհանդակ Աբգարու, ընդ որում եւ զկենդանագրութիւն Փրկչական պատկերին» (Գ. 32)։

Արդ, կը տեսնուի որ Անան անուամբ մէկը միջնորդ մըն է Աբգարու եւ Յիսուսի թղթակցութիւններուն։ Բայց ո՞վ է Անան եւ ի՞նչ պաշտօն ունի։ Այս հարցման ի պատասխան տարբեր կարծիքներ ունին Մատենագիրները։ Գլխաւորաբար Եւսեբիոս, եւ Ֆրանսացի ուխտաւորուհին (Pélerine franque) որ Թէոդոսի օրով Եդեսիա այցելեց (379-395), Խորենացի եւայլն Աննան կը նկատեն Սուրհանդակ (էփիսքոլիֆո'րոս, տաճիտրո'մոս կամ cursor)։ Վարդապետութիւն Ադդէի, եւ Սապրաք հոստանդին Պորփիւրոժէն զանի կը ներկայացնեն իբր Դիւանադպիր քարտուղար, (tabularius) եւ առաջինը ար-ուեստաւոր կամ նկարիչ ալ կ'անուանէ զայն։

Ուրեմն Վարդապետութիւն Ադդէի անուն անվաւեր գըր-ուածն է որ հիմը կը կազմէ Ադդէի ձեռքով նկարուած պատ-կերի մը գոյութեան, եւ որ տեղի տուած է յետոյ ընդարձակ ընդլայնումներու, եւ իբր կուռ ծառայած է Բիւզանդական յետնագոյն մատենագիրներուն։ Իսկ Եւսեբիոս եւ միւս Սիւ-րիական բոլոր մատենագիրները, Բար-Եբրէոսէն զատ, կը թուի թէ բան մը իսկ չեն գիտեր Անանական պատկերի մասին։

Ըստ Ասորական բնագրին, Անան Յիսուսի պատկերը կը նկարէ ընտիր դեղովք սովորական պատկերի մը պէս. այդ պա-րագային մէջ, պատմիչը չատ համառօտ կ'անցնի, եւ որուն կը հետեւի Խորենացի։ Աստուած մը մարդուն առջեւ ներկայա-ցընել պարզ նկարով մը, խայթող գաղափար մըն էր, հետեւա-բար եւ անընդունելի, եւ այսպէսով չատ ժամանակի չէր կա-րօտեր, որ Անան կ'որմնցնէր իր կարծեցեալ պատկերին հե-ղինակութիւնը։ Եւ ահա Զ. դարուն Եւագրոս եւ իրմէ վերջ Գէորգ Սինկեղոս, (Ը. Դար), եւ ուրիշներ կ'աւանդեն թէ

Եդեսիոյ պատկերին հեղինակը Աստուած ինքն էր (Θεότευκτος εἰκών, ἀχειροποίτος) և Խորենացւոյ աշխարհագրութեան մէջ կը կարդանք. «Ուռհա՝ ուր անձեռագործ պատկերն է Փրկչին»։

Սակայն այդ յետնագոյն պատմիչները կ՚անգիտանային, կամ գէթ ճշգրտապէս մեզ չեն ըսեր, թէ ինչպէ՞ս եղաւ այդ անձեռագործ պատկերին կազմութիւնը։ Երկու դար վերջն էր որ Յովհաննէս Դամասկացի՝ այդ մեծ ստարարը պատկերներու մասին եղած վիճաբանութիւններուն, այդ պատկերի մանրամասնութիւնը յառաջ կը բերէ այսպէս. «Մինչեւ առ մեզ հասած պատմութեան մը համեմատ, Աբգար Եդեսիոյ, լսելով Տիրոջը մասին պատմուածները, Աստուածային սիրով վառուեցաւ և դեսպաններ ղրկեց Քրիստոսի, հրաւիրելու համար զանի գալ և զինքը տեսնել։ Մերժման պարագային մէջ, պատուիրեց անոնց որ նկարչի մը շինել տալ անոր պատկերը։ Երբ ամենագէտն ու ամենակարողն (Յիսուս) իմացաւ այդ խորհուրդը. կտոր մը կերպաս առաւ, դէմքը անոր վրայ դետեղեց և հոն նկարեց իր իսկ պատկերը։ Այդ պատկերը լաւ վիճակի մը մէջ պահուած է, մինչեւ մեր օրերը»։ Դամասկացի կը յաւելու նաեւ թէ Փրկիչը այդ պատկերը առ Աբգար ղրկեց ի ձեռն Թադէի։ (Տես. Պատմ. Աստուծոյ էջ 251, Ծան. 2)։

Դարեր անցնելէ վերջ զրոյցը ընդլայնումներ կը գտնէր, բարեպաշտ և երազուն դրիչներու տակ, այնպէս որ ԺԴ. դարուն Նիկեփոր Կալիստոս կը գրէ իր Եկեղեցական պատմութեան մէջ. «Աբգար ուզելով ունենալ Յիսուս Քրիստոսի պատկերը, Եթովպիոյ մէջ գտնուած ճարտարագոյն նկարիչը ընտրեց, և պաշտօն տուաւ անոր կարելի եղածին չափ ճշգրտագոյն նկարել Քրիստոսի դէմքը։ Իր պաշտօնը լաւ կատարելու համար, նկարիչը «բարձրագոյն տեղ մը ելաւ որպէս զի կարենայ դիւրաւ նկատել զանի, և լաւ նկարել անոր պատկերը»։ Բայց իր ձեռնարկութիւնը յաջողութիւն չգտաւ «որովհետեւ Աստուածային լոյսը և երկնային շնորհը՝ որոնք կը շողային իր դէմքէն՝ կ՚արգելուին իր նկարը»։ Լի զարմացմամբ, իր միտքը գրաւուած զանի նկատելէն՝ իր ձեռքն առաջնորդելու համար զօ-

րութիւն չունէր․ Տէրը նշմարած ըլլալով զայն, «կտաւ մը ուզեց և լաւ մը լուալէն վերջ, անով ծածկեց իր անփառունակ դէմքը կտաւը վրան դնելով․ յետոյ Աբգարու ղրկեց»։

Ուրեմն տարբեր բնագիրներու աւանդութեան համաձայն Անանի կամ Աբգարու պատգամաւորները իրենց հետ կը բերեն երկու թանկագին գանձեր, Քրիստոսի նամակն ու պատկերը։

Դիւրին պիտի ըլլար երեւակայել, թէ այսպիսի դարձ մը առանց հրաշքի չէր կրնար ըլլար։ Այդ ալ ստեղծուեցաւ։ Ըստ որում երբ պատգամաւորները ետ կը դառնային, Հիերապոլիս կոչուած քաղաքին դռներուն մօտ, մտան կղմինտրի գործանոցի մը մէջ և անձեռագործ պատկերը պահեցին երկու աղիւսներու մէջտեղ։ Գիշեր ատեն տեղւոյն բնակիչները հրեղէն սիւն մը տեսնելով նոյն տեղը կը դիմեն, եւ, հոն գտնելով Յիսուսի պատկերը կ'ուզեն զայն իրենց սեփհականել, բայց տեսնելով որ աղիւսին վրայ կաղապարուած է ան, աղիւսը կ'առնեն և բուն պատկերը պատգամաւորներուն կը յանձնեն։

Եդեսիոյ պատկերին պատմութիւնը այս է անհա իր բովանդակութեան մէջ, առանց նկատողութեան առնելու այն մանրամասն պարագաները որոցմով յետոյ ապա ճոխացուցած են անվաւեր գրոյցը։

Ինչ որ ալ ըլլայ սակայն այդ աւանդութեան հիմը, պէտք է ըսել, թէ վաւերական չէ այն, և այս իսկ հաստատուած է արդէն պատմական իրողութիւններով։

1. Եւագրիոս և Նիկեփոր Կալլիստոս կը պատմեն թէ, Պարսից Խոսրով թագաւորը կու գայ պաշարել Եդեսիան 544ին, և պարիսպները խորտակելու համար փայտէ պատուար մը կը բարձրացնէ։ Եդեսիացիք կ'ուզեն այդ պատուարը այրել․ չեն յաջողիր, այն ատեն մէջտեղ կը բերեն Փրկչին պատկերը, անոր վրայ ջուր կը սրսկեն, և այդ ջուրէն քանի մը կաթիլ կը կաթեցնեն կրակին և փայտակոյտին վրայ։ Անմիջապէս բոցը կը ճարակի և կը լափէ թշնամիին գործիքը։ Բաց աստի, ուրիշ հրաշքներ ալ կը գործեն այդ պատկերին շնորհիւ, այնպէս որ թշնամիք ամօթապարտ ետ կը քաշուին։

Ֆրանսական ուխտաւորուհին ալ նման դէպք մը կը պատմէ, նոյն ժամանակ տեղի ունեցած ։ Պարսիկները կը յարձակին Եդեսիոյ վրայ ․ Աբգար անոնց վրայ կ'երթայ, Քրիստոսի նամակը ի ձեռին բարձրացուցած և պարզած ։ Խաւարը կը տիրէ թշնամեաց վրայ ․ Թշնամիք ետ կը քաշուին, և ամէն անգամ որ կը յարձակէին Պարսիկները, բաւական էր մէջտեղ հանել Փրկչին նամակը և կարդալ զայն, թշնամին ետ մղելու համար ։

Պրոկոպիոս ալ կը պատմէ թէ Փրկչին նամակը դրուած էր, իբր նոր Պաղլաշիոն (Φηλακτήχεον), քաղաքին դռներուն վրայ։ Կ'աւանդէ թէ, Խոսրով Պարսից թագաւորը յարձակեցաւ, բայց այդ նամակին հանդէպ չկրցաւ դիմանալ, և սաստիկ յօդացաւէ մը բռնուելով, ետ քաշուեցաւ ։

Օրդերիկոս Վիդալիս, Նորմանտացի կրօնաւորն ալ († 1141) նամակին կ'ընծայէ քաղաքին պաշտպանութիւնը ։ «Երբ բարբարոս ազգ մը գայ յարձակիլ քաղաքին վրայ, կ'ըսէ, դրան վրայ կը հանեն մկրտուած տղայ մը, որ նամակը կը կարդայ, և նոյն իսկ այն օրը թշնամիք կա՛մ կը հաշտուին և կամ խոյս կու տան» ։

Յայտնապէս երկու զուգահեռական աւանդութիւններ ունինք մեր աչքին առջեւ, որոնց մէկը Քրիստոսի պատկերին կ'ընծայէ Եդեսիոյ պաշտպանութիւնը, և միւսը նամակին ։ Երկրորդ աւանդութիւնը հաւանականագոյնը կը թուի ըլլալ, որովհետեւ գէթ իր հիմունքը ունի նամակին բովանդակութեան մէջ, որ կ'ըսէ ․ «Քաղաքդ քո օրհնեալ լիցի, եւ թշնամի մի՛ եւս տիրեսցէ դմա յաւիտեան» ։ Բայց Դաստառակը, որ յետոյ ապա Բիւզանդական աշխարհին մէջ կեդրոնը և կուտը եղաւ եդեսական զրոյցին, բնական էր որ ամէնուն ծանօթ պաշտպան ազդեցութիւնը իր վրայ առնէր, քանի որ տակաւ առ տակաւ կը նուազէր Քրիստոսի տուած կարծեցեալ պատասխանին յարգը ։

2. Եւսեբիոս որ շատ մօտ կ'ապրէր Եդեսիոյ և իր Եդեսական պատմութիւնը քաղած է նոյն իսկ դիւանատունէն,

պատկերի մասին չունի յիշատակութիւն ։ Եթէ այսպիսի հրաշալի պատկեր մը գտնուէր, այն ատեն, այնքան ծանր պատասխան չպիտի գրէր Կոստանդիանոս կայսեր քրոջ, երբ Քրիստոսի պատկերը կը խնդրէր իրմէ ։

3. Դ. դարու երկու քրիստոնեայ ուխտաւորներ, երբ սուրբ վայրերը կ'այցելեն, կ'երթան նաև Եդեսիա իրենց կրօնական զգացմանց գոհացում տալու համար ։ Իրենց ուղեւորութեան յիշատակարանները մէջտեղն են այսօր, Itinararium Burdigalense (333) և Peregrinatio Silviae անուամբ, յորս եւ ոչ մէկ յիշատակութիւն կայ Դաստառակի ։

4. Եթէ այսպիսի հրաշալի և անձեռագործ պատկեր մը գոյութիւն ունենար, եկեղեցւոյ վարդապետները, երեւակայութեամբ և ենթադրութեամբ Հին Կտակարանին չպիտի դիմէին, անորոշ մարգարէութիւններէն օգուտ քաղելով զՔրիստոս նկարելու համար ։

5. Իբրեւ վերջին փաստ յառաջ պիտի բերենք L. J. TIXERONTի Les origincs de l'Eglise d'Edésse գործին մէկ հատուածը, որ հեղինակին եզրակացութիւնն է իր մանրազնին աշխատութենէն վերջ ․ «Մենք ի բաց մերժելու համար, գէթ, այս բնագրին մէջէն սուրբ պատկերին դրուագը, գլխաւոր ձեռնարկութիւն (argument) մը ունինք ։ Փրանկ ուխտաւորուհին որ ի ժամանակս Թէոդոսի այցելեց Եդեսիա, չտեսաւ հոն Սուրբ պատկերը ։ Եպիսկոպոսը, սակայն, ցոյց տուաւ անոր ամէն ինչ, որ կրնայ հետաքրքրել քրիստոնեայ կին մը, և անընդունելի է, թէ կա՛մ զանց ըրաւ ցոյց տալ անոր թանկագին մասունքը, կա՛մ թէ ուխտաւորուհին զանց ըրաւ խօսիլ անոր մասին, իբր նուազ կարեւոր պարագայ մը ։ Այս ժամանակամիջոցին ուրեմն Եդեսիոյ մէջ չէին հաւատար, գէթ քիչ մը ընդհանուր կերպով՝ թէ Փրկչին պատկերը ունէին ։ Կարելի պիտի ըլլա՞ր այս, եթէ գոյութիւն ունեցած ըլլար Գ. դարու վախճանէն սկսեալ, այս պատկերին մէկ յիշատակը քաղաքին Քրիստոնէական ծագմանց պատմութեան մէջ ։ Չեմ կարծեր, որովհետեւ ընդունելով նոյն իսկ թէ Ադդէի վարդապետու-

թեան յիշատակութիւնը չպիտի կրնար դար մը մնալ առանց ստեղծելու իր առարկան, առանց փորձուելու միաձայնութեամբ, որ անոր առարկայ մը գտնուի ։ Ամէն պարագայի մէջ, գէթ պիտի փորձուած ըլլար բացատրել մասունքին անհետացումը ։ Արդ, այս վերջին կէտին վրայ խնդիր չկայ Ստոյն-Կոստանդնի կամ Cod. Vindobonensisի (XIV) պատմութենէն առաջ ։ Մովսէս Խորենացի յայտնապէս կ'ըսէ թէ, իր ժամանակ պատկերը տակաւին Եդեսիա էր, և չի խօսիր ո՛չ անհետացման և ոչ գիւտի մասին ։ Եթէ ուրեմն Թէոդոսի առաջին տարիներուն մէջ, չուրջ 380 թուականաւ, Սուրբ պատկերը Եդեսիա տակաւին գրաւած չէր իր տեղը, անոր վերաբերեալ դրուագը չկրցաւ գտնուիլ Եւսեբիոյ տեսած յիշատակարանին մէջ. **Ադդէի վարդապետութեան** մէջ իր ներկայութիւնը վերջամուտ յաւելման մը իրողութիւնն է» (էջ 101–102) ։

Արեւմուտք, որ Բիւզանդական կրօն-արուեստական փորձերուն նմանելու պատրաստականութիւն մը ունէր միշտ, չուշացաւ գիւտը ընել **անձեռագործ** պատկերի մը, որ է Volto Santo «Սուրբ դէմք» ։ Այդ պատկերին յիշատակութիւնը կը գտնենք ԺԲ. դարուն Գերման բանաստեղծութեան մը մէջ, զոր Ուէրնհըր քահանայ խմբագրած է 1175ին ։

Ահա այդ ոտանաւորին թարգմանութիւնը.

«Քրիստոսի հաւատարիմ մի աշակերտուհին՝ Վերոնիքա՝ ուրախութեամբ կը զեղուր այն ամէն անգամ, երբ կը տեսնէր Տիրոջ դէմքը ։ Անոր պատկերն ունենալու համար, կտաւ մը կը տանի Ղուկաս անուն նշանաւոր արուեստաւորին, աղաչելով որ Տիրոջ դէմքը նկարէ անոր վրայ ։ Ղուկաս կը խոստանայ նկարել Քրիստոսը, այնպէս որպէս տեսած էր զանի այնօր ։ Իր գործը աւարտելէ վերջ, պատկերահանը կը պարծէր յաջողած ըլլալ ։ Բայց երբ Վերոնիքայի հետ Փրկչին մօտ եկաւ, կը տեսնէ որ անոր դէմքը բոլորովին տարբեր է ։ Կը զարմանան, Վերոնիքա կը վշտակրի, և Ղուկաս անոր կը խոստանայ ուրիշ պատկեր մը նկարել ։ Բայց այս պատկերն ալ տակաւին շատ քիչ նմանութիւն ունէր ։ Փորձեց երրորդ

պատկեր մը չինել, միշտ ի դուր։ Այն ատեն Աստուած լսեց կնոջ աղօթքը, և երբ Տէրը զանոնք տեսաւ, ըսաւ անոնց. «Դու Ղուկաս և բարի Վերոնիքա, դուք սրտիս կը դպչիք։ Բայց եթէ ես օգնութեան չգամ, քու արուեստդ անբաւական է։ Իմ դէմքս ծանօթ է միայն հոն՝ ուրկէ ես ղրկուեցայ»։ Յետոյ ըսաւ Վերոնիքայի. «Տունդ մտիր, և ինձ ուտելիք պատրաստէ, այսօր իսկ պիտի գամ քեզի». Վերոնիքա ուրախութեամբ տուն մտաւ եւ իր պատրաստութիւնները տեսաւ։ Հասաւ Որդին Աստուծոյ, ջուր ուզեց և լուացուեցաւ, յետոյ առաւ կտաւ, զոր Վերոնիքա տուաւ իրեն սրբուելու համար։ Զայն իր դէմքին վրայ դրաւ, և իր պատկերը դրոշմեց անոր վրայ։ «Ասիկա կը նմանի ինձ, կ'ըսէ, քեզ պիտի շնորհէ մեծ կարողութիւն մը, և օգտակար պիտի ըլլայ բոլոր բարեկամներուդ։ Հրաշքներ պիտի գործէ այս, երբ այլ եւս զիս չպիտի տեսնէք»։

Այս զրոյցին մէկ նմանութիւնն ալ կը տեսնուի Լատին Վարք Սրբոցին մէջ, (Légende dorée), ուր կ'աւանդուի, թէ Վերոնիքա այդ պատկերը Հռոմ տարած ըլլայ, և անով բժշկած Տիբեր Կայսրը, իր հիւանդութենէն։

Սակայն Վերոնիքայի զրոյցը յեղանակաւորումներ կրեց յընթացս դարուց և Վերոնիքա եղաւ երուսաղեմացի կին մը, որ տեսնելով զՅիսուս Գողգոթայի ճամբուն վրայ՝ գլուխը փուշ պսակ և դէմքը արիւն քրտինք, կը գթայ անոր վրայ և իր անուշահոտ թաշկինակը Յիսուսի կ'երկնցնէ, քրտինքը սրբելու համար։ Յիսուս երախտապարտ, այդ թաշկինակին վրայ կը դրոշմէ իր դէմքին այլայլած գծերը, և զայն Վերոնիքայի կու տայ։ Եւ զրոյցը այս երեւոյթին տակ աւելի ժողովրդական եղած է, որուն պատճառաւ այդ պատկերը կոչուած է նաեւ capiet spinosum seu cruentatum. «գլուխ փշապատ եւ արիւնալի»։

Ի սկզբան, երբ կոյր բարեպաշտութիւնը ստիպած էր երկիւղած սրտերը անհամեմատ յարգանք մատուցանել այդ զրոյցին և իր ծագման, զանազան կարծիքներ յայտնուեցան Վե-

*րոնիքայի անձնաւորութեան մասին ։ Ըստ ոմանց, Վերոնիքա կամ Բերենիկէ, կամ մանաւանդ* Βερονίκη, *Աւետարանի ան-ուանեալ կինն էր, իսկ ըստ այլոց կին մըն էր ազնուական ընտանիքէ, Մեծին Հերովդէսի թոռնուհին, չփոթուելով անշուշտ Բերենիկի հետ, որ մայրն էր Հերովդիասի և Սողոմէի մամը ։*

*Այսօր անաչառ քննադատութիւնը ցոյց կուտայ մեզ, թէ «Վերոնիքա կամ* Véronique *իրական անձնաւորութիւն մը չէ, այլ մանաւանդ քննադատներու կարծեաց համաձայն Հիւբրիդեան* Vera icon ***«Ճշմարիտ պատկեր»*** *աղաւաղումն է լատին աղաւաղումը ։* Vera icon *բացատրութիւնը* (1) *նախ տրուեցաւ պատ-****կերին****, իբր թէ ըսուէր* ***անձեռագործ****, կամ* imago non manufacta sed divinatus impressa, *և ապա չփոթուելով գործածուեցաւ իբրև կնոջ անուն ։*

*Մեր ցարդ յառաջ բերած պատմական վկայութիւնները, Լուկը Պլուայի և ուրիշներու հետ սա եզրակացութեան պիտի տանին զմեզ, թէ Քրիստոսի պատկերները նուազ երեւակայական չեն, քան իր անձին նկարագրութիւնները, և թէ Աբգարու և Վերոնիքայի զրոյցները նպատակ ունին վաւերականութեան դրոշմը տալ էապէս ստայօդ պատկերներու գոյութեան ։ Գալով զգացումին, որուն կը պատասխանեն այդ զրոյցները, դիւրաւ կը բացատրուի այն ։ Քրիստոսի պատկեր չունէին երբեք, և ոչ ալ ճշգրիտ գաղափար անոր գծերուն նկատմամբ. առաջին դարերու քրիստոնեաները չզբաղեցան ատով, երբ բարեպաշտութիւնը (!), աւելի սուր կերպարանք մը առաւ, բաղձաց ներկայացնել զՔրիստոս, ո՛չ թէ գեղնա-*

---

(1) *Դիտուած է, թէ կրօնից պատմութեան մէջ է որ ամէնէն աւելի այս օրինակ սխալներ տեղի ունեցած են, այսինքն հասարակ անունները յետոյ ապա՝ կամաւ թէ ակամայ՝ յատուկ անուններու վերածուած են։ Ֆիւսթէլ տը Քուլանժ, իր* Cité anti-que*ին մէջ նման օրինակ մը առաջ կը բերէ, երբ կը խօսի նուիրական կրակի մասին, թէ ինչպէս յունարէն* ἑστία *ու լատինական* vesta *բառը, որ ի սկզբան կը նշանակէր պարզ կրակը կամ անոր սեղանը, յետոյ ապա եղաւ Վեստա կոյսը դիցական, որուն Ովիդիոս «կենդանի բոց» անունը կու տայ։* (*Տես.* Fustel de Coulanges, ***La Cité Antique.*** 17me éd. P. 27-28)։

Ուրեմն պէտք էր Հրեաներու և ոչ-քրիստոնեաներու առջեւ բանալ քրիստոնէութեան ճամբան, բառնալով պատկերներու պաշտամունքը։ Այդ գործին առաջին ձեռնարկը ըրաւ Լէոն Կայսր Իսաւրացին։

Լէոն Գ. Կայսր Իսաւրացին (717–741) ձեռնարկեց կրօնաբարոյական յաղթութիւն մը տանիլ, ստիպելով Հրեաները, որ ընդունին քրիստոնէական կրօնքը։ Կայսրը փորձեց նախ համոզելով վերցնել տալ պատկերները, բայց երբ տեսաւ որ դիմադրութիւնը իր սպասածէն ուժգին եղաւ, այն ատեն միայն բուռն միջոցներու դիմեց։

Կը կարծուի, թէ Կոստանդին Նակոլիայի Եպիսկոպոսը, որ եռանդուն պատկերամարտ մըն էր, խորհուրդ տուած ըլլայ Կայսեր, ծայրայեղ միջոցներու դիմել իր ձեռնարկութեան միջոցին։

Կայսրը եկեղեցականներու և աստուածաբաններու խումբ մը ունէր իրեն գաղափարակից։ Նոյն ժամանակներուն էր, որ հրաբղխային ժայթքում մը տեղի ունեցաւ, Թիրա և Թերասիա կղզիներուն մէջտեղ, և ծնունդ տուաւ նոր կղզիի մը, որ միացաւ Հիերա կղզիին հետ։ Այդ երեւոյթը պատկերամարտներու կողմէն, երկնային պատուհաս մը նկատուեցաւ նորածին փեդիչապաշտութեան, ուստի գործի սկսաւ։ 726 թուականին Կայսրը խնդրեց Գերմանոս Պատրիարքէն որ պատկերներու պաշտաման ջնջումը արտասանէ։ Պատրիարքը մերժեց կատարել Կայսեր պահանջումը, և Լէոն իր կայսերական իշխանութեամբ հրատարակեց Հրովարտակ մը, որով կը հրամայէր նախ եկեղեցիներէն դուրս հանել նուիրական համարուած պատկերները։ Յովհաննէս Դամասկացի, հակառակեցաւ Կայսեր հրովարտակին, և անոր պատճառ եղող չարժառիթներուն, և սկսաւ գրել իր երեք ջատագովական ճառերը ի նպաստ պատկերներուն։ Միւս կողմէ Թէոդոր Ստուդիտ եւս կ'ըսէր, թէ կայսեր ընթացքը վերստին կը տանէր քրիստոնեաները այն իշխանութեան, ուրկէ հազիւ ազատած էր զիրենք Նոր ուխտը, նամանաւանդ ուրիշ բան չէր նշանակեր այդ, եթէ ոչ վլանալ

Քրիստոսի այն պատիւները, զորս պէտք է ընծայել անոր, և ուրանա՛լ է անոր մարդեղութեան ճշմարտութիւնը, ի մի բան յոռեգոյնն էր հերետիկոսութիւններուն ։

Պատկերամարտական աւերումները սկսան, և կայսերական պալատին դրան վրայ դրուած Քրիստոսի մէկ պատկերը վերցնելով այրելու պաշտօն ունեցող անձը, հազիւ թէ սանդուխին վրայ բարձրացած էր, խուժանը հասաւ և վար առնելով զանի պատառ պատառ ըրաւ ։

Երբ մէկ կողմէն տիրող չփոթը տագնապալի երեւոյթ մը կ'առնէր մայրաքաղաքին և շրջականներուն մէջ, և պատկերներու վէճերը կը յուզուէին, միւս կողմէն տեղ տեղ երկրաշարժներ պատահեցան և քանի մը գաւառներու մէջ մեծ աւերումներ գործեցին ։ Կայսրը նոր հրովարտակ մըն ալ հանեց, որով ոչ միայն կ'արգիլէր պատկերներու մատուցուած պաշտօնը, այլ և պատկերագրութիւնն ու անոր գործածութիւնը ։

Գերմանոս Կ. Պոլսոյ Պատրիարքը, բուռն դիմադրութիւններէ վերջ, տեսնելով որ բռնաբարուած է իր պատրիարքական իշխանութիւնը, ստիպուեցաւ հրաժարիլ աթոռէն (730 յունուար) և քաշուիլ իր տունը, ուր մեռաւ տասը տարի վերջ ։ Պատկերներու պաշտպան եպիսկոպոսները կը ստիպուէին լքել իրենց պաշտօնները, կռիւը կը ծաւալի ամենուրեք ։ «Պատկերամարտները, կը գրէ Հէրկէնրիօթէր, Նոր Վանդալներ՝ աւերեցին այն ատեն արուեստի գեղեցկագոյն հրաշակերտները» ։

Սակայն Լէոն կայսրը այս ամէնը կ'ընէր ընդդէմ պատկերներու, առանց իր կողմը ունենալու եկեղեցւոյ հեղինակութիւնը ։ Ուստի երբ Գերմանոս չուզեց ձայնակցիլ իրեն, Կայսրը գրեց առ Գրիգոր Բ. Պապ, խնդրելով որ հաստատէ իր հրովարտակները ։ Պապը յանդիմանական պատասխաններ գրեց Կայսեր, ցոյց տալու համար թէ Կայսրը իրաւունք չունի այդչափ հեղինակութիւն գործածել եկեղեցական խնդիրներու մէջ ։ «Եկեղեցական վարդապետութիւնները, կը գրէ Պապը, Կայսրերու գործ չեն, այլ եպիսկոպոսներու, որոնք պար-

տաւոր են զանոնք ապահովութեամբ հաստատել ։ Ինչպէս եպիսկոպոսները կը հրաժարին քաղաքական գործերէ, Կայսրերն ալ պարտաւոր են հրաժարիլ եկեղեցական գործերէ, և գոհանալ իրենց յանձնուած գործերով» ։ Կայսրը կը պահանջէր որ տիեզերական ժողով մը գումարուի, խաղաղութիւնը հաստատելու համար. «Թող Լէոն խաղաղութի՛ւն շնորհէ, կը գրէր Գրիգոր, և խաղաղութիւնը հաստատուած պիտի ըլլայ»։ Գրիգոր Գ. ևս իր թուղթերով ջանաց ետ դարձնել Լէոն կայսրը իր պատկերամարտ գաղափարներէն, և այս խորհրդով լեկատներ ալ ղրկեց ու ժողով մըն ալ գումարեց, Ս. Պետրոս եկեղեցիին մէջ (732), և նզովեց զանոնք որոնք կը յամառէին իրենց պատկերամարտութեան մէջ և կը ձեռնարկէին պատկերները խորտակել ։

Կայսրը չափազանց զայրացած, Հռովմայ վրայ նաւատորմիղ մը ղրկեց, որ ճամբան փոթորիկներէն ընկղմեցաւ ։ Կայսրը իր վրէժը լուծեց Պապին լեկատները աքսորելով Սիկիլիա և Կալաբրիա, յարքունիս գրաւելով այն կալուածները, զորս Հռովմայ եկեղեցին ունէր Սիկիլիոյ և Կալաբրիոյ մէջ, և Իլլիրան բաժնելով Պապութենէն և միացընելով Կ. Պոլսոյ պատրիարքութեան, որուն աթոռը յանձնուած էր արդէն Անաստասի, որ Գերմանիկոսի Սիւնկեղոսն էր։

Լէոն Գ. չկրցաւ յաջողութիւն գտնել իր ձեռնարկութեան մէջ, որուն այնքան եռանդով ու կորովով տուած էր ինքզինքը ։ Իր որդին, Կոստանդին Կոպրոնիմոս, որ ճշմարիտ ժառանգորդն էր եղած իր հօր պատկերամարտ զգացումներուն, գիտնալով որ իր հօր անյաջողութիւնը եկեղեցականութիւնը իր կողմը չկրնալ շահելուն մէջ կը կայանար, նման ձեռնարկի մը դիմելէ առաջ՝ որոշեց եկեղեցւոյ շահերը իր տրամադրութեան տակ առնել ։

Կոստանդին հրամաններ ղրկեց իր կուսակալներուն, որպէսզի խստիւ ի գործ դնեն իր հօր հրովարտակներուն բովանդակութիւնը, և միւս կողմէ մտքերը պատրաստեն այն

ծ ժողովին համար որ պիտի գումարուէր ի Կ. Պոլիս 754ին։
դ ժողովին ներկայ էին երեք հարիւր երեսուն և ութ
եւելեան եպիսկոպոսներ, որոնց կը նախագահէին Թէոդոս
իսկոպոս Եփեսոսի և Պամփիլիոյ Պերգայի։ Ժողովական-
ները իրենց վճռին մէջ կ'ըսէին. « Ինչպէս Յիսուս-Քրիստոս
կեց իր աշակերտները ուսուցանելու համար զմարդիկ և
ելու համար սատանային ձեռքով աշխարհ մտած կռապաշ-
ութիւնը, այսօր ալ կը դրդէ կայսերը զմեզ ուսուցանելու
ջնջելու համար կռապաշտութիւնը, զոր սատանան վերստին
ցուց եկեղեցին, Քրիստոսի և Սրբոց պատկերներով։ Նկա-
ները դատապարտելի արուեստը ոչնչացուց փրկագործու-
ւնը, և եղծեց վեց տիեզերական ժողովներու վճիռները»։
ա այս պատճառաւ ծանր պատիժներ սպառնացին և նզո-
ցին պատկերագրութիւնն ու պատկերապաշտութիւնը.
սու հանդերձ հաստատեցին սրբոց մատուցուելիք յարգանքը,
յայտարարեցին թէ ոչ ոք պիտի յանդգնէր կողոպտել եկե-
ցիները, պատկերները ջնջելու պատրուակաւ։ Այս ժողովին
ջ նզովուեցան նաեւ պատկերապաշտ կուսակցութեան պա-
ագլուխները, Գերմանոս որ վախճանած էր արդէն, Յով-
աննէս Դամասկացի և Գէորգ կրօնաւոր Սկիւթիոյ։

Կոստանդին աւելի առաջ գնաց իր պատկերամարտ ձըգ-
ումներուն մէջ, և երդում առաւ քաղաքի բոլոր բնակիչ-
րէն, թէ երբեք կրօնական պատիւ չպիտի ընծայեն ոևէ
ատկերի։ Իսկ եկեղեցիներու պատերը զարդարելու հա-
մր պէտք է նկարէին, անասնոց, անտառներու, որսի և այլ
ան տեսարաններ։ Սակայն Յոյները՝ հակառակ իրենց խոստ-
ման չկրցան ետ կենալ նախկին սովորութենէ մը. ո՛չ խոս-
ում, ո՛չ տանջանք, ո՛չ աքսոր և ո՛չ ալ սպառնալիք չկրցան
ո կեցնել Յոյները, քրիստոնեայ փեդիչապաշտութեան մոլե-
անդութենէն։ Շատեր գաւազանի հարուածներու տակ մե-
ան, Պետրոս Սիւնակեաց խողխողուեցաւ, վանականներ ծանր
ատուհասներ կրեցին, և իրենց վանքերը հրոյ ճարակ եղան։
յապէս, Կոստանդինի յիշատակը զզուանք ազդեց կրօնաւոր-

*ներուն, որոնց տհաճոյ զգացմանց արդիւնք եղաւ Կոստանդինի Կոփրոնիմոս մականունը ։*

*Պատկերամարտներու առարկութիւնները գրեթէ հետեւեալ կէտերուն մէջ կ'ամփոփուին ։ 1. Պատկերներու պաշտամունքը կը վերանորոգէր Եւտիքէսի և Նեստորի հերետիկոսութիւնը, որովհետև ի Յիսուս-Քրիստոս անձնաւորական* (hypostatique) *միութիւնը անըմբռնելի է, և կարելի չէ նկարել պատկերներով. զալով մարդկային բնութիւնը անջատ կերպով ներկայացնելուն, բոլորովին Նեստորականութիւն է ։ 2. Հաղորդութեան խորհուրդը կը հաստատէ, թէ Քրիստոս չուզեց ներկայացուիլ ուրիշ կերպարանքով. հաղորդութիւնը միակ ճշմարիտ և օրինաւոր պատկերն է Փրկչին, որովհետև մարմինն է անոր աստուածութեան հետ միացած ։ 3. Սրբոց պատկերներն ալ անընդունելի են, որովհետև հայհոյութիւն է ներկայացնել զանոնք անկենդան արուեստի մը միջոցաւ, որ անկարող է կեանք տալու, և որ հնարուած է հեթանոսներու ձեռքով ։ 4. Հին և Նոր Կտակարանները և Ս. հարք դատապարտած են պատկերները, եւայլն ։*

*Ահա այն սահմանը, որ կարդացուեցաւ 754ի Կ. Պոլսոյ ժողովին մէջ, Կեսարիոյ Գրիգոր Եպիսկոպոսին կողմէ, որ մեծ գործիչներէն մէկն էր այդ ժողովին ։ Այդ պատկերամարտական առարկութեանց պատասխանած է Եպիփան Սարկաւագ ։ Ահա այդ վիճաբանութեան էական մասը.—*

Գրիգոր. — *Սահման եօթներորդ Սուրբ և մեծ տիեզերական ժողովոյն . . . ։*

Եպիփան. — *Ի՞նչպէս կարելի է տիեզերական կոչել ժողով մը, որ ո՛չ միայն չէ ընդունուած և հաստատուած միւս եկեղեցիներու եպիսկոպոսներէն, այլ ընդհակառակն նզովուած է . . . ։ Ի՞նչպէ՞ս կրնայ եօթներորդ ըլլալ, քանի որ չհամաձայնիր նախորդ վեց ժողովներուն հետ ։*

Գրիգոր. — *Սատանան անդադարաբար կռապաշտութիւն ներմուծեց քրիստոնէութեան մէջ, իր իմաստակութեանց*

միջոցաւ, համոզելով թէ պէտք է պատուել և պաշտել զարարածն հաւասար Աստուծոյ ։

Եպիփան. — Անոնք, որ այնպէս կը խօսին, մոռցած են այն անբռնաբարելի խոստումը զոր ըրած է Քրիստոս իր եկեղեցիին, թէ «դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն»։ Նա Երգ երգոցի մէջ կ'ըսէ անոր. ամենեւին գեղեցիկ ես, մերձաւոր իմ, եւ արատ ինչ ոչ գոյ ի քեզ: Սատանան ինչպէ՞ս կրնայ հրապուրել զԱյն, որ այս խոստումները ընդունեց ։ Եւ կրնա՞յ անոր որս ըլլալ իր Փեսին՝ Յիսուսի Քրիստոսի առաջնորդութեան ներքեւ ։

Գրիգոր. — Մենք դատեցինք թէ նկարիչներու ամբարիշտ արուեստը կ'աւերէ մարդեղութեան խորհուրդը, և կը կործանէ վեց տիեզերական ժողովներն, որոնք Աստուծմէ ներշնչուած են, թէ կը վերակենդանացնէ զՆեստոր որ երկու անձի կը բաժնէր Բանը, միակ Որդին Աստուծոյ մարդ կ'ընէ մեզ համար. նաև Արիոսը և Դիոսկորոս Եւտիքէսը, և Սեւերոսը, որոնք Քրիստոսի երկու բնութեան չփոթ խառնումը կը վարդապետէին ։ Ինչ է իրենց խոլ յաւակնութիւնը, եթէ ոչ իրենց պատկերներուն մէջ վերարտադրել, զոր ինչ անկարելի է ներկայացնել ։ Կը շինեն պատկեր մը, զոր Քրիստոս կը կոչեն. արդ, Քրիստոս Աստուած է և մարդ, ուրեմն Աստուծոյ և մարդուն պատկերն է այն ։ Այսպէս նոքա ստեղծուած մարմնոյ մը ծրից մէջ կը պարփակեն անհուն Աստուածութիւնը, կամ կը շփոթեն երկու անխառն կերպով միացած բնութիւնները, կրկին հայհոյանք որ հասարակ է իրենց և իրենց պատկերապաշտներուն ։ Հա՞րկ է ի մէջ բերել թէ անոնք կը նկարեն միայն մարմինը, որ տեսանելի եղաւ և շօշափելի ։ Նեստորէն փոխ առնուած ամբարշտութիւն մըն է, հայհոյանք մըն է այս, որովհետեւ, եթէ ըստ ուղղափառ հարց, Բանին մարմին եղած մարմինը անբաժանելի է զայն առնող Աստուածային բնութենէն, ինչպէ՞ս կարելի է անկէ բաժնել զայն և առանձինն արտադրել ։ Հոգւոյն պայմանն

ալ նոյն է մարդեղութեան մէջ․ հոգին միջնորդ եղաւ ընդ մէջ Աստուածութեան և մարմնոյն, և ինչպէս որ մարմինը չի կրնար ըլլալ առանց Բանին մարմինը լինելու, այսպէս հոգին, իր գոյութեան իրողութեամբ, հոգին է Բանին, և երկուքն՝ մինչև իրենց մահուամբ բաժանման ատեն, անբաժանելի մնացին Աստուածութենէն, որովհետև ուր որ է Հոգին Քրիստոսի, հոն է իր Աստուածութիւնը, և Քրիստոսի Աստուածութիւնն հաւասարապէս հոն է, ուր որ իր հոգին կը գտնուի։ Ուրեմն նկարիչներու յիմարութիւնն է ներկայացնել զՔրիստոս պարզ մարդու մը կերպարանով․ ամբարշտութեան նոր գծով մը, օժտել իր Աստուածութենէն բաժնուած մարմինը մի մասնաւոր անձնաւորութեամբ․ այսպէս Երրորդութեան տալով չորրորդ անձի մը լրացուցիչը, որ չունի ինչ աստուածային . . . ։

**Ստեփան**. — *Ինչպէ՞ս Նեստորական կը լինի մէկը, որ Յիսուսի Քրիստոսի պատկերը կը նկարէ։ Նեստոր երկու որդի կ'ենթադրէ. մին բանն Հօր, միւսը՝ ծնած ի Կուսէն. քրիստոնեայք կը խոստովանին զմի որդի, զմի Քրիստոս, զմիևնոյն Տէր, և նկարելով իր պատկերը մարդկային կերպարանաւ և մարմնով, որուն մէջ բանն Աստուած կը բովանդակի, չեն համարձակիր ներկայացնել իր անմահ և անտեսանելի Աստուածութիւնը։ Պատկերը կարտադրէ ո՛չ թէ սկզբնական գոյացութիւնը, այլ միայն իր անունը և իր անդամներու արտաքին համաձայնութիւնը։ Նկարիչը, որ մարդու մը պատկերը կը շինէ, չխորհեցաւ երբեք իր նկարին մէջ դնել անոր հոգին, և այդ պատկերին հանդէպ ոչ մէկը խորհեցաւ թէ այդ նկարը հոգին բաժնեց մարմնէն։ Ոչ միայն պատկերը, այլ և մարմինը, իր էութեան մէջ առնուած, զուրկ է հոգիէ, և մարմինն է միայն, զոր ուզած են նկարել . . . ։*

**Գրիգոր**. — *Քրիստոս ուրիշ օրինաւոր պատկեր չունի, բայց եթէ զայն, զոր մեզ կ'ընծայեն մեր հոգւոյն և մարմնոյն*

*փրկութեանը համար, և զոր մեր Օգոստափառ Քահանայապետը տուաւ մեզի, իր մահուան նախընթաց երեկոյին, իբր յիշատակ իր մարմնաւոր կեանքին. որովհետեւ այս խօսքերով,* առէք եւ կերէք այս է մարմին իմ, զայս արասջիք առ իմոյ յիշատակի, *կը մերժէ միւս բոլոր նիւթական ներկայացումները, և հաղորդութիւնն հաստատուած է իբր միակ պատկեր իր մարդեղութեան։*

Եպիփան. — *Ո՛չ մի առաքեալ և ո՛չ մի Ս. Հայր Քրիստոսի մարմնոյն պատկերը չէ կոչած անարիւն պատարագը, զոր մենք կը մատուցանենք ի յիշատակ իր խորհուրդին։ Տէրը այսպէս չի սորվեցուց անոնց։ Աւետարանի բոլոր հատուածներուն մէջ խնդիր է իրական մարմնոյ և իրական արեան վրայ։ Չըսեր առէք կերէք զպատկեր մարմնոյ իմոյ։ Ոչ միայն Տէրը այլ և առաքեալք և Ս. Հարք չըսին թէ քահանայից ձեռքով մատուցուած անարիւն պատարագը պատկերն է Յիսուսի-Քրիստոսի։ Անոնք ամենքն ալ կըսեն,* իր մարմին իր արիւն։ *Ճշմարիտ է թէ Ս. Հարք ոմանք կարծեցին թէ կրնան մատուցուած իրերն սրբագործուելէ առաջ՝ կոչել* հակապատկեր (antitype), *բայց յետ սրբագործութեան այնպէս կը կոչուին, և հաւատք կ'ընծայուի ըլլալ այնպէս, ինչպէս են իրապէս, այսինքն սեփական մարմին Յիսուսի Քրիստոսի* (1)։

Գրիգոր. — *Պատկերներու պաշտամունքը չկար ոչ Քրիստոսի, ոչ առաքելոց աւանդութեան մէջ, և եկեղեցին մասնաւոր աղօթք չունի զայնս նուիրագործելու համար։*

Եպիփան. — *Շատ բաներ բերանացի աւանդութեամբ հասած են մեզի, այս կարգէն են պատկերները, որոց գործածութիւնը տարածուեցաւ եկեղեցւոյ մէջ առաքելոց*

---

(1) Սխալ է ըսել, թէ հաղորդութիւնը երբեք պատկեր չէ կոչուած։ Եկեղեցւոյ հայրերէն շատերը կոչած են զայն պատկեր, նշան, խորհրդանշան։ Եւ մեր Ս. Սահակ կը կոչէ օրինակ։ Նաեւ Նարեկացւոյ Աղօթից հին լուծմանց հեղինակը պատկերաւ իմանայ զհաց և զգինի պատարագին. Հն. Ծան. 12։

դամբաններուն հին խորհրդանշանական ձեւերով, այլ մանաւանդ անձնական և ճշգրիտ կերպարանքով։ Երեւակայութիւնը պատկերներ ստեղծեց, որոնց մէջ՝ հրաշքը իբրև գործիք ծառայեց արդարացնելու համար եղած ստեղծումները, և այսպէս մարդուս անճանաչելին ճանչնալու և անըմբռնելին հպելու բաղձանքին գոհացում տալու համար կը ստեղծուէին պատկերները Անոր՝ որ առ յաւէտ հեռու պիտի մնար մարդկային նայուածքէն (1)։

Եթէ Վերոնիքայի զրոյցին մէջ հրաշք մը ստեղծելու պէտքն է որ կը ստիպէ զՈւէրմնհըր, ըսելու թէ **անբաւական է արուեստը**, կ'ըսէ Լուի լը Պլուա, մենք առանց իսկ այդ կանխամտածումները ունենալու, պիտի կրկնենք իրեն հետ. — Ամէնէն աւելի համբաւաւոր արուեստագէտը պիտի չինէ և վերաշինէ Քրիստոսի պատկերը, և երբեք չպիտի յաջողի նմանութիւն մը տալ անոր։



### ՊԱՏԿԵՐՆԵՐՆ ԱՌ ՅՈՅՆՍ

### ՊԱՏԿԵՐԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ

Երկու երեք դարերէ ի վեր Յոյները, գեղարուեստից ճաշակով ու սիրով հաւատարիմ նմանողներ իրենց հեթանոս նախ-

---

(1) Աբգարու կարծեցեալ թղթակցութեան և դաստառակի ուսումնասիրութեան մասին տես նաև Rubens Duvalի Anciennes Littératures chrétiennes. II. La littérature syriaque, 1899. page 103-117.

նեաց, բարեպաշտութեան բուռն զգացումով եկեղեցիներն ու տուները, պալատն ու ապարանքները, ոստանն ու որդոստան, ուխտատեղիներն ու ճամբաները լեցուցած էին Քրիստոսի, Սուրբ Կոյսին և սրբոց պատկերներով։ Խուժանը առանց խորութեան աստիճանի, կը դիմէր այդ պատկերներուն առջև ծնրադրել և մոմ վառելով ու խունկ ծխելով անոնց կ'աղօթէր։ Հազարաւոր պատմութիւններ կը շրջագայէին այդ պատկերներու շուրջ։ Կ'ըսուի թէ կար Ս. Կոյսի պատկեր մը, որուն ձեռքը բուժիչ սպեղանի կը սփռէր աղքատ հիւանդներու վէրքերուն, և Եւագրիոս կ'աւանդէ, թէ նոյն պատկերներէ մէկը գլուխը դարձուցած էր այն վայրկենին, երբ ուրացող բանտարկեալ մը եկած էր աղօթելու իր առջեւ։ Այսպիսի պատկերներ եկեղեցիներու և վանքերու շահախնդրութեան առարկայ եղած էին, և կրօնաւորները այդ պատկերներու օրինակները գաղափարելով կը վաճառէին պարզամիտ և հաւատաւոր ուխտագնացներուն։

Ծայրայեղութիւնը իր վերջակէտին հասած էր, և հեթանոսական կռապաշտութիւնը տեղի տուած էր քրիստոնէական փետիշականութեան։

Ժողովրդեան ծաղու արժանի աւելորդապաշտութիւններուն մէջ, անհնար էր որ ողջամիտ դատողութիւնը կարենար պահ մը հաւաքել իր բոլոր ոյժերը, ոգի ի բռին մաքառելու համար սովորութեան մը դէմ, որ Քրիստոնէութիւնը անկերպարան ընելու կը յանդգնէր։ Ոմանք արդար զզուանք մը զգային այդ մոլեռանդական ցոյցերուն հանդէպ, իսկ ուրիշներ աւելի յառաջ երթալով ուզեցին ի սպառ խափանել պատկերներու պաշտամունքը։

Այս վերջիններուն նպաստաւոր եղան և ոչ-քրիստոնեայ ազգերու գանգատները, որոնք քրիստոնէութիւնը հաւասար նկատեցին կռապաշտութեան, միմիայն պատկերներու գործին համար։ Սեմական երկու ազգեր գայթակղեցան պատկերներու պաշտամունքէն, և շատեր իրենց ի քրիստոնէութիւն դարձին իբր գլխաւոր արգելք մատնանշեցին զայն։

Ուրեմն պէտք էր Հրեաներու և ոչ-քրիստոնեաներու առջեւ բանալ քրիստոնէութեան ճամբան, բառնալով պատկերներու պաշտամունքը։ Այդ գործին առաջին ձեռնարկը ըրաւ Լէոն Կայսր Իսաւրացին։

Լէոն Գ. Կայսր Իսաւրացին (717–741) ձեռնարկեց կրօնաբարոյական յաղթութիւն մը տանիլ, ստիպելով Հրեաները, որ ընդունին քրիստոնէական կրօնքը։ Կայսրը փորձեց նախ համոզելով վերցնել տալ պատկերները, բայց երբ տեսաւ որ դիմադրութիւնը իր սպասածէն ուժգին եղաւ, այն ատեն միայն բուռն միջոցներու դիմեց։

Կը կարծուի, թէ Կոստանդին Նակոլիայի Եպիսկոպոսը, որ եռանդուն պատկերամարտ մըն էր, խորհուրդ տուած ըլլայ Կայսեր, ծայրայեղ միջոցներու դիմել իր ձեռնարկութեան միջոցին։

Կայսրը եկեղեցականներու և աստուածաբաններու խումբ մը ունէր իրեն գաղափարակից։ Նոյն ժամանակներուն էր, որ հրաբղխային ժայթքում մը տեղի ունեցաւ, Թիրա և Թերասինա կղզիներուն մէջտեղ, և ծնունդ տուաւ նոր կղզիի մը, որ միացաւ Հիերա կղզիին հետ։ Այդ երեւոյթը պատկերամարտներու կողմէն, երկնային պատուհաս մը նկատուեցաւ նորածին փեղիչապաշտութեան, ուստի գործի սկսան։ 726 թուականին Կայսրը խնդրեց Գերմանոս Պատրիարքէն որ պատկերներու պաշտաման ջնջումը արտասանէ։ Պատրիարքը մերժեց կատարել Կայսեր պահանջումը, և Լէոն իր կայսերական իշխանութեամբ հրատարակեց Հրովարտակ մը, որով կը հրամայէր նախ եկեղեցիներէն դուրս հանել նուիրական համարուած պատկերները։ Յովհաննէս Դամասկացի, հակառակեցաւ Կայսեր հրովարտակին, և անոր պատճառ եղող չարժառիթներուն, և սկսաւ գրել իր երեք ջատագովական ճառերը ի նպաստ պատկերներուն։ Միւս կողմէ Թէոդոր Սդուդիդ եւս կ'ըսէր, թէ կայսեր ընթացքը վերստին կը տանէր քրիստոնեաները այն իշխանութեան, ուրկէ հազիւ ազատած էր զիրենք Նոր ուխտը, նամանաւանդ ուրիշ բան չի նշանակեր այդ, եթէ ոչ զլանալ

Քրիստոսի այն պատիւները, զորս պէտք է ընծայել անոր, և ուրանա՛լ է անոր մարդեղութեան ճշմարտութիւնը, ի մի բան յոռեգոյնն էր հերետիկոսութիւններուն։

Պատկերամարտական աւերումները սկսան, և կայսերական պալատին դրան վրայ դրուած Քրիստոսի մէկ պատկերը վերցնելով այրելու պաշտօն ունեցող անձը, հազիւ թէ սանդուխին վրայ բարձրացած էր, խուժանը հասաւ և վար առնելով զանի պատառ պատառ ըրաւ։

Երբ մէկ կողմէն տիրող շփոթը տագնապալի երեւոյթ մը կ՚առնէր մայրաքաղաքին և շրջականերուն մէջ, և պատկերներու վէճերը կը յուզուէին, միւս կողմէն տեղ տեղ երկրաշարժներ պատահեցան և քանի մը գաւառներու մէջ մեծ աւերումներ գործեցին։ Կայսրը նոր հրովարտակ մըն ալ հանեց, որով ոչ միայն կ՚արգիլէր պատկերներու մատուցուած պաշտօնը, այլ և պատկերագրութիւնն ու անոր գործածութիւնը։

Գերմանոս Կ. Պոլսոյ Պատրիարքը, բուռն դիմադրութիւններէ վերջ, տեսնելով որ բռնաբարուած է իր պատրիարքական իշխանութիւնը, ստիպուեցաւ հրաժարիլ աթոռէն (730 յունուար) և քաշուիլ իր տունը, ուր մեռաւ տասը տարի վերջ։ Պատկերներու պաշտպան եպիսկոպոսները կը ստիպուէին լքել իրենց պաշտօնները, կռիւը կը ծաւալի ամենուրեք։ «Պատկերամարտները, կը գրէ Հէրկէնրէօթէր, Նոր Վանդալներ՝ աւերեցին այն ատեն արուեստի գեղեցկագոյն հրաշակերտները»։

Սակայն Լէոն կայսրը այս ամէնը կ՚ընէր ընդդէմ պատկերներու, առանց իր կողմը ունենալու եկեղեցւոյ հեղինակութիւնը։ Ուստի երբ Գերմանոս չուզեց ձայնակցիլ իրեն, Կայսրը գրեց առ Գրիգոր Բ. Պապ, խնդրելով որ հաստատէ իր հրովարտակները։ Պապը յանդիմանական պատասխաններ գրեց Կայսեր, ցոյց տալու համար թէ Կայսրը իրաւունք չունի այդչափ հեղինակութիւն գործածել եկեղեցական խնդիրներու մէջ։ «Եկեղեցական վարդապետութիւնները, կը գրէ Պապը, Կայսրերու գործ չեն, այլ եպիսկոպոսներու, որոնք պար-

տաւոր են զանոնք ապահովութեամբ հաստատել : Ինչպէս եպիսկոպոսները կը հրաժարէին քաղաքական գործերէ, կայսրերն ալ պարտաւոր են հրաժարիլ եկեղեցական գործերէ, և գոհանալ իրենց յանձնուած գործերով» : Կայսրը կը պահանջէր որ տիեզերական ժողով մը գումարուի, խաղաղութիւնը հաստատելու համար. «Թող Լեւոն խաղաղութի՛ւն չնորհէ, կը գրէր Գրիգոր, և խաղաղութիւնը հաստատուած պիտի ըլլայ»: Գրիգոր Գ. ևս իր թուղթերով ջանաց ետ դարձնել Լեւոն կայսրը իր պատկերամարտ գաղափարներէն, և այս խորհրդով լեգատներ ալ ղրկեց ու ժողով մըն ալ գումարեց, Ս. Պետրոս եկեղեցիին մէջ (732), և նզովեց զանոնք որոնք կը յամառէին իրենց պատկերամարտութեան մէջ և կը ձեռնարկէին պատկերները խորտակել :

Կայսրը չափազանց զայրացած, Հռովմայ վրայ նաւատորմիղ մը ղրկեց, որ ճամբան փոթորիկներէն ընկղմեցաւ : Կայսրը իր վրէժը լուծեց Պապին լեգատները աքսորելով Սիկիլիա և Կալաբրիա, յարքունիս գրաւելով այն կալուածները, զորս Հռովմայ եկեղեցին ունէր Սիկիլիոյ և Կալաբրիոյ մէջ, և Իլլիրան բաժնելով Պապութենէն և միացնելով Կ. Պոլսոյ պատրիարքութեան, որուն աթոռը յանձնուած էր արդէն Անաստասի, որ Գերմանիկոսի Սինկեղոսն էր:

Լեւոն Գ. չկրցաւ յաջողութիւն գտնել իր ձեռնարկութեան մէջ, որուն այնքան եռանդով ու կորովով տուած էր ինքզինքը : Իր որդին, Կոստանդին Կոպրոնիմոս, որ ճշմարիտ ժառանգորդն էր եղած իր հօր պատկերամարտ զգացումներուն, գիտնալով որ իր հօր անյաջողութիւնը եկեղեցականութիւնը իր կողմը չկրնալ շահելուն մէջ կը կայանար, նման ձեռնարկի մը դիմելէ առաջ՝ որոշեց եկեղեցւոյ շահերը իր տրամադրութեան տակ առնել :

Կոստանդին հրամաններ ղրկեց իր կուսակալներուն, որպէսզի խստիւ ի գործ դնեն իր հօր հրովարտակներուն բովանդակութիւնը, և միւս կողմէ մտքերը պատրաստեն այն

մեծ ժողովին համար որ պիտի գումարուէր ի Կ. Պոլիս 754ին։ Այդ ժողովին ներկայ էին երեք հարիւր երեսուն և ութ արեւելեան եպիսկոպոսներ, որոնց կը նախագահէին Թէոդոս եպիսկոպոս Եփեսոսի և Պամֆիլիայ Պերգայի։ Ժողովականները իրենց վճռին մէջ կ՚ըսէին. «Ինչպէս Յիսուս-Քրիստոս ղրկեց իր աշակերտները ուսուցանելու համար զմարդիկ և ջնջելու համար սատանային ձեռքով աշխարհ մտած կռապաշտութիւնը, այսօր ալ կը ղրկէ կայսրերը զմեզ ուսուցանելու և ջնջելու համար կռապաշտութիւնը, զոր սատանան վերստին մտցուց եկեղեցին, Քրիստոսի և Սրբոց պատկերներով։ Նկարիչներու դատապարտելի արուեստը ոչնչացուց փրկագործութիւնը, և եղծեց վեց տիեզերական ժողովներու վճիռները»։ Ահա այս պատճառաւ ծանր պատիժներ սպառնացին և նզովեցին պատկերագրութիւնն ու պատկերապաշտութիւնը. այսու հանդերձ հաստատեցին սրբոց մատուցուելիք յարգանքը, և յայտարարեցին թէ ոչ ոք պիտի յանդգնէր կողոպտել եկեղեցիները, պատկերները ջնջելու պատրուակաւ։ Այս ժողովին մէջ նզովուեցան նաեւ պատկերապաշտ կուսակցութեան պարագլուխները, Գերմանոս որ վախճանած էր արդէն, Յովհաննէս Դամասկացի և Գէորգ կրօնաւոր Սկիւթիոյ։

Կոստանդին աւելի առաջ գնաց իր պատկերամարտ ձգտումներուն մէջ, և երդում առաւ քաղաքի բոլոր բնակիչներէն, թէ երբեք կրօնական պատիւ չպիտի ընծայեն ո և է պատկերի։ Իսկ եկեղեցիներու պատերը զարդարելու համար պէտք է նկարէին, անասնոց, անտառներու, սրսի և այլ նման տեսարաններ։ Սակայն Յոյները՝ հակառակ իրենց խոստման չկրցան ետ կենալ նախկին սովորութենէ մը. ո՛չ խոստում, ո՛չ տանջանք, ո՛չ աքսոր և ո՛չ ալ սպառնալիք չկրցան ետ կեցնել Յոյները, քրիստոնեայ փետիշապաշտութեան մոլեռանդութենէն։ Շատեր գաւազանի հարուածներու տակ մեռան, Պետրոս Սիւնակեաց խողխողուեցաւ, վանականներ ծանր պատուհասներ կրեցին, և իրենց վանքերը հրոյ ճարակ եղան։ Այսպէս, Կոստանդինի յիշատակը զզուանք ազդեց կրօնաւոր-

ներուն, որոնց տհաճոյ զգացմանց արդիւնք եղաւ Կոստանդինի Կոփրոնիմոս մականունը ։

Պատկերամարտներու առարկութիւնները գրեթէ հետեւեալ կէտերուն մէջ կ'ամփոփուին ։ 1. Պատկերներու պաշտամունքը կը վերանորոգէր Եւտիքէսի և Նեստորի հերետիկոսութիւնը, որովհետև ի Յիսուս-Քրիստոս անձնաւորական (hypostatique) միութիւնը անըմբռնելի է, և կարելի չէ նկարել պատկերներով. զալով մարդկային բնութիւնը անջատ կերպով ներկայացնելուն, բոլորովին Նեստորականութիւն է ։ 2. Հաղորդութեան խորհուրդը կը հաստատէ, թէ Քրիստոս չուզեց ներկայացուիլ ուրիշ կերպարանքով. հաղորդութիւնը միակ ճշմարիտ և օրինաւոր պատկերն է Փրկչին, որովհետև մարմինն է անոր աստուածութեան հետ միացած ։ 3. Սրբոց պատկերներն ալ անընդունելի են, որովհետև հայհոյութիւն է ներկայացնել զանոնք անկենդան արուեստի մը միջոցաւ, որ անկարող է կեանք տալու, և որ հնարուած է հեթանոսներու ձեռքով ։ 4. Հին և Նոր Կտակարանները և Ս. հարք դատապարտած են պատկերները, եւայլն ։

Ահա այն սահմանը, որ կարդացուեցաւ 754ի Կ. Պոլսոյ ժողովին մէջ, Կեսարիոյ Գրիգոր Եպիսկոպոսին կողմէ, որ մեծ գործիչներէն մէկն էր այդ ժողովին ։ Այդ պատկերամարտական առարկութեանց պատասխանած է Եպիփան Սարկաւագ ։ Ահա այդ վիճաբանութեան էական մասը. —

Գրիգոր. — Սահման եօթներորդ Սուրբ և մեծ տիեզերական ժողովոյն . . . ։

Եպիփան. — Ի՞նչպէս կարելի է տիեզերական կոչել ժողով մը, որ ո՛չ միայն չէ ընդունուած և հաստատուած միւս եկեղեցիներու եպիսկոպոսներէն, այլ ընդհակառակն նզովուած է . . . ։ Ինչպէ՞ս կրնայ եօթներորդ ըլլալ, քանի որ չհամաձայնիր նախորդ վեց ժողովներուն հետ ։

Գրիգոր. — Սատանան անդադարաբար կռապաշտութիւն ներմուծեց քրիստոնէութեան մէջ, իր իմաստակութեանց

*միջոցաւ, համոզելով թէ պէտք է պատուել և պաշտել զարարածն հաւասար Աստուծոյ ։*

Եպիփան. — *Անոնք, որ այնպէս կը խօսին, մոռցած են այն անբռնաբարելի խոստումը զոր ըրած է Քրիստոս իր եկեղեցիին, թէ «դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն»։ Նա Երգ երգոցի մէջ կ՚ըսէ անոր.* ամենեւին գեղեցիկ ես, մերձաւոր իմ, եւ արատ ինչ ոչ գոյ ի քեզ: *Սատանան ինչպէ՞ս կրնայ հրապուրել զԱյն, որ այս խոստումները ընդունեց ։ Եւ կրնա՞յ անոր որս ըլլալ իր Գլխին՝ Յիսուսի Քրիստոսի առաջնորդութեան ներքեւ ։*

Գրիգոր. — *Մենք դատեցինք թէ նկարիչներու ամբարիշտ արուեստը կ՚աւրէ մարդեղութեան խորհուրդը, և կը կործանէ վեց տիեզերական ժողովներն, որոնք Աստուծմէ ներշնչուած են, թէ կը վերակենդանացնէ զՆեստոր որ երկու անձի կը բաժնէր Բանը, միակ Որդին Աստուծոյ մարդ կ՚ընէ մեզ համար. նաև Արիոսը և Դիոսկորոս Եւտիքէսը, և Սեւերոսը, որոնք Քրիստոսի երկու բնութեան չփոթ խառնումը կը վարդապետէին ։ Ինչ է իրենց խօլ յաւակնութիւնը, եթէ ոչ իրենց պատկերներուն մէջ վերարտադրել, զոր ինչ անկարելի է ներկայացնել ։ Կը շինեն պատկեր մը, զոր Քրիստոս կը կոչեն. արդ, Քրիստոս Աստուած է և մարդ, ուրեմն Աստուծոյ և մարդուն պատկերն է այն ։ Այսպէս նոքա ստեղծուած մարմնոյ մը ծրից մէջ կը պարփակեն անհուն Աստուածութիւնը, կամ կը շփոթեն երկու անխառն կերպով միացած բնութիւնները, կրկին հայհոյանք որ հասարակ է իրենց և իրենց պատկերապաշտներուն ։ Հա՞րկ է ի մէջ բերել թէ անոնք կը նկարեն միայն մարմինը, որ տեսանելի եղաւ և չօշափելի ։ Նեստորէն փոխ առնուած ամբարշտութիւն մըն է, հայհոյանք մըն է այս, որովհետեւ, եթէ ըստ ուղղափառ հարց, Բանին մարմին եղած մարմինը անբաժանելի է զայն առնող Աստուածային բնութենէն, ինչպէ՞ս կարելի է անկէ բաժնել զայն և առանձինն արտադրել ։ Հոգւոյն պայմանն*

*ալ նոյն է մարդեղութեան մէջ. հոգին միջնորդ եղաւ ընդ մէջ Աստուածութեան և մարմնոյն, և ինչպէս որ մարմինը չի կրնար ըլլալ առանց Բանին մարմինը լինելու, այսպէս հոգին, իր գոյութեան իրողութեամբ, հոգին է Բանին, և երկուքն՝ մինչեւ իրենց մահուամբ բաժանման առեն, անբաժանելի մնացին Աստուածութենէն, որովհետեւ ուր որ է Հոգին Քրիստոսի, հոն է իր Աստուածութիւնը, և Քրիստոսի Աստուածութիւնն հաւասարապէս հոն է, ուր որ իր հոգին կը գտնուի։ Ուրեմն նկարիչներու յիմարութիւնն է ներկայացնել զՔրիստոս պարզ մարդու մը կերպարանով. ամբարշտութեան նոր գծով մը, օժտել իր Աստուածութենէն բաժնուած մարմինը մի մասնաւոր անձնաւորութեամբ. այսպէս Երրորդութեան տալով չորրորդ անձի մը լրացուցիչը, որ չունի ինչ աստուածային . . . :*

Եպիփան. — *Ինչպէ՞ս Նեստորական կը լինի մէկը, որ Յիսուսի Քրիստոսի պատկերը կը նկարէ։ Նեստոր երկու որդի կ՚ենթադրէ. մին բանն Հօր, միւսը՝ ծնած ի Կուսէն. քրիստոնեայք կը խոստովանին զմի որդի, զմի Քրիստոս, զմիեւնոյն Տէր, և նկարելով իր պատկերը մարդկային կերպարանաւ և մարմնով, որուն մէջ բանն Աստուած կը բովանդակի, չեն համարձակիր ներկայացնել իր անմահ և անտեսանելի Աստուածութիւնը։ Պատկերը կարտադրէ ո՛չ թէ սկզբնական գոյացութիւնը, այլ միայն իր անունը և իր անդամներու արտաքին համաձայնութիւնը։ Նկարիչը, որ մարդու մը պատկերը կը չինէ, չխորհեցաւ երբեք իր նկարին մէջ դնել անոր հոգին, և այդ պատկերին հանդէպ ոչ մէկը խորհեցաւ թէ այդ նկարը հոգին բաժնեց մարմնէն։ Ոչ միայն պատկերը, այլ և մարմինը, իր էութեան մէջ առնուած, զուրկ է հոգիէ, և մարմինն է միայն, զոր ուզած են նկարել . . . :*

Գրիգոր. — *Քրիստոս ուրիշ օրինաւոր պատկեր չունի, բայց եթէ զայն, զոր մեզ կ՚ընծայեն մեր հոգւոյն և մարմնոյն*

փրկութեանը համար, և զոր մեր Օգոստափառ Քահանայապետը տուաւ մեզի, իր մահուան նախընթաց երեկոյին, իբր յիշատակ իր մարմնաւոր կեանքին. որովհետեւ այս խօսքերով, առէք եւ կերէք այս է մարմին իմ, զայս արասջիք առ իմոյ յիշատակի, կը մերժէ միւս բոլոր նիւթական ներկայացումները, և հաղորդութիւնն հաստատուած է իբր միակ պատկեր իր մարդեղութեան։

Եպիփան. — Ո՛չ մի առաքեալ և ո՛չ մի Ս. Հայր Քրիստոսի մարմնոյն պատկերը չէ կոչած անարիւն պատարագը, զոր մենք կը մատուցանենք ի յիշատակ իր խորհուրդին։ Տէրը այսպէս չի սորվեցուց անոնց։ Աւետարանի բոլոր հատուածներուն մէջ խնդիր է իրական մարմնոյ և իրական արեան վրայ։ Ջըսեր առէք կերէք զպատկեր մարմնոյ իմոյ։ Ոչ միայն Տէրը այլ և առաքեալք և Ս. Հարք չըսին թէ քահանայից ձեռքով մատուցուած անարիւն պատարագը պատկերն է Յիսուսի-Քրիստոսի։ Անոնք ամենքն ալ կըսեն, իր մարմին իր արիւն։ Ճշմարիտ է թէ Ս. Հարք ոմանք կարծեցին թէ կրնան մատուցուած իրերն սրբագործուելէ առաջ՝ կոչել հակապատկեր (antitype), բայց յետ սրբագործութեան այնպէս կը կոչուին, և հաւատք կ'ընծայուի ըլլալ այնպէս, ինչպէս են իրապէս, այսինքն սեփական մարմին Յիսուսի Քրիստոսի [1]։

Գրիգոր. — Պատկերներու պաշտամունքը չկար ոչ Քրիստոսի, ոչ առաքելոց աւանդութեան մէջ, և եկեղեցին մանաւոր աղօթք չունի զայնս նուիրագործելու համար։

Եպիփան. — Շատ բաներ բերանացի աւանդութեամբ հասած են մեզի, այս կարգէն են պատկերները, որոց գործածութիւնը տարածուեցաւ եկեղեցւոյ մէջ առաքելոց

---

[1] Սխալ է ըսել, թէ հաղորդութիւնը երբեք պատկեր չէ կոչուած Եկեղեցւոյ Հայրերէն. շատերը կոչած են զայն պատկեր, նշանակ, խորհրդանիշ։ Եւ մեր Ս. …անակ կը կոչէ օրինակ։ Նաեւ Նարեկացւոյ Աղօթից հին լուծմանց հեղինակը պատկերաւ իմանայ զհաց և զգինի պատարագին. Հե. Տան. 12։

*քարոզութեամբ (2), ինչ որ քարոզութիւնը կ'ընէ մեր ականջին, պատկերները, զայն կ'ընեն մեր աչքին ։ Աւետման պատկեր մը մեզ կը հաստատէ, ինչ որ կը կարդանք Աւետարանին մէջ, թէ առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ յԱստուծոյ առ կոյսն Մարիամ . . . ։ Քրիստոնէից մէջ շատ մը առարկաներ կան, որոնք սուրբ են իրենց անունով միայն, առանց աղօթքով նուիրագործուած ըլլալու ։ Այսպիսի է կերպարան Խաչին, զոր կը պաշտենք, որով կը կնքենք մեր ճակատը, կամ թէ օդին մէջ մատներով կը գծենք, վանելու համար դեւերը ։ Այսպիսի են պատկերները . մենք զանոնք կը պատուենք իրենց կրած և ներկայացուցած անունին պատճառաւ ։ Մենք կ'ողջունենք և կը համբուրենք նաեւ սրբազան անօթները, թէպետեւ անոնք օրհնութիւն մը ընդունած չըլլան, զանոնք կը համբուրենք սրբագործութեան շնորհ մը ընդունելու յոյսով ։*

Գրիգոր. — *Հոգի է Աստուած, եւ երկրպագուաց նորա հոգւով եւ ճշմարտութեամբ պարտ է երկրպագանել. զԱստուած ոչ ոք ետես, ոչ զձայն նորա լուաք, եւ ոչ զպատկեր նորա տեսաք:*

Եպիփան. — *Զգայարանօք օժտուած ըլլալով, զգալի առարկաներ կը գործածենք, ուսանելու եւ յիշելու մեր բարեպաշտիկ եւ Աստուածային աւանդութիւնները ։ Մենք ոչ պատկերներուն և ո'չ իսկ Խաչի նշանին կ'ուղղենք մեր ներքին պաշտելութիւնը, այսինքն լատրիի պաշտամունքը, զոր միայն Աստուծոյ պէտք է մատուցանել, և մենք յաւակնութիւն չունինք Աստուածութեան անտեսանելի և անըմբռնելի բնութիւնը ներկայացնել ։*

---

(2) Առաքեալները այդպիսի բան չքարոզեցին երբեք, ընդհակառակը շատ հակակիր էին ։ Նախնի եկեղեցիին մէջ պատկերի սովորութիւն չկայ ։ Սալոմոն Ռէյնաք կը գրէ թէ Հռովմայ Կայսերք, կրնային հալածանք հանել նորածին Քրիստոնէութեան դէմ բայց ի այն օրէնքով, ըստ որում կ'արտաքսուէր, ամէն կրօն որ չէր ընդունուած պետութենէն, այլև «կարելի էր ընդդէմ քրիստոնէից յառաջ բերել Սրբապղծութեան օրէնքը. որովհետեւ անոնք պատկերները կը խորտակէին» ։

Գրիգոր. — *Մի՛ առնիցես դու քեզ դրօշեալ, եւ մի զնմանութիւն ամենայնի, որ ինչ յերկինս ի վեր, եւ ինչ յերկիր ի խոնարհ . . . :*

Եպիփան. — *Սրբազան բնագրին բառն այն է, թէ պէտք չէ զանոնք պաշտել Լատրիի պաշտամունքով ։ Ահա այս արգելքին բոլոր պատճառը, որ իրաւացի էր, որովհետեւ Իսրայելացիք կ'երթային ապրիլ կռապաշտներու մէջ, որոնք աստղերն ու անասունները կը պաշտէին, բայց ոչ բացարձակ. որովհետեւ Մովսէս քաւութեան վրայ շինել տուաւ մարդակերպարան Քերովբէներ, որոնք համակ ոգիներ են իրենց բնութեան մէջ ։*

Գրիգոր. — *Փոխեցին զփառս անեղծին Աստուծոյ ի նմանութիւն պատկերի եղծանելոյ մարդոյ . . . հնազանդեցան եւ պաշտեցին զարարածս եւ ոչ զարարիչն (Հռովմ. Ա. 23–25) ։*

Եպիփան. — *Առաքելոյն տեսութիւնը հեթանոսաց համար է, եւ ապացոյցն ալ կայ անոր մէջ, որովհետեւ կը յաւելու թէ կը պաշտէին թռչուն, չորքոտանի եւ սողուն, եւ խնդիր չկայ սուրբ պատկերներու մասին ։»*

*Պատկերամարտ ժողովին վճիռները հրապարակաւ ազդարարուեցան ժողովրդեան 754 Օգոստոս 27ին, երբ Կայսրը Սիւլիոյ Եպիսկոպոս պատկերամարտ Կոստանդինի ձեռքէն բռնած, ժողովրդեան ներկայացուց իբրեւ նոր Պատրիարք, (որովհետեւ Անաստաս արդէն վախճանած էր 753ին) գոչելով. «Երկար տարինե՛ր Կոստանդինի, տիեզերական Պատրիարքին» ։*

*Սոսկալի անգթութիւններ ի գործ դրուեցան պատկերապաշտներուն դէմ, Մոնագրիայի վարդապետ Յովհաննէս, պարկի մը մէջ դրուելով ծով նետուեցաւ, անոր համար որ մերժած էր կոխկռտել Կոյսին մէկ պատկերը (761 յունիս 7) ։ Նորընտիր Պատրիարքն ալ, որ ըստ ամենայնի Կայսեր խորհուրդներուն համաձայն էր վարուած պատկերներու մասին, անհամաձայնութեան մը պատճառաւ 766ին աքսորուեցաւ, եւ հրապարակի վրայ գաւազանի հարուածներու տակ սպաննուեցաւ. իր գլուխը այրուեցաւ հրապարակաւ, իսկ դիակը յանձնուե-*

ցաւ բժիշկներուն դիւաղննական ուսումնասիրութիւններ կատարելու համար։ Նիկետաս Ներքինին, որ քահանայ էր Առաքելոց եկեղեցիին, Պատրիարք ընտրուեցաւ։ Իր պատկերամարտի բուռն նկարագրով ոչնչացուց ու ջնջեց այն բոլոր պատկերները, զորս գտաւ Պատրիարքին բնակարանին մէջ և այլուր, և հզօր օժանդակներէն մէկը եղաւ Կայսեր, որ սակայն, առանց տեսնելու իր վերջնական յաղթութիւնը, 775 Սեպտ. 14ին մեռաւ ծովու վրայ, Սիլիմբրիի մօտ։

Կոփրոնիմոսի մահուանէն վերջ, Աբեղաները, որոնց ազդեցութիւնը մեծ էր Կ. Պոլսոյ ժողովրդեան վրայ, կուսակիցներու մեծ թիւ մը շահեցան, մանաւանդ իրենց կրած տանջանքներուն շնորհիւ, և ի նպաստ պատկերներու պիտի կրնային հակազդեցութիւն մը ի գործ դնել, եթէ երբեք քաջալերութիւն գտնէին։ Իրենց յոյսերը սկսան տակաւ իրականութիւն գտնել։ Լէոն Դ. առանց բոլորովին բառնալու պատկերապաշտներու դէմ եղած հալածանքը, հրաման հանեց որ աքսորեալ կրօնաւորները իրենց տեղերը վերադառնան։ Սակայն այս մասին կրօնաւորները ամենամեծ օգնութիւնը գտան Իրէնէ կայսրուհիէն, որ կինն էր Կոստանդին Կոփրոնիմոսի, և մայրն ու խնամակալն էր Կոստանդին Զ. Պորփիւռոժէնի (ծիրանածին)։ Երբ իր ամուսնին մահով ամբողջ կայսրութեան տէր եղաւ, իր ամբողջ զօրութիւնը նուիրեց պատկերներու դատին պաշտպանութեանը։ Հակակշռելու համար անսիրելութիւնը բանակին, որ իր կազմութիւնը կը պարտէր Կոստանդին Ե. Կոփրոնիմոսի, և որուն յիշատակին ուժգնապէս յարած էր, թագուհին կրօնաւորներու հետ գաղտնի դաշնադրեց և վանոնք եպիսկոպոսական գլխաւոր աթոռներու վրայ բարձրացուց։ Ճարպիկութեամբ հրաժարեցուց Պօղոս Պատրիարքը, որ ստորագրած էր նախկին պատկերամարտ ժողովներուն վճիռները, և անոր տեղ Պատրիարք ընտրեց Տարասիոսը, որ պատրիարքական ձեռնադրութիւնը ընդունեց 784ի Ծնունդին։

Թագուհին օժանդակութեամբ Տարասիոս Պատրիարքին, հրաւէր կարդաց ամենուրեք, Հռովմայ, Աղեքսանդրիոյ, Ան-

*տիոքայ և Երուսաղէմի եպիսկոպոսներուն, տիեզերական ժողով մը գումարելու Կ. Պոլիս, պատկերներու դատին պաշտպանութեանը համար ։ 784ին այդ ժողովին Ա. նիստը տեղի ունեցաւ Կ. Պոլիս, Ս. Առաքելոց եկեղեցիին մէջ ։ Սակայն անակնկալ դիպուած մը ստիպեց ժողովական եպիսկոպոսները ցրուիլ, առանց որոշում մը կարենալ տալու ։ Ասով, սակայն, ոչ Իրենէ և ոչ Պատրիարքը հրաժարեցան իրենց խորհուրդներէն ։ Մտածեցին տիեզերական ժողովին երկրորդ փորձը ընել, և աւելի ապահով յաջողութեան համար Նիկիան որոշուեցաւ իբր ժողովատեղի, ուր գումարուեցաւ տիեզերական եօթներորդ (?) ժողովը ։*

*Նիկիոյ Բ. ժողովին մէջ կային երեք հարիւրի չափ ժողովականներ, պատրիարքներու ներկայացուցիչներ, եւայլն, և որուն մեծ գործիչն էր Տարասիոս ։ Ժողովին նիստերը ամբողջ ամիս մը տեւեցին (787 Սեպտ. 24 — Հոկտ. 23) ։*

*Այդ ժողովը ութը նիստեր ունեցաւ, որոնց առաջին երեքը բացման ճառերով անցած են գրեթէ, չորրորդ նիստին մէջ, որ տեղի ունեցաւ հոկտ. 1ին, ժողովականները վկայութիւններ բերելով Ս. Գրքէն և Ս. Հայրերէն, հաստատեցին թէ կրօնական պատկերներու պաշտամունքը օրինաւոր է և փրկարար ։ Հինգերորդին մէջ (հոկտ. 4) Տարասիոս յայտարարեց թէ պատկերամարտները տարբերութիւն չունին Հրեաներէն ու հեթանոսներէն և գլխաւորաբար Մանիքեցիներէն։ Վեցերորդ նստին մէջ (հոկտ. 5 կամ 6) կարդալով դատապարտեցին 754ի ժողովին գործերը . այդ նիստին մէջ ուզեցին ցոյց տալ թէ հակառակորդները բուն երկրպագութիւնը,* (τὴν ἀληθινὴς λατρείαν) *շփոթած են պատուոյ երկրպագութեան հետ,* (ἀσπασμὸν καὶ τιμητικὴν προσπυνήσιν) *և չեն զգացած այն տարբերութիւնը որ կայ քրիստոնեաներու և հեթանոսներու միջև, պատկերներու պաշտաման մասին ։ Եօթներորդ նիստին մէջ (հոկտ. 13) իրենց վճիռը արտասանեցին այսպէս . «Մենք կ'որոշենք թէ Սուրբ պատկերները, թէ՛ ներկով, թէ՛ մանր քարերու վրայ բանուած, և թէ՛ ուրիշ յարմար նիւթով մը պիտի շինուին, նման*

Խաչի նշանին, ինչպէս եկեղեցիներու մէջ, նուիրական անօթներու և զգեստներու վրայ, պատերու և տախտակներու վրայ, նոյնպէս տուներու և ճամբաներու վրայ, այսինքն, պատկերները Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, Ս. Կոյսին, հրեշտակաց և ամենայն սրբոց. որովհետեւ ցորչափ յաճախ տեսնեն զանոնք պատկերներու մէջ, այնչափ զանոնք դիտողները կը դրդուին սիրելու և համակրելու նախատիպերուն վրայ։ Պէտք է այս պատկերներուն տալ պատուոյ ողջոյնն ու մեծարանքը, ոչ թէ ճշմարիտ լատրին կամ գերագոյն պաշտամունքը, զոր մեր հաւատքը կը պահանջէ և որ միայն Աստուածութեան կը վերաբերի։ Այս պատկերներուն պիտի մօտենան խունկով ու մոմերով, ինչպէս կ՚ընեն Խաչին, Աւետարանին և ուրիշ սրբազան իրերու համար, ամենայն ըստ բարեպաշտ սովորութեան նախնեաց, որովհետեւ պատկերին մատուցուած պատիւը կ՚անցնի նախատիպին, և պատկերները պատուողը կը պատուէ նաև ենթական, զոր պատկերը կը ներկայացնէ»։

Այս նիստին մէջ նզովուեցան նախկին պատկերամարտ Պատրիարքները՝ Անաստաս, Կոստանդին, և Նիկետաս. Ժողովը նզովք արձակեց Թէոդոս Եփեսացիին և Նակոլիի Կոստանդին եպիսկոպոսին դէմ։ Ընդհակառակը ծափահարեց Գերմանոս Պատրիարքի, Յովհաննէս Դամասկացիի և Գէորգ Կիպրացիին յիշատակները։

Ութերորդ և վերջին նիստը (23 հոկտ.) տեղի ունեցաւ Կ. Պոլիս, ի ներկայութեան Իրենէ կայսրուհւոյն և Կոստանդին Ծիրանածինի։ Ժողովական արարողութիւնները կատարուելէ վերջ, կայսրը և խնամակալ կայսրուհին ստորագրեցին ժողովին վճիռները։

Այս Նիկիական Բ. ժողովին մէջ, ամէնէն աւելի քան այլուր, կարելի է դատել նախնի յունական կղերին ամօթալի ստրկութիւնը։ Շատ մը եպիսկոպոսներ որոնք նախորդ իշխանութիւններու օրով պատկերապաշտութեան դէմ գործած և 754ի ժողովին համամիտ գտնուած էին, եկան ինքզինքնին արդարացնել, ներողութիւն խնդրել, եւ առնել իրենց նախ-

կին քուէները, և անարգել Կոստանդին Կոփրոնիմոսի տուած երդումին։ Անոնք որ եօ աւրն իրենց նախկին յայտարարու-թիւնները, նորէն հաստատուեցան իրենց աթոռներուն վրայ, և հանդիսաւոր կերպով յայտարարեցին ժողովին հետ՝ թէ պատ-կերները պէտք է հաստատուին տաճարներու, տուներու և փո-ղոցներու մէջ, պէտք է մոմ վառել անոնց առջև, խունկ ծխել և ծնրադրել։

Հազիւ թէ պատկերներու խնդիրը կը թուէր վերջացած ըլլալ, և ահա նորանոր չփոթներ պատճառ եղան կայսեր և խնամակալ կայսրուհիին անհամաձայնութեան։ Կոստանդին Զ. թողուց իր Մարի Ամնիա կինը, որ հայուհի մըն էր, և ստիպեց զայն վանք մը քաշուիլ, իսկ ինքը վերստին ամուսնացաւ Թէոդոտի հետ, որ իր մօրը պալատական աղջիկներէն էր։ Կրօնաւորները այս գործէն ախորժ չզգացին։ Եւ Իրենէ որ երկրորդական ստիճան մը հազիւ կրցած էր պահել կայսերա-կան գործերու մէջ, իր ձեռքին տակ հաւաքեց կրօնաւորնե-րու խումբը։ Պատրիարքը ուզեց բանադրել կայսրը, իր ապօ-րէն ամուսնութեանը համար, այլ բաւականացաւ միայն ժա-մանակ մը յետաձգել իր դիտաւորութիւնը։ Կոստանդինի մայրը, աւելի յանդուգն ցոյց տուաւ ինքզինքը (797)։ Սակայն ինքն ալ երկար ժամանակ չկրցաւ ապրիլ և մեռաւ յաջորդ տարին։

Իր յաջորդը Նիկեփոր (802–811) հաւասարապէս նպաստա-ւոր եղաւ պատկերներու դատին։ Ասոր յաջորդին՝ Միքայէլ Ռանգաբէի ժամանակ, զանազան ազգեր և Պուլկարներ Բիւ-զանդեան կայսրութիւնը կ'ասպատակէին, առանց լուրջ դի-մադրութիւն մը գտնելու։ Պատկերամարտները կը յիշէին յաղթութիւնները իրենց Կոստանդին Կոփրոնիմոս կայսեր, զոր իբր սուրբ կը պատուէին. նոյն իսկ ուխտի գային կայսեր գե-րեզմանին։

Միքայէլի յաջորդեց Լէոն Ե. (813–820) որ միջին դարուն Բիւզանդիոյ գահուն նշանաւոր կայսրերէն մէկը եղաւ, և Պուլկարներուն վրայ տարած մէկ նշանաւոր յաղթութիւնովը պետութեան հանգիստը ապահովելէ վերջ, ցոյց տուաւ Լէոն

Իսաւրացիին միտումները, պատկերամարտ չարժառիթներով հրաբորբ ։ Լեւոն պատկերամարտ մըն էր, հակակիր կրօնաւորներու, «ծնած, ինչպէս դիտել կու տայ Ս. Շարքէլ, քրիստոնէութեան այնպիսի գաւառի մը մէջ, ուր պատկերներու պաշտամունքը խոր արմատներ չէր արձակած» ։ Կ'ըսուի, թէ Լեւոն Ե. իր շուրջը ունէր կրօնաւորներ և աշխարհականներ, որոնք չարունակ իրեն կը յիշեցնէին պատկերամարտ կայսրերու յաղթութիւնները և պատկերապաշտներու պարտութիւնը ։ Արդէն նոյն իսկ այն եպիսկոպոսները, որոնք Նիկիոյ Բ. ժողովին մէջ իրենց նախկին պատկերամարտ յայտարարութիւնները ետ առած, նորէն տէր եղած էին իրենց աթոռներուն, պատրաստ էին անգամ մըն ալ դառնալ դէպի պատկերամարտութիւն, եթէ զօրաւոր ձեռք մը ուզէր զանոնք ի մի հաւաքել ։ Անոնք հաւաքուեցան և սկսան ձեռնարկութիւններու փաստեր քաղել Ս. Գրքէն, հակառակ պատկերապաշտութեան դատին ։

Լեւոն որոշեց խոհականութեամբ գործել, և ի սկզբան չափաւոր պահանջումներ միայն ըրաւ, իբրև միջնորդ ներկայանալով պատկերապաշտ և պատկերամարտ կուսակցութիւններուն ։ Այդ պաշտօնը կատարած ժամանակ խիստ կերպով վարուեցաւ պատկերապաշտներուն, մանաւանդ աբեղաներուն դէմ, և անոնց վրայ ծանր պատուհասներ դրաւ ։

Լեւոն ուզեց շահիլ նաև Նիկեփոր Պատրիարքը, առարկելով այն չարիքները զորս պատկերներու պաշտամունքը կը հասցնէր պետութեան, և իր դատին ի պաշտպանութիւն կոչելով ժողովրդական կարծիքը, և Ս. Գրոց լռութիւնը ի մասին պատկերներու ։ Պատրիարքը առանց կարենալ բան մը ընելու, եկեղեցւոյ աւանդութիւնը միայն մէջ կը բերէր ։ Այս յամառութեան հանդէպ Լեւոն բարկացաւ և զինուորները յափշտակեցին խորտակեցին Յիսուսի պատկերը, զոր Իրենէ վերստին դրած էր պալատին պղնձէ դրանը վրայ ։ Պատրիարքը կորանցուց իր պաշտօնը, և 815 ապրիլ 1 Զատկի օրը պատրիարքութեան աթոռը բարձրացաւ Թէոդոտ Կասսիտէրաս ։ Նորընտիր Պատրիարքը իսկոյն գումարեց ժողով մը, որ մերժեց պատկերա-

*պաշտօնէրու եօթներրորդ տիեզերական ժողովը, և անոր տեղ իբր եօթներրորդ յայտարարեց Կոփրոմինոսի ժողովը* (754)։ *Այն օրէն սկսեալ պատկերամարտները նորէն գրաւեցին պատրիարքական աթոռը, չորունակ քանըեօթը տարիներ, և հալածանքը վերստին սկսաւ պատկերապաշտներուն դէմ։*

*Այս անգամ հալածանքը սկսաւ ո՛չ միայն կրօնաւորներու, կիներու, կոյսերու և ամէն դասակարգի անձերու դէմ, այլ և հրամայուեցաւ եկեղեցիներէն վերցնել այն երգերը, որոնք գրուած էին այլեւայլ պատկերներու առթիւ, և դպրոցներու աշակերտներուն ներշնչել պատկերապաշտութեան սոսկումը։ Կայսրը կարծեց թէ այսպէսով պիտի յաջողէր ո՛չ միայն վերցընել պատկերները, այլ և իսպառ ոչնչացնել անոնց յիշատակը։ Իրաց այս վիճակին մէջ մեռաւ Լէոն Ե. կայսր,* 820 *տարւոյ Ծննդեան տօնին։*

*Իր յաջորդը, Միքայէլ Բ. Բէգ* (820-829), *իր նախորդներուն գաղափարով տոգորուած ըլլալով հանդերձ, աւելի ներողամիտ հանդիսացաւ քան իր նախորդը։ Առանց ջնջելու Լէոն Ե. ի օրէնքները, ուզելով հանդարտեցնել՝ իր չափաւորութեամբ՝ խուովութիւնները, աքսորեալներուն շնորհ ըրաւ դառնալ իրենց տեղերը։ Արգիլեց մայրաքաղաքին մէջ պատկեր կանգնել, առանձինն բնակարաններու մէջ պատկերներու գործածութիւնը արտօնեց, և ուզեց իր նախորդին պէս հաշտարար դեր մը կատարել երկու կուսակցութիւններուն միջև, սակայն երբ պատկերներու պաշտպանները յայտարարեցին թէ չեն ուզեր իսկ խօսիլ պատկերամարտներուն հետ, այն ատեն կայսրը ստիպուեցաւ վրէժ լուծել անոնցմէ, առարկելով նաև թէ իր նկատմամբ սուտ գրոյցներ ալ յօրինած էին։ Այս խստութիւններուն մէջ ուղղափառ կարծուած Յոյները կորսնցուցին իրենց երկու մեծ գլուխները, Թէոդոր Աբբան, և Նիկեփոր Պատրիարքը։*

*Միքայէլ Բ.ի յաջորդեց իր որդին Թէոփիլոս* (829–842)։ *Թէոփիլոս իր վարչական բարձր տաղանդին միացուցած էր փառասիրութիւնն ու անգթութիւնը և շատ անաչառ էր իր դատաստաններուն մէջ։*

Այդ ամէնուն հետ միացած էր նաև կրօնական ջերմեռանդութիւն մը, այնպէս որ եկեղեցական երգեր կը յօրինէր, զորս կ'երգէին հրապարակի վրայ ։ Իր ողջախոհ դատողութեան ապացոյցը տուաւ, իբր անողոք թշնամի ներկայանալով պատկերներուն, այնպէս որ ի գործ դրաւ իր նախորդներուն ամէն օրէնքները իրենց ծայրայեղ խստութեանը մէջ ։ Իր նախկին դաստիարակը, Յովհաննէս Լեկանոմանտ, որ բռնագոյնն էր պատկերամարտներուն, պատրիարքութեան աթոռին բարձրացուց Անտօն Պատրիարքի մահէն վերջ ։

Յովհաննէսի խորհրդակցութեամբ Կայսրը նոր պատերազմ մը բացաւ պատկերներու, կրօնաւորներու և քահանաներու դէմ միանգամայն ։ Կրօնաւորները աքսորուեցան վանքերէն ու քաղաքներէն ։ Կայսրը ինքնին վիճաբանեցաւ Թէոփանոս և Թէոդոր երկու երգիչ եղբայրներուն հետ ։ Ոչ ոք կը համարձակէր հակառակիլ իր հրամաններուն . իր կինը անգամ սպառնալիքէ զերծ չէր և խորամանկութիւնը միայն զինքը կրնար ճողոպրել իր ամուսնոյն վրէժխնդրութենէն ։

Թէոփիլոսի մահուընէն վերջ, Թէոդորա կայսրուհին, որ մնած էր պատկերապաշտութեան մէջ, խնամակալ կարգուեցաւ, իր Միքայէլ Գ. որդւոյն, որ երեք տարեկան, կայսրութեան գահը բարձրացաւ ։

Թէոդորա խօսք տուաւ իր ամուսնին, եկեղեցւոյ և պետութեան մէջ հաստատուած վարչութենէն բան մը չփոխել իր մահուանէն վերջ ։ Կայսրուհին ուզեց նախ հաւատարիմ մնալ իր խոստման, մանաւանդ վախնալով պատկերամարտ կուսակցութենէն, որ գրաւած էր Պատրիարքութիւնը և եպիսկոպոսական գլխաւոր աթոռները ։ Հակառակ կուսակցութեան կողմէն իր վրայ եղած ստիպումներուն հպատակած ըլլալու համար բաւական համարեց աքսորուած կրօնաւորները դարձնել և բանտերու դռները բանալ ։ Սակայն երբ իր որդւոյն խնամակալութեան օգնականներէն Մանուէլ հիւանդացաւ, կրօնաւորները հաւատացին թէ պիտի բժշկեն զայն, եթէ խոստանար մերժուած պաշտամունքը վերստին հաստատել ։ Մանուէլ

բժշկուեցաւ և կայսրուհին իր խոստումին սկսաւ ։ Կրօնաւորները համոզեցին նաև զինքը, թէ պէտք էր պատկերներու պաշտամունքը վերահաստատել, եթէ կ'ուզէր որ իր մեռած ամուսինը թողութիւն գտնէր Աստուծոյ առջև ։ Կայսրուհիին կանացի տկար բնութիւնը հակեցաւ կրօնաւորներու պահանջման առջև, իր բարեպաշտուհիի եռանդը արթնցաւ, իր մէջ խղճահարական զգացումներ ծնունդ առին, մոռցաւ իր ամուսնոյն տուած խոստումը ու երդումը, և 842 փետր. 19ին կիրակի օրը, եկեղեցական և արքունական անձերու խուռն բազմութեան մը առջև նորէն Մայր-Եկեղեցին մտցուց պատկերները և յայտարարեց թէ տարուէ տարի պէտք է յիշատակուի այդ օրը իբր «ՏՕՆ ՕՐԹՈՏՈՔՍՈՒԹԵԱՆ» ։

Այդ օրէն պատկերներու դարը յաղթանակեց կայսրուհիի մը տկար խառնուածքին ապաւինելով ։

Պատկերամարտները Միքայէլ Գ.ի օրով ալ փորձեցին գլուխ վերցնել, բայց Կ. Պոլսոյ ժողովը, զոր գումարեց Փոտ պատրիարք, վերջնական նզովքը արձակեց անոնց դէմ ։ Ու այդ օրէն սկսեալ Յոյն Եկեղեցւոյ համար պատկերապաշտութիւնը վերջնապէս ընդունուած, հաստատուած, և ալ փակուած խնդիր մը եղաւ ։



## ՊԱՏԿԵՐՆԵՐՆ ԱՌ ԼԱՏԻՆՍ

Արեւելքի մէջ պատկերներու մասին եղած վիճաբանութիւնները արձագանգ գտան նաև արեւմուտքի մէջ, ուր խնդիրը ոչ նուազ հետաքրքրական վիճակ մը ստացաւ լատին և գերման ազգերու միջև։ Իտալացիք, սիրահար գեղարուեստի, իրենց պաշտաման կիրառութիւններուն մէջ մոլեռանդ պատ-

կերպասէրներ դուրս եկան կանուխէն։ Ժողովրդային նկարագրի սոյն միտումը կրնար Պապերու օգտին ծառայել. ուստի, անմիջապէս քաջալերական յորդորներ կարդացին Իտալացիներուն։ Կը պատմուի թէ 753ին Լոմպարտացիք պաշարեցին Հռովմը. Ստեփաննոս Բ. Պապ քաղաքին մէջ կազմեց թափորներ, որոնց մէջ ինքը բռնած էր Քս.ի պատկերներէն մէկը, որուն հրաշալի ծագում մը կ՚ընծայէին ։

Որչափ ատեն որ տեւեցին Արեւելքի պատկերամարտութեան վէճերը, Իտալիոյ Քրիստոնեաները, իրենց գլուխ ունենալով Պապերը, հաստատապէս կուսակից գտնուեցան պատկերապաշտ խումբին, ինչպէս կը տեսնուի այն ամէն շարժումներէն, որոնք յարուցուեցան յունական տիրապետութեան դէմ, Լէօն Իսաւրացիին պատկերամարտ ձեռնարկներուն ատեն ։ Հռովմայ աթոռը ամբողջովին ընդունեց պատկերներու մասին Նիկիոյ Բ. ժողովին արձակած վճիռները։

Իսկ գերման ժողովուրդները որոնք արդէն տրամադիր էին նիւթական խտացումներէ վեր ըմբռնել իրենց հեթանոսական աստուածներն անգամ, այնքան կարեւորութիւն չտուին պատկերապաշտութեան։ Քարլովինկեան առաջին իշխանները գրականութիւնը ծաղկեցնելու համար իրենց պալատներուն մէջ ընտիր խումբ մը ունէին, աստուածաբաններու, հմուտ Ս. Գրոց և նախնեաց գրուածներուն։ Ալկուին, Ագոբարտ՝ Լիոնի եպիսկոպոս, Կղոդիոս Տիւրենցի, Եգինհարտ և ուրիշ աստուածաբաններ սկզբունքով հակառակ ըլլալով պատկերներու պաշտամունքին, դժուարութիւն չկրեցին Փրանկ իշխաններն ալ իրենց գաղափարակից ընելու։ Արդէն 767ին Կոստանդին Կոփրոնիմոս փորձած էր Փրանկները իր կողմը շահիլ, իր պատկերամարտ ձգտումին մէջ։ Թեր ու դէմ կարծիք մը յայտնելու վարարանեցաւ Գենթիլլիի (Gentilly) ժողովը, զոր գումարեց Պէպէն Կարճահասակ, այն երկու նամակներուն առթիւ զորս ընդունած էր Կոստանդին Ե. Կայսրէն և Հռովմայ եպիսկոպոսներէն, որոնք հակառակ դատերու համար Ֆրանսայի համամտութիւնը կը խնդրէին պատկերներու մասին։

Ադրիանոս Ա. Պապ, ընդունելով տիեզերական եօթնեորդ (!!) ժողովը, լատիներէն թարգմանել տուաւ անոր գործերը գրեթէ բառ առ բառ։ Այդ լատին թարգմանութիւնը, որ Մեծն Կարոլոսի ղրկուեցաւ, սաստիկ յուզեց Գաղղիացիները։ Մեծն Կարոլոս չուզեց իբր տիեզերական ժողով ճանչնալ Նիկիոյ Բ. ժողովը, և չուզեց ընդունիլ այն եկեղեցական օրէնքները այդ արեւելից ժողովին, որուն մասնակցած չէին իր պետութեան եպիսկոպոսները, և հրամայեց իր գիտնականներուն, մանաւանդ Ալկուինի, քննել անոր գործերը։

Այդ թարգմանութեան մէջ կային այնպիսի բաներ, որոնք բոլորովին օտար էին գերմանական սովորութիւններու։ Որովհետեւ իրենց մէջ կռապաշտական անկումէն իվեր երկար ատեն չէր անցած, և տակաւին ժամանակ պէտք էր արմատախիլ ընելու զայն իրենց մէջէն, կը վախցուէր որ այդ ժողովրդեան խոշոր և տակաւին կէս-հեթանոս նկարագիրը, պատկերներու արտաքին պաշտամունքին մէջ կեդրոնացնէր մօտաւոր անցեալին ցուրտ կռապաշտութիւնը։ Այսպէս ներողամիտ ըլլալով հանդերձ, ի մասին պատկերներու, որոնք տակաւին հազուագիւտ էին, խոյս տուած էին պաշտելութեան առարկայ ընելէ զանոնք։ Եթէ յունական պետութեան մէջ անյիշատակ ժամանակներէ իվեր յարգանքի մեծամեծ ցոյցեր ընել սովորութիւն էր ոչ միայն կայսրերուն, այլ և անոնց արձաններուն ու պատկերներուն, խունկ ծխելով և երկրպագելով, Գերմանները չէին հաւատար թէ աւելի նուազ պատիւներ իսկ պարտաւոր են տալու Փրկչին և սրբոց պատկերներուն։ Իրենց համար ծնրադրութիւնն ու երկրպագութիւնը միայն Աստուծոյ առջև պէտք էր կատարուէին, և մեծապէս կը գայթակղէին տեսնելով որ Յոյները այդ արարողութիւնները կ'ընեն պատկերներու առջև։

Մեծն Կարոլոսի գիտնականներուն քննութեան արդիւնքը եղաւ Liberi Carolini «Կարոլեան գիրք»ը, որ 85 գլուխներէ բաղկացած հերքում մըն էր Նիկիոյ Բ. ժողովին վճիռներուն։ Այդ գործին մէջ՝ որ Ադրիանոս Ա. Պապին ղրկուեցաւ, Անգիլպէրտ աբբային ձեռքով, և որ չորս գրքերէ կը բաղկանար,

*Մեծն Կարոլոսն է որ կը խօսի ։ Կայսրը կը մերժէ Նիկիոյ Բ. ժողովը, անոր համար որ հրամայած էր պատկերները պաշտել* (proskynesis. adoratio), *հակառակ պատկերամարտներուն՝ կը հաստատէր պատկերներու օգտակարութիւնը, իբր զարդ եկեղեցիներու և իբր կրթութեան միջոց ժողովրդեան համար ։ Հակառակ պատկերապաշտներուն՝ կ'արտաքսէր պատկերներու մատուցուած պաշտելութիւնը, իբր բռնաբարում մը Տնօրինականին, և իբր սրբապիղծ փոփոխումը այն պատիւներուն, զորս միայն ճշմարտին Աստուծոյ պէտք էր ընծայել ։ Ահա Կարոլինեան գրքին սկզբանց ամփոփումը. «Պատկերները նուիրական չըլլալով ըստ ինքեան, ո՛չ մէկ պաշտօն պարտինք տալ անոնց,* ՊԱՏԿԵՐ ՈՒՆԵՑԷՔ, ԲԱՅՑ ՄԻ՛ ՊԱՇՏԷՔ ԶԱՆՈՆՔ» ։

*Մեծն Կարոլոսի այդ գործը թէպէտ մինչեւ մեզի հասած է, բայց շատեր կը տարակուսին արդի գրքին վաւերականութեանն ու հարազատութեան վրայ ։ Ահա Կարոլինեան եզրակացութիւնները. —*

1. *Արեւելեան երկու ժողովներն ալ, պատկերամարտը* (754) *և պատկերապաշտը* (787), *ապօրէն են և անտեղի, որովհետեւ երկուքն ալ հակառակ կերպով դուրս ելած են ճըշմարտութեան սահմաններէն ։ Առաջինին դէմ պէտք է պաշտպանել, թէ պատկերները կուռք չեն, երկրորդին դէմ, թէ պէտք չէ զանոնք պաշտել ։*

2. *Պաշտելութիւն և պաշտամունք կը վերաբերին Աստուծոյ, և չեն կրնար երբեք ուղղուիլ արարածին ։*

3. *Պէտք է պարզապէս պատուել Սուրբերը և պարտ ու պատշաճ պատիւը տալ անոնց ։*

4. *Եթէ Ս. Գիրք երբեմն մարդերու մասին խօսած ատեն կը գործածէ պաշտելութիւն բառը, ատով պէտք է իմանալ յարգանք կամ համբոյր, որոնք խոնարհութեան եւ սիրոյ արտայայտութիւն են ։*

5. *Գալով պատկերներուն, այդ պաշտելութեան արժանի չեն անոնք, որովհետեւ անկենդան էակներ են, մարդ-*

կային ձեռագործ ։ Կարելի է զանոնք գործածել իբր զարդ եկեղեցիներու, իբր յիշատակ անցեալին, զգուշանալով ամէն երկրպագութենէ և պաշտամունքէ ։

6. Պատկեր ունեցեր ես կամ ոչ, տարբերութիւն չկայ, և յանիրաւի Նիկիոյ Բ. Ժողովը նզովք արձակած է պատկերները չպատուողին դէմ ։

7. Եւ ոչ մէկ կերպով կարելի է պատկերները բաղդատել Խաչին, Ս. Գրոց, նուիրական անօթներու և Սրբոց մասունքներուն հետ ։ Այս ամէն առարկաները կը պատուուին յԱրեւելս, համաձայն հին սովորութեան. նոյն բանը չէ սակայն պատկերներուն համար ։

8. Անզգամութիւն է մոմ վառել կամ խունկ ծխել պատկերներուն առջեւ ։

9. Եթէ սուրբ կը նկատուին պատկերները, պէտք չէ որ անյարմար տեղեր դրուին, ինչպէս ճամբաներու և հրապարակներու վրայ, ինչպէս կ'ընեն Յոյները ։

Ադրիանոս Պապ, որուն ուղղուած էր այդ գիրքը, երկարօրէն պատասխանեց ։ Մէջ կը բերէր թէ Նիկիոյ Բ. Ժողովէն առաջ Հռովմ գումարուած ժողով մը՝ **որուն ներկայ էին տասներկու գաղղիացի եպիսկոպոսներ**, պատկերներու պաշտօնը յայտարարած էր, թէ՝ Նիկիոյ Բ. Ժողովին պատկերապաշտ վճիռները նոր բան մը չէին, այլ արդէն Հռովմի մէջ գումարուած Ժողովին մէկ նոր հաստատութիւնը ։ Բայց որովհետեւ իշխանները պատասխանած չէին այն հարցումներուն զորս Պապը ուղղած էր իրենց, վերստին չնորհելու համար եկեղեցւոյ իր վաղեմի առանձնաշնորհումները, կը սպառնար հերետիկոս հրատարակել զանոնք, եթէ տակաւին յամառէին իրենց մերժումին մէջ ։ Այս ամէնը տեղի կ'ունենային Պապին վերջին տարին (†795) ։ Եւ երբ Կայսրը տակաւին ընդունած չէր Պապին հերքումը, 794ին գումարուած Ֆրանքֆորթի ժողովը, որուն ներկայ էին Պապին երկու լեկատները, Թէոփիլակտոս եւ Ստեփաննոս, չուզեց ընդունիլ Նիկիոյ Բ. Ժողովին կանոնները, եւ մերժեց իբր տիեզերական ճանչնալ զայն ։

Այն ատեն Մեծն Կարոլոս այդ ժողովին գործերը Հռոմ ղրկեց, պահանջելով Պապէն որ դատապարտէ Իրենէ կայսրուհին եւ Կոստանդին Զ. Ծիրանածինը ։

Միքայէլ Բ. կայսր Յունաց, 824ին երեսփոխանութիւն մը ղրկեց Գաղղիոյ Լուդովիկոս Բարեմիտ թագաւորին, և Եւգինէոս Պապին, պատկերներու խնդրին համար։ Լուդովիկոս կարծելով թէ պիտի կրնայ հին Հռոմը հաշտեցնել Նորին հետ, Եւգինէոս Պապին հաղորդեց թէ կ'ուզէ իր աստուածաբաններուն հրամայել, որպէսզի Ս. Հարց գրուածոց մէջէն հաւաքեն պատկերներու մասին անոնց ունեցած կարծիքը։ Պապն ալ հաւանելով, 825ին ֆրանսացի Աստուածաբանները հաւաքուեցան Բարիզ և բազմաթիւ գրուածներէ քաղուած յիշատակարան մը կազմեցին պատկերներու մասին։ Այդ Ժողովին մէջ հաստատեցին Ֆրանքֆորթի ժողովին վճիռները, և նզովեցին Ադրիանոս պապը, որ արդէն մեռած էր, զի ան գաղտնի կերպով արտօնած էր պաշտելութիւն մատուցանել պատկերներուն։ Որովհետև Բարիզի ժողովին անդամները չէին կրցած լուրջ բան մը գտնել պատկերամարտներուն դէմ, մինչ առատութեամբ հաւաքած էին պատկերամարտներու մասին, ատոնք հաստատեցին թէ պատկերները պիտի գործածուին միայն եկեղեցիները զարդարելու և հաւատացեալներու մտքին մէջ արթնցընելու համար քրիստոնէութեան կրօնքին անցեալ յաղթանակները ։

Հաւանաբար այս ժամանակներուն էր, որ պատկերները Արեւմուտքի մէջ պատահեցան երկու մեծ ախոյեաններու, որոնք էին Ագոբարտ եպիսկոպոս Լիոնի, և Կղոդիոս եպիսկոպոս Տիւրէնի ։ Կղոդիոս, բնիկ Սպանիացի, աշակերտ Ֆէլիքս Ուրգէլի, որ իբր նեստորական ամբաստանուեցաւ, իր երկրին մէջ ուրիշներու դրացնութենէն հակառակ ներշնչումներ առած էր պատկերներու պաշտաման մասին։ 814ին Լուդովիկոս Բարեմիտի ձեռամբ Տիւրէնի արքեպիսկոպոսական աթոռը բարձրանալով, արդէն գայթակղած Սպանիոյ եկեղեցիներուն մէջ կախուած պատկերներէն և արգադիր նուէրներէն (ex-voto), իր

Մայր Եկեղեցիէն վերցնել տուաւ կրօնական իմացումներուն բոլոր նիւթական ներկայացումները, պատկեր, խաչ, մասունք։ Կղոդիոս իբր անկրօն ամբաստանուելով, ստիպուեցաւ Թէոդըմիր աբբայի դէմ պաշտպանել իր պատկերամարտ համոզումները, իր այն թղթով որուն մէջ կը գրէր. «Եթէ կ'ուզէք որ պաշտուի խաչաձեւ փայտը, անոր համար որ Յս. բեւեռեցաւ խաչի մը վրայ, պէտք է նաեւ ուրիշ բաներ պաշտել, մսուրները, որովհետեւ Յս. Մսուրի մը մէջ ծնաւ, նոյն իսկ էշերը, որովհետեւ Քս. իշու մը վրայ հեծաւ»։ Կղոդիոս կ'արգիլէր պատկերներու առջեւ մոմ վառել կամ ծնրադրել անոնց։

Իսկ Պապերը, որոնց օգտակար էր Գաղղիոյ Թագաւորներուն և Եկեղեցիին հետ յարաբերութիւններին պահպանել; չհամարձակեցան ուղղակի և ակն յայտնի կերպով դէմ դնել Գաղղիացւոց պատկերամարտ զգացումներուն, և չուզեցին հերքել վերոյիշեալ երկու ժողովներուն (794 և 825)ի վճիռները, որով Գաղղիացիք պատկերապաշտութիւնը մերժած էին իսպառ, և միայն թիւրիմացութիւն մը ուզեցին տեսնել Նիկիոյ Բ. և Ֆրանքֆորթի ժողովներու Հարց կարծիքին մէջ, և այսպէսով իբր թէ հաշտեցուցին մասամբ, պատկերներու մասին եղած ակնյայտնի ընդդիմութիւնները։

Բայց վերջապէս այն միջավայրը, զոր գրաւեցին լատին ժողովուրդները պատկերներու խնդրին մէջ, շատ իմաստուն էր, երկար ժամանակ գոհացում տալու համար աւելորդապաշտ դարու մը զգացումներուն։ Պատկերները, որոնք դրուած էին եկեղեցիներու և մատուռներու մէջ, չուշացան պաշտաման առարկայ ըլլալ։ Կղոդիոսի և Ագոբարտի դիմադրութիւնները օրըստօրէ կորսնցուցին իրենց վարկը։ Կղոդիոս խստութեամբ մերժուեցաւ Դոմինիկեան Դունգալ կրօնաւորէն, և այդ մերժման հետեւանքը եղաւ այն հալածանքը, զոր կրեց Կղոդիոս իր ժողովրդեան կողմէն։

Այսպէսով պատկերապաշտութիւնը յաղթանակեց Արեւմուտքի մէջ, ուր Լատին եկեղեցին իր մոլեռանդական ձգտումները առաջ մղեց, հետզհետէ գերազանցելու համար բիւզան-

դական պատկերապաշտութիւնը, մինչև հոն, ուր Նիւթակրօնութիւնը քրիստոնէական անունով հովանաւորուած, բռնեց հոգիի պաշտաման տեղը, գրին ու պատկերին կապելով իր ժողովրդական միտքն ու սնեռամտածումը։

Պատկերներն ու արձանները ալ այնուհետև աւելի արժէք ունեցան, քան Աւետարանի ոգեկանութիւնը։

Արեւմուտք, սակայն, միայն պատկերներով չգոհացաւ հրահանգելու համար ժողովուրդը. կրօնաւորները շահադիտութենէ մղուած սկսան ներկայացումներ տալ եկեղեցիներու մէջ, միառմի ի հանդէս բերելով Քս.ի չարչարանքները, և սրբոց կեանքէն քաղուած սրտառուչ տեսարաններ։ Դարեր վերջ միայն, երբ տեսնուեցաւ որ դերասանները ու ունկնդիրները ցոյց չեն տար իրենց անձին վրայ պարտ ու պատշաճ յարգանքը, այդ թատերախաղերու ներկայացումներուն առեն, վտանգին առաջքը առնելու համար թատերախաղը արտաքսեցին եկեղեցիէն։

Վերածնութեան դարուն, պատկերներու պաշտամունքը եղաւ մէկը այն կէտերէն, որոնց վրայ Բողոքականութիւնը՝ իր ամէն ճիւղերուն մէջ՝ կատարեալ հակառակութիւն մը ունեցաւ Հռովմէական եկեղեցիին հետ։ Պապական և Բողոքական Եկեղեցիներու մէջ ժողովրդական տարբերութիւններէ մէկը եղաւ այն, և վէճերու յուզման մէջ Բողոքականութեան ամէնէն աւելի հանդարտ մտքերն անգամ կատաղի պատկերամարտներ եղան։ Տրիտենդեան Ժողովը, որ սկսաւ Պօղոս Գ. Պապի ժամանակ (1545) և վերջացաւ Պիոս Դ.ի օրով (1563) որոշեց թէ Քս.ի, իր մօր, և սրբոց պատկերները պէտք է կանգնել եկեղեցիներու մէջ, յարգելու և պատուելու համար զանոնք (debitarem honorem et venerationem) և ոչ թէ անոնց ընծայելու աստուածային զօրութիւն մը, և ոչ թէ անոնցմէ նպաստ մը սպասելու, ինչպէս կ'ընէին հեթանոսները։ Ահա այս էր Կաթոլիկ աստուածաբանութեան այս մասին ունեցած ժողովական տեսութիւնը, բայց գործնական կեանքը ցոյց կուտար թէ եկեղեցականներուն և երկրպագուներուն մեծ մասը ան-

*կարող էր կամ չէր ուզեր, պաշտելութեան ու յարգանքին մէջ զանազանութիւն մը դնել. ու այն հաւատքը թէ պատկերները բուժիչ ու մխիթարող ոյժ մը ունէին իրենց մէջ, հասարակաց կարծիքին տեղը բռնեց և լրացուց Տրիտենդեան ժողովին քօղարկած տեսութիւնները։*

*Այսօր անկարելի է նկարագրել արեւմտեան կաթոլիկ աշխարհի պատկերներու պաշտելութեան հանդամանքը։ Սոնք պատկերներու կ'ընծայեն այնպիսի երեւոյթներ որոնց հաւատալու տենչը անգամ ծիծաղելի պիտի դառնայ խորհող մտքերու համար։ Եթէ կարելի է ըսել, Քրիստոնէութիւնը դադրած է հոն, և խտացած՝ արձաններուն և պատկերներուն մէջ։ Նորակրօնութեան ժամանակ, արդէն կրօնական զեղծումները զարմանալի արագութեամբ սկսած էին ծաւալիլ պապական աթոռէն մինչև յետին եկեղեցականը։ Սեքստոս Դ. Պապ (1471—1484) ջանաց այլևայլ միջոցներով լեցնել պարպուած գանձարանը։ Իննովկենտիոս Ը. (1484—1492) նոյն ընթացքը բռնեց։ Եկեղեցականները առիթը գտան իրենց շահու աղբիւր ընել ռամիկ ժողովրդեան պարզամիտ հաւատքը։ Այսպէս, Ուիթթէմբէրգի եկեղեցիին մէջ հաւատացեալներու պաշտելութեան առարկայ եղաւ Նոյի տապանին կարծեցեալ մէկ կտորը, Երից Մանկանց փուռէն ելած ճարպի կտոր մը, Յիսուսի ծնած մսուրին փայտի մէկ կտորը, և այլն, առանց խորհելու թէ Յիսուսի մսուրը քարափոր էր և ոչ փայտաշէն։ Շաֆֆուզի մէջ ցոյց կուտային Ս. Յովսեփի չունչը, զոր Նիկոդիմոս իր ձեռնոցին մէջ ամփոփած է եղեր։ Սրբոց մասունքներու և պատկերներու պաշտօնեաներ կը շրջէին քաղաքները, գիւղերը, հրապարակներն ու շրջականները և մասունք ու պատկեր կը վաճառէին, որպէսզի հաւատացեալները աւելորդ ծախքեր չընեն անոնց ուխտագնացութեան համար։*

*Երբ իրողութիւնները ակն յանդիման վկայութիւններ կուտան մեզի, ժողովրդական զառածող մտքի այլանդակութիւններուն, հիմա միայն կ'ըմբռնենք, թէ որքա՛ն իրաւացի եղած են այն երկիւղները, որոնք Եկեղեցւոյ սկզբնաւորութեան մտա-*

տանջուին պատճառեցին անկեղծ ու հաւատացեալ հոգիներու։ Ժողովուրդը՝ նոյն իսկ իր առերեւոյթ ու համեմատական զարգացման մէջ, մարդկային միտում մը ունի հաճոյք զգալու նիւթէն, քան թէ հոգիէն. զէթ այս եղած է ընդհանուր պատմութեան զարաւոր վկայութիւնը։ Ասիական կրօնները, որոնց մէջ առաջին տեղը կը բռնէ Քրիստոնէութիւնը, նպատակ ունեցած է հակահարուածը ըլլալ ժողովրդական ձգտումին, զայն առաջնորդելու համար հոգեկան հայեցողութեան, որ պիտի կարէր անցնիլ նիւթին սահմանները։ Եկեղեցին կրցա՞ւ գործնականապէս իր վրայ արտայայտել աւետարանական հոգեկանութիւնը, Քրիստոնէական Պանթէոնին պատկերներն ու արձանները հակառութիւնները չեղա՞ն Քրիստոնէութեան բաղձանքին։ Թող այս հարցումներուն ուրիշները պատասխանեն։



## Ը.

## ՊԱՏԿԵՐՆԵՐԸ ՀԱՅ. ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ

### Ա. ՇՐՋԱՆ (Դար Ա — ԺԱ)

Միւլլէր իր Համառօտ Հնախօսութեան մէջ կը հաստատէ, թէ պատկերներու պաշտաման մասին նախկին քրիստոնեաներուն ունեցած կարծիքի տարբերութիւնը արդիւնք էր մասամբ ազգերու տոհմային նկարագրին ու խառնուածքին։ Հռովմ միշտ միտում ցոյց տուաւ գեղարուեստներու։ Տերտուղիանոս Ափրիկեցի, Օգոստինոս եւ Կղեմէս Աղեքսանդրացի հակակիր եղան անոնց, ափրիկեան բնաւորութեան ու նկարագրին համաձայն։

Մեր գործին պատմական նախորդ իրողութիւնները ցոյց տալին թէ իրապէս պատկերներու պաշտօնը Ե. դարէն սկսեալ մուտ գտաւ եկեղեցիները այն ժողովուրդներուն որոնք կանխաւ յառաջդիմած էին գեղարուեստներու մէջ, եւ ուր նկարչութիւնը, քանդակագործութիւնը եւ ոսկերչութիւնը իրենց գագաթնակէտին հասած էին, հասուն զարգացումով (որովհետեւ մինչեւ այն ատեն տակաւին հաստատապէս այն հաւատքը կար թէ պատկերները զարդ են եկեղեցւոյ)։ Յունաստան Փրիգիաներու եւ Զաքսոններու արժանաւոր յաջորդները ունեցաւ դարերու ընթացքին մէջ. լատինական աշխարհը իր Ռափայէլներուն վարպետները, որոնք մարդկային գաղափարները մարմնացուցին իրենց գրչին ու վրձինին տակ։ Եւ եթէ ներելի է այսպէս ըսել, Արեւելք եւ Արեւմուտք անդրիներու եւ պատկերներու մէջ պաշտեցին վարպետներուն ոգին ու զօրութիւնը, եւ իրենց սրտերուն համար կարեւոր պէտք մը եղած էր աչքի առջեւ ունենալ գեղարուեստի արտադրոյթ քանդակ ու պատկեր, եւ անոնցմով զարդարել իրենց սիրելիներու գերեզմանները, եկեղեցիներն ու տուները։

Յունա—Հռովմէական արուեստաւորութեան զարգացումին հանդէպ ոչ ոք պիտի կրնայ՝ սակայն՝ հաստատել թէ Հայերը ունեցած ըլլան հանճարներ որոնք ունենային ճարտար նկարչի ու քանդակագործի համբաւն ու արուեստը։ Վաղուց անտի արդէն իսկ գեղարուեստը օտար մնաց մերիններուն եւ յոյն ու իտալական հասարակութիւններուն հրապուրող գեղագիտական ճաշակը չկրցաւ իր սահմանային վիճակէն դուրս ելլել, և զարգացած գործարանաւորութեան մը ծնունդ տալ Հայոց մէջ։ Լեռնային եւ դաշտային կեանքի վարժ, չարունակ իր նիւթական պէտքերուն աշխատող ժողովուրդ, միտքով գրաւուած աւելի դրական հրահանգութեան, քան գեղագիտական ճաշակով, կարելի չէր որ ժամանակ գտնէր իր իմացական պէտքերու գոհացումին ուշադրութիւն դարձնելու, եւ մղում տալու գեղեցկին նուրբ ճաշակին, որ քաղաքակիրթ ժողովուրդներու յատկանշական կողմերէն մէկը կը կազմէ։ Տոհմային հեթանոսու-

*թեան ժամանակ իսկ, մեր մեհեաններուն մէջ գտնուած քանդակներն ու արձանները ուրիշներու գործերն էին, մուրացածոյ եւ օտարամուտ, իրենց պաշտամունքներովը ու իրենց քրմական դասով (Խոր. Բ. Գլ. ԺԲ.)։ Իրանական, ասորական-սեմական, յունական եւ հնդկական աստուածներու հեղեղ մը հայ Պանթէոնին զրուագը չինած էր, բոլորովին օտարոտի դիմագծութիւններով, որոնք այսօր իրենց այդ յայտանդիմանութեամբ մեծապէս կ'օգնեն քննադատ մաքերու, որոշելու համար բուն Հայոց դիցական կազմութիւնը (Տես, Հ. Գելցերի, Հետազօտութիւն Հայ Դիցաբանութեան)։ Հեթանոս Հայութիւնը՝ գէթ իր կեդրոնական մեծամասնութեան մէջ՝ անվարժ արձաններու քարայցումին, աւելի սիրեց մեհեանին լռութիւնը, հոն կարդալու համար աստուածներուն եւ ոգիներուն մրմունջը, աւելի սիրեց գետերու կլկլը, եւ սօսիներու անտառները մտաւ, անոր սօսափներէն սարսուռներ տալու իր հոգւոյն, խորհրդաւոր ոգիներու աներեւակ ազդողութեամբը (1)։*

*Մանրամասն չենք գիտեր թէ քրիստոնէութիւնը իր առաջին օրերուն ինչ ընթացք բռնեց՝ մեր մէջ՝ պատկերներու հանդէպ, այլ սակայն, գործը ինքնին ենթադրել կուտայ՝ հաւատալ, թէ իր կրօնական հոգեկանութիւնը աններող թշնամին պիտի ըլլար այն նիւթական մարմնացումներուն, որոնց տակ կը պատուուէին կամ կը պաշտուէին աստուածութիւնները։ Եկեղեցական Պատմութիւնը կ'աւանդէ թէ Գրիգոր Լուսաւորիչ ջարդեց, փշրեց մեհենական բոլոր անդրիները ու արձանները եւ անոնց*

(1) Վարդան իր «Լուսաւորչի Ներբողին» մէջ կը գրէ թէ Աստուած հրամայած ըլլայ մեր նախահօր, հակառակիլ կռապաշտութեան և թէ անիկա ոչ պաշտեաց ընդ եօթանասուն և մի նահապետս երկրի՝ զպատկերն Բելայ, այլ խրախուսեալ յԱստուած սատակեաց զնոյն ինքն զկենդանին զառաջնորդն պատկերապաշտութեան։ Սոփերք, Ե. էջ 44-45)։ Պատմիչին այս տողերը մեզի կրնան ծառայել երկու պարագայի մէջ. նախ, թէ իբր ազգային աւանդութիւն կրնան հաստատութիւն մը ըլլալ մեր գրածին, ըստ որում կ'ըսէինք, թէ նախկին Հայերը չէին յարած նիւթական արձաններու, և նկարներ չէին պաշտեր, երկրորդ թէ, մատենագիրը գրելով՝ սատակեաց ... զառաջնորդն պատկերապաշտութեան, իրապէս կը բերէ այն ատեցող զգացումը, զոր ունէր ի մասին պատկերներու պաշտաման։

տեղ քրիստոնէութիւնը խորհրդանշող Խաչը կանգնեց, առանց Քս.ի, Ս. Կոյսին կամ ուրիշ պատկերներու ։

Ուրիշ կէտ մը. — մեր Եկեղեցին իր գոյութեան առաջին օրէն սերտ յարաբերութիւններ ունեցաւ Աղեքսանդրիոյ աթոռին հետ, ինչպէս ցոյց կուտան Մեհրուժան կաթողիկոսի եւ Դիոնիսիոս Աղեքսանդրացիին թղթակցութիւնները, եւ Անանիա Նարեկացիի վկայութիւնը թէ՝ «Իսկ որ ի մերազնեայս ասար էին, քանզի երամակիցք եւ ուսումնակիցք էին Աղեքսանդրացւոյն, եւ կցորդ եգիպտական ճգնաւորացն, ընթացին ընդ հետս առաքելական շաւղաց» ։ Բնական էր որ երկու ժողովուրդներու քրիստոնէական արուեստի անսիրելութեան զգացումները պիտի փոխանցուէին մէկմէկու, կազմելու համար կուռ դաշնակցութիւն մը պատկերապաշտութեան ի վնաս ։

Ասկէ զատ, պատկերագրութեան՛ արուեստի մասին, մեր նախկին մատենագիրները բնաւ բան մը չեն հաղորդեր մեզի ։ Իրենց այս մասին ունեցած լռութիւնը կրնայ թերեւս յայտնի ապացոյց նկատուիլ մեր այն համոզումին, թէ պատկերամոլ ձգտումներ չպղտորեցին մեր տոհմային հաւատքին զգացումը, եւ թէ մեր քրիստոնէական կրօնքը չունեցաւ այն խանձրացումը որ ախտանշանական երեւոյթ մը եղաւ յոյն եւ լատին եկեղեցիներուն համար ։

Պատմական հետազօտութիւնները ցոյց կուտան թէ, վերջապէս պէտք է ըսել, պատկերագրութեան արուեստը հազիւ Ը. կամ Թ. դարուն կրցաւ մուտ գտնել մեր մէջ ։ C. Bayer իր Արուեստից Պատմութեան մէջ կը գրէ թէ Բիւզանդիոյ Սրբազան պատկերագրութիւնը Արեւմուտքի վրայ մեծ ազդեցութիւն ի գործ դնելէն վերջ միայն դէպի Արեւելք դարձաւ, եւ Վրաստանի ու մերձաւոր երկիրներ Է. դարէն մինչեւ ԺԱ. դարուն վերջերը ընդունեցան զայն կամաւոր յեղանակաւորումներով ։ Սխալ մը պիտի ըլլար ենթադրել թէ պատկերագրութենէն առաջ պատկերներ մուտ գտած ըլլան մեր մէջ ։

Ուրեմն սկսինք այլ եւս մեր մէջ երեւցած պատկերներու յիշատակարաններու քննութեան, ցոյց տալու համար անոնց

*բուն արժէքը։ Ասոնցմէ առաջինն է Հոգեաց վանքի Աստուածամօր պատկերին աւանդութիւնը։*

*Աւանդութիւնը կ՚ըսէ թէ Աստուածամօր մնացած տանն իր թաղման ներկայ էին բոլոր առաքեալները, բայց Բարթողիմէոսէն։ Ուստի, երբ այս վերջինը կը հասնի Երուսաղէմ, իր ցաւած սրտին իբր մխիթարութիւն, առաքեալները «Ետուն նմա զպատկեր Տիրամօրն որ էր ի փայտի նկարեալ, բնաւորեալ զօրութեամբն։ Զոր առեալ Բարթողիմէոսի զուարճացաւ, եւ իբրեւ ընդ կենդանւոյ համարեալ հայէր . .։ Եւ եկեալ յաշխարհն Անձեւացեաց ի համբաւ քարի միոջ . . . եւ անուանէին զանուն տեղւոյն այնորիկ Դարբնաց Քար։ Հասեալ Ս. Առաքեալն Աստուծոյ անդ . . . փշրեաց զկուռսն . . . հիմնարկեալ զհիմն տաճարի սրբուհւոյն իւրովք իսկ ձեռօքն, շինեալ եկեղեցի փոքրագոյն, եւ անուանեաց զնա Ս. Աստուածածին եւ եդ ի նմա զպատկեր Տիրուհւոյն. եւ տայ զնա Ս. Կանանց» (Խոր. Թուղթ առ Սհկ. Արծր. էջ 294–295)։*

*Այդ պատմութիւնը, զոր առաջին անգամ կ՚աւանդէ մեզ Մովսէս Խորենացի, Սահակ Արծրունիի խնդրանօք, ինքնին կրնայ նշանակութիւն մը ունենալ մեզի համար։ Ինչ որ կարեւոր է քաղել ասկէ, սա է թէ այդտեղ կար Ս. Աստուածածնայ անունով վանք մը, ու Ս. Կոյսին հրաշագործ պատկերը, որ կոյսերու խնամքին յանձնուած էր։*

*Հնագոյններէն մէկն է Հոգեաց վանքը։ Աստուածածին, որ ամէնէն աւելի մեր սրտին հետ խօսող անձնաւորութիւնն է, իբր մարմնացումը բարի մօր մը, իր անունը տուած է բազմաթիւ սրբավայրերու, վանքերու, եկեղեցիներու եւ մատուռներու, այնպէս որ առաջին սրբավայրերը իր անունով պաշտպանուած են։ Իսկ երբ յետոյ ապա սկսաւ մարտիրոսներու թիւը շատնալ, ասոնցմէ նշանաւորագոյններն ալ արժանացան իրենց անունով աղօթատեղիներ ունենալու պատուոյն։*

*Պահ մը ընդունելով հանդերձ, թէ Դարբնաց Քարի Հոգեաց վանքը շինուած ըլլայ առաքեալին ձեռքով, ինչ որ ողջմտութիւնը կ՚արտաքսէ, պատկերի գոյութիւնը սակայն, չէ*

*կարելի ընծայել Բարթողիմէոսի, որովհետեւ այն ատեն պատկերի գաղափարը անգամ գոյութիւն չունէր, ո՛չ Հրեաներու եւ ոչ քրիստոնեայ ժողովրդեան ու մանաւանդ առաքեալներուն մէջ, որոնք իբր Հրեայ՝ հակառակորդ ըլլալով պատկերներու, ո՛չ պիտի փորագրէին զայն, ոչ պիտի նկարէին, եւ ոչ ալ գործածութեան պիտի դնէին զայն հաւատացեալներուն առջեւ։ Այդպիսի պատկերի մը հաստատութիւնը առաքեալին ընծայել հակառակ պիտի ըլլար քրիստոնէական ոգւոյն եւ հրէական վարդապետութեան։*

*Ըստ ամենայն հաւանականութեան, երբ յունական աշխարհը տակաւ պատկերներու մոլեռանդութեան կը զառածէր, Դ.–Ե. դարէն սկսեալ, Ասորիք ալ նոյն շաւիղը բռնած էին արդէն։ Այդ թուականներուն այս վերջիններու ազդեցութեան տակ մեր սահմանակից վանքերը կամ եկեղեցիները ալ փափաքած էին ունենալ պատկերը այն սուրբին կամ սրբուհիին, որուն անունով կոչուած էր եկեղեցին։ Հոգեաց վանքի եկեղեցին շինուած էր յանուն Աստուածածնի. ուստի հոն դրուելիքը պէտք էր ըլլալ Տիրամօր պատկերը, զոր հաւանաբար շինեցին Ասորի արուեստագէտները։*

*Երբ մէկ կողմէ՝ Քրիստոնէութեան առաջին երեք դարերուն՝ բացարձակ անհնարութիւնը կը տեսնենք այդ պատկերի գոյութեան, միւս կողմէ՝ սակայն՝ եթէ կեղակարծ չհամարինք Խորենացիին Հռիփսիմեանց պատմութեան վաւերականութիւնը, պիտի ըսենք, թէ գոյութիւն ունէր այդ պատկերը գէթ Դ. դարուն, երբ Հռիփսիմեանք կ'այցելեն Հոգեաց վանքը եւ անոր պատկերին. «հասին (Հռիփսիմեանք) տեղի մի, եւ գտին սակաւ ինչ քրիստոնեայս՝ ձեւանշան ունելով զպատկեր Տիրամօրն, որում երկրպագեալն ուրախացեալք» (Խոր.* **Մատենագրութիւն** *էջ* 301)*. բայց եթէ Խորենացիի անունով դեղերփնուած այդ տողերը համանման ստեղծումներ համարելու գաղափարը ընդունուի բանասէրներէն, այն ատեն պէտք է ըսել որ Ե. դարու գործ է այդ պատկերը*(1)*, որուն հրաշալի բժըշ-*

(1) Հ. Ա. Վ. «Դիտողութիւն մը» վերնագրին ներքեւ Հանդէս Ամսօրեայի

կութիւններ ալ կ՚ընծայուէին , ինչպէս կը գրէ Մեսրոպ Երէց ։

Խորենացի յիշատակութիւնը կ՚ընէ մեզի նաեւ երկրորդ պատկերի մըն ալ զոր չենք յիշատակեր , կապ մը չունենալով քրիստոնէական պատկերներուն հետ ։ Մանաւանդ որ , պատկերի սոյն պարագան Խորենացին միայն կը յիշատակէ իր պատմութեամբ ։

Բուն եկեղեցական պատկերագրութեան անցնելէ առաջ , կ՚ուզենք կանխաւ քանի մը ծանօթութիւններ տալ անոր մասին ։

Նախ՝ ընդհանուր իրողութիւններն ու դէպքերը այնպէս ցոյց կուտան թէ Հայերը պատկերներու համար համակիր չեն եղած , եւ Հայ եկեղեցին մերժած է պատկերները ։ Այս մերժման պարագային , սակայն , Հայ–եկեղեցին պէտք չէ շփոթել այն աղանդներուն հետ , որոնք ծանօթ են Պաւղիկեան եւ Թոնդրակեան անուններով, եւ որոնք պատմութեան տեսարանին վրայ կը ներկայանան իբր պատկերամարտ եւ խաչամարտ ։ Որովհետեւ Հայ եկեղեցին առանց այդ աղանդներուն հետ վարդապետական կամ ծիսական գաղափարակցութեան կապ մը ունենալու , կարող եղած է պատկերապաշտութենէ խորշիլ

մէջ կը խօսի Հոգեաց վանքի նկատմամբ (1893 Սեպտ. էջ 272-273) ուր կ՚ըսէ թէ « պէտք ենք անշուշտ ըսել որ պատմական չկրնար ըլլալ անոր (Հոգեաց Վանքին) սկզբնաւորութեան նկատմամբ պատմուածն, այլ ծանօթ ազգային զրոյցներու կարգէն ըլլալու է։ Վասնզի Հոգեաց Վանքն ա՛յն կազմակերպութեամբ զոր Խորենացի իւր առ Սահակ գրած թղթին մէջ կը նկարագրէ, Բարթուղիմէոս առաքելոյն՝ ուրեմն Ա. դարուն կէսերէն հաստատուած չկրնար իհարկէ ըլլալ»։ Յօդուածագիրը զայդ կուզէ հաստատել, ցոյց տալով թէ Խորենացւոյ նկարագրութիւնները չեն յարմարիր վանականութեան պատմութեան հետ։ Իր խօսքը կը շարունակէ ի նկատի առնելով մեր հոգեաց վանքի նկարագրութիւնը ... ստիպուած ենք ըսել որ Խորենացի սխալ աղբիւրներու վրայ հիմնուելով աւանդած պիտի ըլլայ այս վանքին պատմութիւնը, որուն Ե. կամ յետագայ առաջին դարերուն մէջ գոյութիւն ունեցած ըլլալուն ընդդիմութիւն չունինք։ Վերև գրուած տեղեկութեանց համեմատ՝ Հոգեաց վանքը նմանութիւն կ՚ունենայ Դ. դարուն սկիզբն յերեւան ելած լաւրային , ըստ որում խրձթաբնակ կրօնաւորք բովէ բով կը բնակէին առաջնորդի մը տակ։ Մանաւանդ, թէ աւելի նման է իբր 340էն վերջը կազմուած վանքերուն տեսակին, որուն նշանն է, եկեղեցին եւ անոր կից խղիկներ ։»

կանուխ ժամանակներէ ի վեր։ Այս պարագան դիւրին կը բացատրուի այն յարձակումներով, զորս ըրին հայ վարդապետները այդ աղանդաւորներու դէմ, միմիայն այն պատճառաւ որ, անոնք «չարեաց ի չարիս վերացեալ ելին ի պատկերամարտութենէ ի խաչամարտութիւն եւ ի Քրիստոսատեցութիւն, եւ յանդգաւոր յ'անաստուածութիւն եւ ի դիւապաշտութիւն» (**ՕՁՆԵՑԻ, Ընդդէմ Պաւղիկեանց**, էջ 34)։ Խաչը մեր եկեղեցիին համար պատուելի նշան մը եղաւ քրիստոնէութեան ծագումէն ի վեր։

Երկրորդ՝ Հայերուն համար բոլորովին տարբեր բան է պատկերներ ունենալ, եւ տարբեր բան՝ անոնց պաշտօն մատուցանել, եւ ստիպել ուրիշները, որ պատկերները ընդունին կամ պատուեն։ «Մեք նկարագրեմք, կ'ըսէ Անանիա Նարեկացի, զպատկեր Քրիստոսի, եւ զառաքելոց եւ զմարգարէից, եւ հայեցեալ տեսանեմք եւ պատուեմք, այլ ոչ հրամայեմք տխմարաց եւ տգիտաց ժողովրդոց առնել քան զչափն պատիւ եւ պաշտօն մատուցանել, զի մի՛ տգիտութեամբ գայթակղեալ ի կռապաշտութիւն անկանիցին»։ Միւս կողմէ, սակայն, չեն հանդուրժեր, որ աղանդաւորներէն ոմանք մասնաւոր դիտաւորութեամբ մը անարգեն եւ անպատուեն զանոնք. «Բայց զհայհոյիչս եւ զանարգիչս այնպիսի պատկերաց, կը գրէ Յովհաննէս Սրկ. վարդապետ, յիմարս կարդացուք եւ զապշեալս»։

Երրորդ՝ պէտք է դիտել տալ թէ մեր հին մատենագիրները եւ վարդապետները միայն Քրիստոսի պատկերը իբր պատուոյ առարկայ կը ներկայացնեն եւ ոչ թէ առաքեալներու, մարգարէներու եւ ուրիշ սրբոց պատկերները, որոնց յիշատակութեանը հազիւ կը հանդիպինք՝ անոնց մօտ՝ գէթ ԺԲ. դարէն առաջ։ Յովհաննէս Մայրագոմեցի իր մէկ նամակին մէջ, որու մասին պիտի խօսինք քիչ յետոյ, քանի մը պատկերամարտներու մասին կը գրէ. «Եւ եղեալ նոցա յանդիման մեզ՝ հարցաք թէ յոր պատճառս չընդունիք **«զմարմնացելոյ Աստուծոյ զպատկերն** (Մովսէս Կաղանկայտուացի Պատմ. Աղուանից. Գիրք Ա. գլ. ԻԶ. էջ 404). — **Մեք զմիայնոյ միածնի որդւոյն Աստուծոյ պաշտեմք զպատկեր**

եւ զճշյան յաղթութեան» (Յ. ՕՁՆԵՑԻ. Մատենագրութիւն. էջ 35). — «Եւ այս՝ է որ զմարմնացելոյ Բանին Աստուծոյ վարդապետեաց մեզ պաշտել զկենդանագրեալ մարդկային ձեւով զպատկեր» (Նոյն էջ 42). — «Որ պատուէ զխաչն Քրիստոսի եւ զպատկեր նորին, զնոյն ինքն պատուեալ լինի զՔրիստոս.». — «Նոյնպէս եւ թշնամանելովն զնոսա, ի Քրիստոս լինի մեղուցեալ թշնամանելն» (Նոյն, էջ 45) եւ այլն. — Եւ Արմաշու վանուց Ձեռագիր կանոնագիրքը «Այլուստ ժողովածոյ իմաստախոհ արանց» գլխոյն մէջ, ունի հատուած մը «Յաղագս նկարեալ պատկերաց», ուր կը կարդանք «ի պատկերս նկարեալս փրկչական պատկերն միայն է երկրպագելի»։

Չորրորդ, ամէն անգամ որ պատկերներու խնդիր յուզուած է Հայերուն մէջ, Քաղկեդոնականութեան հետ սերտ յարաբերութիւնով մը կապուած է այն, Հայ եւ Յոյն Եկեղեցիներու միութենական խնդրոյն վրայ հիմնուած։ Երբ Հայերը 451 տարին կը պատրաստէին Հայ քրիստոնէութեան թանկագին յաղթանակը, Յոյները չուշացան գալ այդ յաղթութեան պատուը իրենց սեփականելու դիտումով։ Յանկարծ մէջտեղ ձգեցին Քաղկեդոնի ժողովին խնդիրը։ Մեր ուղղափառ եկեղեցին իր դաւանաբանութեան ցանկը փակած էր այլեւս, Հայրապետներու կանոնագրութեամբ, եւ ալ պէտք մը չէր զգար բան մը աւելցնել կամ պակսեցնել անկէ։ Երբ բիւզանդական կայսրերը Զ. դարուն կէսէն սկսեալ ձեռնարկեցին երկու ազգերուն կրօնական միութեան, բնական էր որ տոհմային զգացումը անոնց դէմ ելլէր։ Ահա այդ վայրկեանէն Յունականութիւն եւ Քաղկեդոնականութիւն միեւնոյն բանը եղան մեզի համար։ Հայ Եկեղեցին այդ վէճերուն մէջ ունեցաւ իր գործին պայծառ հասկացողութիւնը եւ շատ կանուխ նշմարեց թէ այդ միաբանակցութիւնը իր գոյութեան ջնջումը յառաջ պիտի բերէր։ Այդ գաղափարն էր, ահա, որ զիրենք աւելի առաջ մղեց, եւ պատկերներու մասին իրենց ունեցած բնական անտարբերութիւնը պատկերամարտութեան նկարագիրը հագաւ։

Մեզի հասած առաջին գրուածը, որ յարաբերութիւն ունի

նչ՝ Քաղկեդոնական եւ թէ պատկերներու խնդրոյն հետ, Յովհաննէս Մայրագոմեցիի նամակն է զոր գրած է «ի խնդրոյ Դաւթայ՝ Մեծ-Կողմանց Եպիսկոպոսի»։ Այդ նամակին յիշատակութիւնը ըրած է Մովսէս Կաղանկայտուացի, այսպիսի վերնագրով. **«Դաւթայ Մեծ Կողմանց եպիսկոպոսի վասն պատկերաց եւ նկարագրութեանց հայցուած ի Յովհաննէս Մայրագոմեցւոյ»**։ Այդ նամակէն կը տեղեկանանք, թէ Աղուանից Ուխտանէս եւ Եղիազար Կաթողիկոսներու ժամանակ «խռովութիւն եւ հերձուածք բազում ի կողմանս կողմանս գիտնաւորաց եւ տգիտաց լինէր, եւ մարտ եւ մրցումն Յունաց եւ Հայոց, եւ աշխարհն Աղուանից անվրդով յայսցանէ մնայր՝ եհաս համբաւ իմն ի նոսա եթէ ոմանք պատկերս ո՛չ ընդունին, ոմանք մկրտութիւն ոչ առնեն, ոչ աղ օրհնեն, ոչ պսակ դնեն հարսանեաց», այս պատճառաւ «քահանայութիւն բարձրեալ է յերկրէս»։ Այդ լուրերը առնելով Դաւիթ՝ Մեծ Կողմանց Եպիսկոպոսը, կը խնդրէ Մայրագոմեցի Յովհաննէս վարդապետէն ստոյգ տեղեկութիւններ։ Մայրագոմեցի այսպէս կը պատասխանէ անոր. «Պատկերամարտութեան աղանդը առաքեալներէն վերջ նախ Յոյներուն մէջ երեւցաւ, ատոր համար մեծ ժողով եղաւ Կեսարիա, ուր հրամայեցին Աստուծոյ տան մէջ պատկերներ նկարել։ Անկէ նկարիչները հպարտանալով ինքզինքնին եկեղեցական բոլոր արհեստաւորներէն գերիվեր նկատելով, ըսին. «Մեր արուեստը լոյս է, որովհետեւ ծերերն ու մանուկները հաւասարապէս կը կարդան, մինչ Սուրբ Գիրք քիչերը միայն կրնան կարդալ» (1)։ Անկէ չփոթութիւն ծագելով, նոր ժողով մը կազմուեցաւ, ուր քննեցին եւ արդարացուցին Ս. Գիրք գրողները, վերծանողները եւ մեկնիչները, եւ զանոնք նկարիչներէն նախադասեցին։ Եւ անկէ մինչեւ Հայոց Մովսէս Կաթողիկոսը այդ հերձուածի աղանդը չէր յայտնուած, երբ Հայոց Հայրապետութիւնը երկուքի բաժնուեցաւ, եւ մեծ կռիւ կար Մովսէսի եւ Փիլի-

(1) Սոյն պատմութիւնը յառաջ կը բերէ նաեւ Յովհաննէս սարկաւագ վրդպտ. իր «Վասն Պատկերաց» գրուածին մէջ։

սափայակետ կոչուած Թէոդորոս Կարնոյ եպիսկոպոսին միջեւ։ Ասոնք եւ ուղղափառները քամահրեցին ամենակրօն Յոյները։ Մովսէս իր կողմի վարդապետներով ժողով մը գումարեց եւ հրամայեց ամենուն չհաղորդակցիլ Քաղկեդոնական ժողովին հնազանդող Յոյներուն հետ, որովհետեւ սուտ են անոնց գործերը, ոչ գիրք, ո՛չ պատկեր, ոչ մասունք ընդունիլ անոնցմէ։ Սոյն արգիլքէն հարկադրուած, թերեւս, անոնք որ դրացի էին Յունաց, եւ ուղղակի անոնց ազդեցութեան տակ կը գտնուէին նոյն իսկ քաղաքականապէս, ինչպէս էր Կարին, ուզեցին իրենց համար նոր կաթողիկոս մը ընտրել, եւ «ածին զՅովհան ոմն Սիւնական, ձեռնադրեցին եւ հնազանդեցան Քաղկեդոնական կրօնից»։ Այդ միջոցին է, որ «Յեսու անուն քահանայ մը եւ Թադդէոս եւ Գրիգոր, որ Մովսէսի կուսակից էին, Դունէն ելան եւ գացին Սոթից գաւառը եւ անապատը բնակելով, զի կրօնաւոր էին, սկսան սորվեցնել թէ եկեղեցւոյ մէջ նկարուած պատկերները ջնջեցէք, եւ աշխարհական քահանաներու հետ մի՛ հաղորդուիք։ Գաւառին մէջ խռովութիւն ծագեցաւ, եւ այդ խռովութեան համբաւը հասաւ մինչեւ Մովսէս Կաթողիկոսին, որ՝ խիստ գրեց եւ զանոնք ետ կոչեց։ Անոնք անսաստեցին Կաթողիկոսին հրամանին, եւ անկէ ելլելով գացին բնակեցան Արձախական գաւառը։ Հայրապետը իր գիտնականները հարցաքննեց պատկերներու խնդրոյն մասին, ուրկէ վերջ նամակ մը գրուեցաւ, որ կ'արգիլէր եկեղեցիներու մէջ գտնուած պատկերները անպատուել։ Այդ գործողութենէն քիչ յետոյ կը վախճանի Մովսէս եւ իրեն տեղ Կաթողիկոս կ'ընտրեն Աբրահամ, «ճշմարիտ եւ ընտիր մարդ մը որ Քաղկեդոնի ուրացող ժողովը նախ կը բանադրէ եւ յետոյ կը ձեռնադրուի»։ Այդ միջոցին վերոյիշեալ երեք պատկերամարտները կ'իջնեն Աղուանից երկիրը, ուր Գարդմանայ տէրը «երեքն ալ բռնելով, կապուած կը ղրկէ ի Հայս»։ «Անոնք մեզի կը ներկայանան, կը գրէ Մայրագոմեցի. կը հարցնենք թէ ինչո՞ւ մարմնացեալ Աստուծոյ պատկերը չէք ընդունիր, կը պատասխանեն թէ պատուիրաններու հակառակ է այն եւ

կռապաշտութեան գործ, ըստ որում անոնք բոլոր արարածները կը պաշտէին. մենք պատկերներու երկրպագութիւն չենք ըներ, որովհետեւ Ս. Գիրք, այդպիսի բան մը չի հրամայեր մեզի։ Բայց մենք իրենց բացատրելով Մովսիսական խորանին նկարակերտութիւնը, եւ Սողոմոնեան տաճարին զանազան քանդակագործութիւնները եւ անոնց նմանողութեամբ մեր եկեղեցիին նկարակերտութիւնը, անոնց սխալները ուղղեցինք»։

Վերոյիշեալ պատմութենէն կը տեսնուի, որ Մովսէս Կաթողիկոսի ժամանակ, Քաղքեդոնական վէճեր կը ստիպեն Հայերը, որպէսզի այլ եւս չընդունին յունական պատկերներ, բայց երբ երեք կրօնաւորներ թիւրիմացութեամբ մը՝ եկեղեցիին մէջ ի զարդ նկարուած պատկերները կը յանդգնէին ջնջել, զանոնք ուղղութեան կը հրաւիրեն։ Անոնք աղանդաւոր չեն, ինչպէս կ՚ուզէր երբեմն հաստատել Կարապետ Սարկաւագ Տէր Մկրտչեան (այժմ վարդապետ) իր «Պաւղիկեանք ի Բիւզանդական Կայսրութեան եւ համացեղ հերետիկոսական երեւմունք ի Հայս» գերմաներէն երկասիրութեան մէջ, ուր կը գրէր. «Այս պատկերամարտներուն վարդապետութիւնը ինչ ինչ համաձայնութիւններ ունի Եւստաթեանց եւ Աւդեանց վարդապետութիւններուն հետ, եւ բնաւ դժուարութիւն չի կայ խորհելու, որ անոնց հետ ազգակցութիւն ունեցած ըլլայ, որովհետեւ երկու աղանդներն ալ միեւնոյն դրացի երկիրներուն մէջ հաստատուած էին։» (Այս գերմաներէն գրքէն մեզի կարեւոր նիւթերը թարգմանած է Ամեն. Մաղաքիա եպիսկոպոս Օրմանեան)։

Կարապետ սարկաւագ այս անձերը աղանդաւոր նկատելով չի բաւականար ու աւելի եւս առաջ կ'երթայ նոր գիւտ մը ընելու համար։

Յովհան Իմաստասէր հայրապէտ Ընդդէմ Պաւղիկեանց ճառին մէջ կը գրէ. «Նախկին մծղնէութեան պայղակենութեան խեշերանք, որք խրատեալք եւ ո՛չ իմաստնացեալք, ի Ներսիսէ կաթողիկոսէ, զկնի նորուն մահուանն խուսեալք չոքան ղօղեցին յաղորդս ուրեք աշխարհի մերոյ։ Եւ ի նոսա հաստուածեալք

եկին յարեցան կշտամբեալքն ի կաթողիկոսացն Աղուանից պատկերամարտք ոմանք, զի սիրէ առ համանմանսն իւր համանել մրիպեալն զի ճշմարտութենէն: Եւ մինչեւ էրնոցա զօրավիգն գտեալ զկարապետս ղերաքրիստոսին, երկուցեալք եւ սարսեալք կային յուղիղ եւ ի գերապանծ կրօնից քրիստոսականաց» (էջ 39):

Սարկաւագը աչքի առջեւ ունենալով Օձնեցիի այս հատուածը, երկար քննութիւններէ վերջ, կ'եզրակացնէ թէ Ներսէս Բ. (524—533) է այն կաթողիկոսը որ կը խրատէ Պայղակենութեան խնչերանքը, եւ թէ «Աղուանից կաթողիկոսներէն կշտամբուող պատկերամարտները նոյն են Մայրագոմեցիին յիշատակած երեք պատկերամարտներուն հետ»:

Կը կարծենք թէ Կարապետ Սարկաւագ սխալած ըլլայ իր այս ենթադրութիւններուն մէջ, ի մասին Ներսէս Բ.ի, որովհետեւ այդ բանին չձեռնարկած, պէտք էր նախ պատմականապէս հաստատել թէ Պաւղիկեանք գոյութիւն ունէին Ներսէս Բ.ի օրով, քանի որ Օձնեցիին ակնարկութիւնը պարզապէս Պաւղիկեան աղանդաւորութեան նախկին կամ առաջին հեղինակներուն համար է, ինչպէս ցոյց կուտայ **պայղակենութիւն** (կամ աւելի ճիշդ **պաւղակենութիւն**) բառը: Սխալ է այնպէս իմանալ թէ Մծղնեայք (μοιχαλῆς) (?) նոյն են Պաւղիկեաններուն հետ: Իրաւ է թէ ժողովական կանոնները կամ մեր եկեղեցւոյ հայրերու գրուածները Մծղնեայ անուան ներքեւ Պաւղիկեանները կ'իմանան, բայց եթէ այդ բառը այդքան անձուկ նշանակութեամբ առնենք, հարկ կ'ըլլայ Պաւղիկեանները նոյն իսկ ժամանակակից համարել Եզնիկի. քանի որ այս վճիռը Մարկէոնի եւ Մանիի հետ կը յիշատակէ նաեւ «**զՄծղնեայս**». — Հաւանական է որ այս վերջին բառը աղանդաւորներու խումբ մը ներկայացնէ, բայց, որովհետեւ բառական նշանակութիւն մըն ալ ունի, իբրեւ **պիղծ կամ շնացող**, կրնայ առհասարակ ամէն աղանդաւորներու համար ալ գործածուիլ:

Աղուանից կաթողիկոսներուն ձեռքով հալածուած պատկերամարտ աղանդաւորները որոնք կուգան Պաւղիկեան-

ներուն կը յարին, չե՛ն այն աղանդաւոր կարծուած կրօնաւորները, որոնք երեք հոգի են միայն, եւ Մովսէս Բ. կաթողիկոսէն կը կանչուին, յետոյ ուրիշ միջոցով բանի կուգան եւ եկեղեցւոյ հրամաններուն կը հպատակին: — Երկու նոյնացուած աղանդաւորներուն վախճանը, ինչպէս կը տեսնուի, նոյն չէ եւ չի կրնար ըլլալ:

Նմանապէս Ներսէս Բ.ը ի զուր է հալածիչ նկատել, թէեւ այն երկու կողմանց աղանդաւորները նոյն համարուին մէկմէկու հետ, վասնզի Ներսէսի յաջորդներէն Մովսէսի ժամանակ՝ եւ թերեւս աւելի յետոյ՝ իբրեւ հալածուած կը նկատուին այն երեք աղանդաւորները, եթէ հալածանք կրնայ նկատուիլ այն միջոցը, որով եկեղեցւոյ ծոցը կը դառնան անոնք:

Ասկէ զատ, ինչպէ՞ս կարելի է որ Ներսէս Բ.ի ժամանակակից երեք անձեր, որոնք արդէն կրօնաւոր եղած էին իրենց խոյս տուած ժամանակ, պիտի կրնային ապրած ըլլալ մինչեւ Մայրագոմեցիի ժամանակ, երբ դրեթէ դարու մը միջոցը անցած էր այդ երկու դէմքերուն միջեւ:

Տարակոյս չկայ որ Պաւղիկեան կամ Պայղակենութեան աղանդաւորները եօթներորդ դարու առաջին քառորդին երեւան եկան. ուստի Ներսէս Գ. Կաթողիկոսն է այն (640 – 661) որուն կ՚ակնարկէ Օձնեցին: Այն միակ դժուարութիւնը որ Կարապետ սարկաւագի հանդէպ կ՚ելլէ, սա է թէ աղանդաւորներուն մինչեւ Արաբներուն հետ միանալը ժամանակ մը անցած է, եւ «Ներսէս Գ. ապրեցաւ ճշդիւ Արաբներու առաջին արշաւանքին ժամանակ»: Սակայն հաւանական է որ այդ հալածանքը եղած ըլլայ Ներսէս Գ.ի ձեռքով, իր կաթողիկոսութեան առաջին կամ երկրորդ տարին, եւ աղանդաւորները ժամանակ ունեցած պիտի ըլլային, այն ատեն, պահուըտիլ մինչեւ 646 թուականը, երբ Արաբացիք վերջնապէս յաղթեցին, եւ այդ վճռական պարագայէն վերջ միայն Պաւղիկեանք կրնային անոնց հետ միանալ:

Սոյն միջանկեալ պարագային քննութենէն վերջ, ըսենք թէ վերոյիշեալ պատմութենէն կը տեսնուի որ պատկերամար-

եկին յարեցան կշտամբեալքն ի կաթողիկոսացն Աղուանից պատկերամարտք ոմանք, զի սիրէ առ համանմանիմն իւր հասանել մրխպեալն զի ճշմարտութենէն։ Եւ մինչև էր նոցա զօրավիզն գանալ զկարապետս գերաքրիստոսին, երկուցեալք և սարսեալք կային յուղիղ եւ ի գերապանծ կրօնից քրիստոսականաց» (էջ 39)։

Սարկաւագը աչքի առջեւ ունենալով Օձնեցիի այս հատուածը, երկար քննութիւններէ վերջ, կ'եզրակացնէ թէ Ներսէս Բ. (524—533) է այն կաթողիկոսը որ կը խրատէ Պայղակենութեան խնչերանքը, եւ թէ «Աղուանից կաթողիկոսներէն կշտամբուող պատկերամարտները նոյն են Մայրագոմեցիին յիշատակած երեք պատկերամարտներուն հետ»։

Կը կարծենք թէ Կարապետ Սարկաւագ սխալած ըլլայ իր այս ենթադրութիւններուն մէջ, ի մասին Ներսէս Բ.ի, որովհետեւ այդ բանին չձեռնարկած, պէտք էր նախ պատմականօպէս հաստատել թէ Պաւղիկեանք գոյութիւն ունէի՞ն Ներսէս Բ.ի օրով, քանի որ Օձնեցիին ակնարկութիւնը պարզապէս Պաւղիկեան աղանդաւորութեան նախկին կամ առաջին հեղինակներուն համար է, ինչպէս ցոյց կուտայ **պայղակենութիւն** (կամ աւելի ճիշտ **պաւղակենութիւն**) բառը։ Սխալ է այնպէս իմանալ թէ Մծղնեայք (μοιχαλής) (?) նոյն են Պաւղիկեաններուն հետ։ Իրաւ է թէ ժողովական կանոնները կամ մեր եկեղեցւոյ հայրերու գրուածները Մծղնեայ անուան ներքեւ Պաւղիկեանները կ'իմանան, բայց եթէ այդ բառը այդքան անձուկ նշանակութեամբ առնենք, հարկ կ'ըլլայ Պաւղիկեանները նոյն իսկ ժամանակակից համարել Եզնիկի. քանի որ այս վճիռը Մարկէոնի եւ Մանիի հետ կը յիշատակէ նաեւ «զՄծղնեայս». — հաւանական է որ այս վերջին բառը աղանդաւորներու խումբ մը ներկայացնէ, բայց, որովհետեւ բառական նշանակութիւն մըն ալ ունի, իբրեւ պիղծ կամ շնացող, կրնայ առհասարակ ամէն աղանդաւորներու համար ալ գործածուիլ։

Աղուանից կաթողիկոսներուն ձեռքով հալածուած պատկերամարտ աղանդաւորները որոնք կուգան Պաւղիկեան-

ներուն կը յարէին, չէ՞ն այն աղանդաւոր կարծուած կրօնաւորները, որոնք երեք հոգի են միայն, եւ Մովսէս Բ. կաթողիկոսէն կը կանչուէին, յետոյ ուրիշ միջոցով բանի կուգան եւ եկեղեցւոյ հրամաններուն կը հպատակէին։ — Երկու նոյնացուած աղանդաւորներուն վախճանը, ինչպէս կը տեսնուի, նոյն չէ եւ չի կրնար ըլլալ։

Նմանապէս Ներսէս Բ.ը ի զուր է հալածիչ նկատել, թէ-իսկ այն երկու կողմանց աղանդաւորները նոյն համարուէին մէկմէկու հետ, վասնզի Ներսէսի յաջորդներէն Մովսէսի ժամանակ՝ եւ թերեւս աւելի յետոյ՝ իբրեւ հալածուած կը նկատուէին այն երեք աղանդաւորները, եթէ հալածանք կրնայ նըկատուիլ այն միջոցը, որով եկեղեցւոյ ծոցը կը դառնան անոնք։

Ասկէ զատ, ինչպէ՞ս կարելի է որ Ներսէս Բ.ի ժամանակակից երեք անձեր, որոնք արդէն կրօնաւոր եղած էին իրենց խոյս տուած ժամանակ, պէտի կրնային ապրած ըլլալ մինչեւ Մայրագոմեցիի ժամանակ, երբ գրեթէ դարու մը միջոցը անցած էր այդ երկու դէմքերուն միջեւ։

Տարակոյս չկայ որ Պաւղիկեան կամ Պայղակենութեան աղանդաւորները եօթներորդ դարու առաջին քառորդին երեւան եկան. ուրեմն Ներսէս Գ. Կաթողիկոսն է այն (640 – 661) որուն կ'ակնարկէ Օձնեցին։ Այն միակ դժուարութիւնը որ Կարապետ սարկաւագի հանդէպ կ'ելլէ, սա է թէ աղանդաւորներուն մինչեւ Արաբներուն հետ միանալը ժամանակ մը անցած է, եւ «Ներսէս Գ. ապրեցաւ ճշդիւ Արաբներու առաջին արշաւանքին ժամանակ»։ Սակայն հաւանական է որ այդ հալածանքը եղած ըլլայ Ներսէս Գ.ի ձեռքով, իր կաթողիկոսութեան առաջին կամ երկրորդ տարին, եւ աղանդաւորները ժամանակ ունեցած պէտք ըլլային, այն ատեն, պահուըտիլ մինչեւ 646 թուականը, երբ Արաբացիք վերջնապէս յաղթեցին, եւ այդ վճռական պարագայէն վերջ միայն Պաւղիկեանք կրնային անոնց հետ միանալ։

Սոյն միջանկեալ պարագային քննութենէն վերջ, ըսենք թէ վերոյիշեալ պատմութենէն կը տեսնուի որ պատկերամար-

տութիւնը Բիւզանդական կայսրութեան մէջ սկսելէն շատ առաջ, ընդհանուր զգացում մըն է եղած Հայերուն համար, եւ այդ երեք կրօնաւորներուն ընթացքին նկատմամբ ոչ թէ Հայերը այլ **Աղուաններն են որ կը գանգատին**: Այդ դէպքին երկու մեծ անձնաւորութիւնները, Մովսէս Կաթողիկոս եւ Յովհաննէս վարդապետ Մայրագոմեցի, եռանդուն պաշտպաններ Հայ Եկեղեցւոյ եւ հակառակորդ Յունականութեան, բոլորովին չեն մերժեր պատկերներու կիրառութիւնը: Ինչ որ ալ ըլլայ, սակայն, պէտք է ըսել թէ անոնք պատկերներու դէմ բոլորովին տարբեր իմաստով մը ըմբռնած էին. ինչպէս Սողոմոնեան տաճարին քանդակագործութիւնները, եւ խորանին քերովբէները հեռու պաշտելութեան առարկայ ըլլալէ, պարզ զարդագրութիւններ էին, նոյն գաղափարն է որ Հայերը կը մղէ սաստել այն մարդիկը, որոնք կ'ուզեն եկեղեցւոյ մէջ իբրեւ զարդ նկարուած «զմարմնացելոյ Աստուծոյ զպատկերն» անարգել: Դիտելի կէտ մըն ալ այն է որ Հայերը Յունաց եկեղեցւոյ գործ նկատած են միշտ պատկերապաշտութիւնը կամ պատկերամարտութիւնը, ինչպէս ի յայտ կուգայ Վահանիկի խնդրոյն մէջ ալ: Ուրեմն բնական է հետեւցնել, թէ եթէ այդ գաղափարը գոյութիւն ունէր Ժ. դարուն, աւելի կանուխ՝ Զ. եւ Է. դարերուն ալ Հայերը այդ տեսութեան ապաւինած էին միշտ: Ուստի որչափ աւելի ըլլային Յոյները մեր կրօնական տեսութեան առջեւ, այնչափ պատկերներու դիմադրութիւնը բուռն պիտի ըլլար մեր մէջ:

Հ. Գ. Զարպհանալեան իր **Հայկական Դպրութեան** մէջ (էջ 448) Վրթանէս Քերթողի (581—594) կ'ընծայէ **Յաղագս Պատկերամարտաց** գրուած մը: Աստ հեղինակը կ'ուզէ ցրուել պատկերամարտներու այն խօսքերը, որով կ'ուզէին հաստատել, թէ «յեկեղեցիս քրիստոնէից եւ յարկս վկայից Աստուծոյ տեսանեմք նկարեալ զՍ. Գրիգոր եւ Աստուածահաճոյ չարչարանք իւր եւ սուրբ առաքինութիւնք, եւ զՍտեփաննոս Նախավկայ ի մէջ քարկոծողացն, վերանելի զփառաւոր կոյսն Ս. զԳայիանէ եւ զՀռիփսիմէ, հանդերձ ամենայն ընկերօքն եւ յաղթող Նահա-

տակօք»․ եւ ապա կը յարէ․ «Ամենայն յայտնի է թէ սուտ խօսիք, քանզի ի Հայս պատկերս ոք չգիտէր առնել մինչեւ ցայժմ, բայց ի Հոռոմոց բերէին, եւ մեր ուսմունքն անտի էին, եւ եթէ նոքա չէին կորուսեալ, եւ պատկերս եւ նկարս առնէին յեկեղեցիս յանուն Քրիստոսի, եւ հայրապետք, որպէս երանելի սուրբն Սահակ եւ Մեսրովպ եւ Եզնիկ եւ Արձան եւ Կորիւն եւ ընկերք նոցա, եւ ոչ ոք **ի նոցանէ վասն պատկերաց եւ նկարաց եկեղեցւոյ բանս ինչ ոչ ասաց**, բայց միայն պիղծն մոլին Թադէոս եւ Եսայի եւ ընկերք նոցուն»։

Հ. Զարպհանէլեան ի զուր այդ գործը կ'ընծայէ Վրթանէս Քերթողի, վասնզի ո՛չ միայն գրուածքին չարադրութիւնը ու ոճը անարժան է քերթողի մը գրչին, այլ եւ Վրթանէսի ժամանակակից պատկերամարտ կարծուածները երեք կրօնաւորներ են միայն որոնք հոս կը դառնան, մինչ Վրդանէսի ընծայուած այս թուղթին մէջ նշանակուածներն են ամբողջ խումբ մը, եւ Թադէոս մը, որ պիղծ ու մոլի կոչուած է։ Թէպէտ մենք ձեռքերնիս չունինք **Յաղագս Պատկերամարտաց** գրուածին ամբողջութիւնը, որպէսզի կարենանք անոր գրութեան մասին մեր վերջնական կարծիքը յայտնել, բայց պիտի ըսենք Սողիկովսքիի հետ թէ այդ վիճաբանութեան շարժառիթը եղած է պատկերամարտութիւնը, որ ինչպէս տեսանք, Ը. դարուն կէսէն սկսաւ։ Ուրեմն ըստ ամենայն հաւանականութեան Ը. կամ Թ. դարու գործ մըն է այն, եւ միայն այն ժամանակին, երբ պատկերամարտութեան խնդիրը ծանր կերպարանք մը սկսած էր առնել Կ. Պոլիս։

Այդ գործին մէջ երկու կողմերուն ալ ձեռնարկութիւնները անհիմն են բոլորովին. մէկ կողմը կ'ուզէ հաստատել թէ Պապի ժամանակ (382–388) մուտ գտաւ Հայերուն մէջ սրբազան նկարչութիւնը, ենթադրութիւն մը որ իր անտեղութիւնները ունի. իսկ գործին հեղինակը կը պնդէ, թէ ոսկեդարու մատենագիրներէն ոչ ոք **վասն պատկերաց եւ նկարաց եկեղեցւոյ բանս ինչ ոչ ասաց**, եւ ասոր կեզրակացնէ, թէ ամէնքն ալ հաւանած էին անոր, մինչ պէտք էր աւելի բանաւոր կերպով եզրակա-

ցնել, թէ անոնց ժամանակ պատկերապաշտութիւն չկար բնաւ, եւ հետեւաբար անոնք առիթ ալ չունեցան բան մը գրելու կամ խօսելու։ Այս մեր կարծիքին հաստատութիւն մըն են նաեւ Կարապետ Սարկաւագի սա տողերը. «Մեծաւ մասամբ եւ գրեթէ ամբողջովին Հայոց եկեղեցին շարունակ զինքն զգուշաւորութեան մէջ պահած է պատկերներու գործածութեան նկատմամբ, եւ այնպէս կը վարուի ցարդ։ Պատկերները միայն եկեղեցիներու մէջ ընդունուած են, եւ այն՝ շատ սահմանափակ թիւով։ Սեղանի պատկերը, կամ նաեւ անոր տեղ պարզ խաչ մը, առէպ բոլոր զարդը կը կազմեն»։ Եւ քիչ յետոյ կ'աւելցնէ թէ հաւանաբար պատկերները գոյութիւն ունեցան, բայց «առիթ չընծայեցին վրան կարծիք մը յայտնելու»։

Թէ Հայոց համար պատկերներու պաշտօնը անծանօթ էր կանուխէն, կը տեսնուի նաեւ այն սովորութենէն, ըստ որում Կաթողիկոսները պատկերները կը նկարէին հայրապետական եկեղեցիին մէջ, առանց իրենց մտքէն անցընելու, թէ պէտք է պատուոյ կամ պաշտաման արտայայտութիւն մը ընել անոնց առջեւ։ Այսպէս Յոբ կամ Յովաբ Կաթողիկոսի մահէն վերջ կ'ընտրուի Սողոմոն առաջնորդ Մաքենոցաց, որ խոր ծերութեան հասած էր արդէն երբ Կաթողիկոս ընտրուեցաւ (791)։ Իրեն կը հարցուի թէ «ո՞ւր կ'երթաս», կը պատասխանէ. «Ուրիշ հայրապետներու հետ իմ պատկերս ալ չինել տալ»։ Վարդան պատմիչ կ'աւելցնէ թէ Սողոմոն մէկ տարի վերջ կը վախճանի, եւ «նկարի ընդ այլսն»։

Տակաւին Ը. դարուն Հայ ժողովրդեան ամբողջութիւնը անտարբերութիւն մը ունի ի մասին պատկերներու, հիմնուելով աւանդութեան մը վրայ, զոր Գրիգոր Լուսաւորչի անձին հետ կը կապէր։ Մեր մատենագիրները բան մը չեն խօսիր այս ընդհանուր գաղափարին եւ աւանդութեան մասին, որուն համար պատմական թանկագին տեղեկութիւն մը կուտայ մեզի Գէորգ Ասորի եպիսկոպոսը։

Յիշուա ճգնազգեաց քահանան, Գէորգ Ասորի եպիսկոպոսէն (†740) տեղեկութիւններ կ'ուզէ Հայոց Լուսաւորչին

կեանքին նկատմամբ։ Գէորգ Ասորի, «Եպիսկոպոս Արաբաց» մականուանեալ, այդ քանանային հարցումներուն իբր պատասխան գրած նամակին մէջ կ'ըսէ. «Գիտցիր որ կրնայ անիկա իրեններուն հրամայել, որ ջուր չի խառնեն (բաժակի) գինւոյ մէջ, թէեւ հաւատացեալ ըլլար կամ ոչ հաւատացեալ, վասնզի այսօր իսկ կան շատ մը ոչ հաւատացեալ, որոնք պատարագի բաժակի գինւոյ մէջ ջուր կը լեցնեն։ Դարձեալ նոյն Գրիգորիոսն չէ պատուիրած որ ջուր չի խառնեն գինւոյ մէջ, կամ որ մէկը չհաղորդուի, բայց միայն յարութեան Ս. տօնին, բացի քահանայից եւ սարկաւագաց եւ տղայոց մանկանց, կամ որ պատկեր չդնենք իրենց եկեղեցեաց մէջ, թէպէտ եւ այս ամենն անոր կը վերագրեն (Հայք) (Տես Հ. Յ. ՏԱՇԵԱՆ, Ագաթանգեղոս առ Գէորգայ Ասորի եպիսկոպոսի, Նամակ Գէորգայ, էջ. 4–10)։

Այս եւ իններորդ դարուն, սակայն, հայ մատենագրութիւնը բոլորովին լռութեամբ չ'անցնիր պատկերներու խնդրոյն համար։ Եթէ առհմային ակն յանդիման ու անվիճելի յիշատակարաններ կը պակսին մեզի այս դարէն, սակայն, քննադատութիւնը երեւան կը բերէ մատենաւոր պարագայ մը, որ կրնայ մեր նիւթին համար շատ կարեւոր յօրինուած մը հայթայթել։ Անտօնեանց միաբանութեան մօտ գտնուած Թղթոց Գրքին ձեռագիր դաւանաբանութիւններու շարքին մէջ կայ հատ մը «Ասացեալ սրբոյ վարդապետէն Սահակայ Կաթողիկոսի եւ Մեծի Թարգմանչի». գրուածքը ամբողջ Թ. կամ Ժ. դարու Հայ Եկեղեցիին միտումները կը մատնէ իր մէջ. հետեւաբար գրուածքին պարագաներուն վրայ յենլով պիտի կրնանք գրեթէ առանց վերապահութեան ըսել, թէ այդ վերնագրին Կաթողիկոսի եւ Մեծի Թարգմանչի բառերը վերջամուտ յաւելուած մըն են կամ ագէտ ընդմիջարկութիւն մը։ Քանի որ զայն Սահակ Կաթողիկոսի գործ չկրնար նկատելէն վերջ, չենք կրնար, ո եւ է եղանակով հաստատել թէ այդ դաւանաբանութիւնը, ի սկզբան անանուն գրուած մը ըլլալով, ուրիշ մը քմահաճօրէն դրած ըլլայ զայն Սահակ Պարթեւի հովանաւորութեան տակ, եւ ոչ իսկ

կրնանք յախուռն կերպով անվաւերական (apocryphe) մը կամ (pseud-épigraphe) մը նկատել զայն։ Արդ ուրեմն այդ մատնանշուած դաւանաբանութիւնը գրած է Սահակ վարդապետ մը։ Ո՞վ է ուրեմն այդ Սահակը, որ այնքան գեղեցիկ կերպով կը շարագրէ Հայ Եկեղեցւոյ դաւանաբանութիւնը։ Դիտելի է որ Թուղթին սկիզբները, գրի գլուխին նկատմամբ այն բացատրութիւնը կը տեսնուի, ինչ որ գրած է Սիւնեցին իր առ Գերմանոս Պատրիարք (715—730) գրած նամակին մէջ։ Այս Թուականէն առաջ է՝ Թէպէտ Սահակ Կաթողիկոս Ձորափորեցիի պաշտօնավարութիւնը, բայց Յովհ. Օձնեցիէն առաջ մինչեւ Եզր՝ կաթողիկոսացող 6—7 թոյլերուն կարգին մէջ կ'երեւայ այն, նոյն իսկ մեր պատմիչներուն գրութեամբը ու վկայութիւնովը։ Եւ Թոյլ կաթողիկոսէ մը այդ ոգիով գրուած Թուղթի չենք կրնար սպասել։ Եւ որովհետեւ Դ. Սահակ մըն ալ աթոռակալած չէ, որուն կարելի ըլլայ ընծայել զայն, հետեւաբար, ըստ կարծեաց Գեր. Եղիշէ Եպիս. Դուրեանի, այդ Թուղթը գրողն է Սահակ Մռուտ կամ Ապիկուրէշ ըսուածը, որ Փոտի ալ Թուղթ գրեց, եւ եկեղեցական պաշտպանութեան հզօր դերը ստանձնեց ամէն պարագայի մէջ։ Եւ այս Մռուտ կամ Ապիկուրէշ կոչուած Սահակը, որ երկու դարերուն, ութերորդականին եւ իններորդականին միջինքը կը գրաւէ, գրեթէ ժամանակին եկեղեցական գիտնական ներկայացուցիչը կրնայ համարուիլ բոլոր ազգին համար։ Սահակի սոյն դաւանաբանութեան վերջին յորդորական տողերը՝ ուղղուած Յունաց մէջ ապրող հայ եկեղեցականի մը, սա շեշտերով կը խօսին ի մասին պատկերաց. «Եւ արդ, անդրդուելի կաց միշտ ի ճշմարտութեան, եւ մի՛ ի պատկերապաշտութիւն նոցա եւ մի՛ յայլ ինչ խոտորեսցիս, զի պատկեր Աստուծոյ խաչն է տուեալ մեզ ի պաշտօն, զի պաշտեսցուք զԱստուած, խաչիւ իւրով սրբով, որպէս եւ ամենայն քրիստոնեայք, եւ հարքն սուրբք՝ յառաքելոցն մինչեւ ցայժմ. իսկ զայլ պատկեր հրաժարեցուցանէ ինքն Աստուած ասելով Թէ զի՞նչ նմանութիւն յիս տեսէք զի պատկեր ինձ ձեւացուցէք. ապա ուրեմն այլ պատկեր երեւելի

չէ պաշտելի, բայց միայն խաչն, իսկ որք այլ պատկեր արտաքին ըստ հեթանոսական սովորութեան օտարին եւ ոչ ըստ Աստուածպաշտութեան օրինացն՝ որ հրամայեալ է մեզ ի գրոց Սրբոց։ Բայց դու խնդրողդ ուղիղ հաւատոց բանի, զայս ամենայն առեալ (ունեալ?) եւ առաւելեալ իմա՝ զհաւատոյս զօրութիւն, եւ արիաբար քաջացիր եւ յաղթեա հերձուածողական հնարից եւ առ ոչինչ համարեա զբանս նոցա այլայլականս»։

Իններորդ դարու մէջ այս նկատմամբ ուրիշ յիշատակներ կը պակսին մեզի, կամ գէթ՝ մենք կարող չեղանք ձեռք ձգել զանոնք. ունինք միայն բիւզանդական Լէոն Ե. կայսեր պարագան, որ մոլեռանդ պատկերամարտն էր այս դարուն, եւ որուն համար ըսուած էր, ինչպէս տեսանք. «Ծնած քրիստոնէութեան այնպիսի դաւառի մը մէջ, ուր պատկերաց պաշտամունքը խոր արմատ չէր արձակած»։ Սակայն եթէ պատմական յիշատակներ կը պակսին, կարելի պիտի ըլլայ մեզի դարուս մէջ կարդալ ժողովրդեան զգացումները, որոնք ծնունդ եւ արգասիք են անցեալ դարուն, եւ որոնք իրենց կողմէ ազդակները պիտի ըլլան յաջորդին։ Ուր կը պակսին ստոյգ տեղեկութիւններ, հաւանական ենթադրութիւնը, հիմնուած նոյն ժամանակի մերձաւոր դէպքերուն վրայ, պիտի կրնայ մեզի գոհացնել։ Արդ, ութերրորդ դարը պատկերամարտ դար մըն էր, անոր յաջորդող իններորդ դարը քիչ մը աւելի պէտք է առաջ գացած ըլլար, որպէս զի կարելի ըլլայ մեզի բացատրել տասներրորդին մեծ շարժումները, որոնք տեղի ունեցան պատկերներու հակառակ։

Թէ, ո՛րչափ կը խորշէին Հայերը պատկերներու իբր պաշտելութեան առարկայ գործածութենէն, այս դարու մէջ մանաւանդ ցոյց տուած են կորովոյ ուժգնութեամբ մը, նոյն իսկ այն վէճերուն ժամանակ, երբ պատկերապաշտութիւնը յաղթանակ կը տանէր Յունական գետնի վրայ։

Այն առաջին հարուածը, որ պայթեցաւ այս դարուն, կը բաղխի Վահան կամ Վահանիկ Կաթողիկոսին (968–970)։ Վարդան վարդապետ այսպէս կը գրէր. «Զկնի սորա (Անանիայի) էառ

զաթոռն Վահան ի Բաղաց ամ մի, որ եւ ապա կարծես առեալ եթէ դաշնագիր է Վրաց, եւ պատկերս ես ածեր, վասն որոյ փոխեն զնա եւ դնեն յաթոռն զտէր Ստեփաննոս» (էջ 89)։

Սամուէլ Անեցի ալ իր ժամանակագրութեան մէջ կ՚ըսէ. «Յետ մահուան տեառն Անանիայի, կացեալ յաթոռ Սրբոյն Գրիգորի տէր Վահան ի Բաղոց։ Սա դաշնագիր եղեւ ընդ Վիրս, միաբան դաւանութեամբ, վասն որոյ ժողովեալք յԱնի բազում եպիսկոպոսաց եւ խաչակրօն վանականաց, որք ծանուցեալ հաւատացեալ զհերձուած կորստեան մտաց նորա զի ես բերել պատկերս վասն նորոգման աղանդոյն Քաղկեդոնի, եւ որոշեալ զնա հալածական արարին։ Եւ միաբանեալք նստուցին յաթոռ Ս. Լուսաւորչին, զՍտեփաննոս հարազատ արեան Սրբոյ առնն Աստուծոյ մաշտոցի՝ որ ի Սեւան» (էջ 100–101)։

Վահանայ ընթացքի մասին աւելի որոշ եւ աւելի խիստ կը խօսի Ստեփաննոս Սիւնեցին իր «Ընդդէմ հետեւողաց Քաղկեդոնի» ճառին մէջ, ըսելով. «Դարձեալ ժողով Սուրբ Հարցն յԱնի, որում քննեալ գտին համախոհ վրայ զՎահան կաթողիկոս որ ի Բաղաց, եւ զի պատկեր եմուտ յեկեղեցիս Հայոց եւ ամենայն սեղանն բարձեալ էր խաչին պայծառութիւն, եւ իկոնիւք զարդարեալ, որոշեցին զնա նզովիւք եւ զՍտեփաննոս ոմն եդին ի տեղին» (էջ. 178)։

Մխիթարեանները, որոնք նպատակ ունեցած են միշտ Հայերը հաղորդակից ներկայացնել արեւելեան, եւ մանաւանդ արեւմտեան կրօնական գաղափարներուն, ուզելով քրիստոնէութեան ծագումէն սկսեալ պատկերապաշտութեան գաղափարը տեսնել ի Հայս, տարապայման մեկնութիւններ կուտան այդ հատուածին։ «Ոչ առ պատկերան բերի հակառակութիւնդ, կը գրէ Վարդանայ պատմութեան ծանօթագրողը, այլ առ ի Վրաց անտի բերումն»։ Իսկ Հ. Ջամչեան իր գործին Դ. գրոց ծանօթութեան մէջ (էջ. 1017) կը գրէ. «Բայց դիտելի է, զի այն պատճառ՝ զոր տան նախակարգեալ պատմիչքդ, ո՛չ հայի ի բան յարգութեան Ս. Պատկերաց այլ՝ յայլ ինչ, եթէ զի զայն պատկեր զոր եբեր եւ եդ Վահան յեկե-

գեցուջ, համարեցան ոմանք զնոյն իբր նշան յայտնի միաբանելոյ ի ծէսս Յունաց»։

Ասանց մեր մտքէն անցած ընդունելու թէ Հայերը ոչ-պատկերապաշտ ըլլալով կրօնքին աղանդաւոր ըլլալ, որովհետեւ պատկերները գործ չունէին ուղիղ հաւատքին հետ, եւ պարզ աւելորդապաշտութիւն մը ըլլալէ անդին չէին անցներ, զէթ իրենց այժմու վիճակով, եւ աչքի առջեւ ունենալով մեր նախնեաց հակակիր զգացումները պատկերներու մասին, ամէն ապահովութեամբ պիտի ըսենք թէ Վահանիկի պատկերներու խնդիրը, հայի ի բան յարգութեան պաշտերաց, զի բնական էր որ, եթէ պատկեր մը բերուէր առ Հայս՝ կա՛մ Յունական կա՛մ Վրական և կամ Ասորական պիտի ըլլար այն, ուստի և ի Վրաց անտի բերուած պատճառ մը չպիտի կրնար տալ հակառակութեան, եթէ Հայերու մէջ պատկերներու մասին բնական հակակրութիւն մը չգտնուէր արդէն։ Ասկէ զատ, Ստեփաննոս Սիւնեցւոյ հատուածը, զոր վերոյիշեալ Մխիթարեանք քօղի տակ ծածկելու և յառաջ չբերելու նրբամտութիւնը ունեցած են Վահանիկի դէպքին մէջ, հիմէն կը խախտէ իրենց պաշտպանած գաղափարը։ Հայերը սովորութիւն ունէին սկիզբէն ի վեր պաշտելութեան միակ առարկա՛յ ճանչնալ Խաչը, անով կը զարդարէին իրենց եկեղեցին ու սեղանը։ Վահանիկ Խաչին տեղ (կամ մօտ) պատկերներ կը դնէ, զի «յամենայն սեղան բարձեալ էր խաչին պայծառութիւն եւ ի կենիւ զարդարեալ»։

Փոխանակ Վահանիկի ընտրուած Ստեփաննոսի յաջորդն է Խաչիկ Կաթողիկոս (971-991), որուն օրով յոյն մետրապոլիտներ սկսած էին դաւանաբանական խնդիրներու մէջ կոշտ յարձակումներ ընել Հայ. ուղղափառ Եկեղեցւոյ դէմ։ Խաչիկ Սեբաստիոյ Մետրապոլիտին երկուց բնութեանց խնդրոյ մասին պատասխանելով այն նամակով զոր գրած է՝ ըստ ոմանց՝ Սամուէլ Կամրջաձորեցի, տրամաբանօրէն խօսելէ վերջ այդ նորամուտ Աստուածախօսութեան վրայ, ա՛լ աւելի առաջ կ'երթայ, և Հայերուն վրայ յանիրաւի ծանրացած հերետիկոս յոր-

ջորջումը հերքելէ վերջ, կը փաստաբանէ, թէ Յոյները իրենց աւելորդապաշտութիւններով և պատկերներու մատուցած սը-նոտի պաշտամունքով կռապաշտներէ ալ ստորին են և հերե-տիկոսներէ աւելի հերետիկոս։

«Զատէրունեան և Աստուածախառն մարմին և զԱստուածացեալ ծառայական և արարածական բնութիւն օտարացուցանէք ի բանէն, և զքանդակեալն կամ զգրեալ պատկերս ի նիւթս ոմանս, պաշտէք Աստուածարելաբար, այնքան բազմութեամբ և պաշտօնասիրութեամբ, մինչ զի և յանծանօթս, որք ոչ են մեզ յանուն եկեալ ձգիք, զի իւրաքանչիւր ոք առանձինն է քուրմ և տօն և յաճախագոյն ընդ նիւթ զայր-ագիտաց, ոչ է զգուշագոյն, և յայտ առնէ Աստուածաբան յԱստուածաբանութեան ճառին. են ոմանք, ասէ, որք պատկեր սիրելեացն արարին, և որք զկնի եկին, անգիտացան ըզ-պատճառն և սովորութիւն կալեալ Աստուած պաշտեցին, վասնորոյ խրատէ օրինօքն զԻսրայէլ թէ մի՛ արասցես նմանութիւն ինչ և պատկեր, և յերկրորդ օրէնսն խրատէ թէ յոր-ժամ երևեցաւ Աստուած, նմանութիւն ինչ ոչ տեսաք և զհրեշ-տակ լինելութենէ ինչ ոչ ճառեաց վասն նորին պատճառի։ Եւ հրեշտակք որդի և պատկեր Աստուծոյ ո՛չ կոչեցան իբրև ըզ-մարդ յաղագս սորին խորհրդոց. զի մի՛ բազում պաշտամանցն մոլորութիւն լինիցի ի մարդիկ։ Իսկ եթէ ի Պինեադայ քաղա-քի ի խառնուրդս Յար (Յոր.?) և Դան աղբերացն Յորդանա-նու կարդարեալ պատկեր Փրկչին ի տեառատես կնոջէն յիշե-ցես, նոյն որ պատմեաց զպատմութիւնն զայն Եւսեբի յեկե-ղեցական արածին, ասէ «Եթէ չեն ինչ զարմանք, զի հեթա-նոսաբարոյ մարդիկ ըստ սովորութեան արարին զայն» (Ասո-ղիկ, Գիրք Գ. Գլուխ ԼԱ.)։

Դաւանաբանական նախապաշարումին մօքերու մէջ ձգած պղտորումներէն ոմանք կը մղուին մեղանչելու նոյն իսկ պատ-մութեան դէմ։ Այսպէս, Անանիա Նարեկացի, Նարեկայ վանուց համբաւաւոր և գիտնական առաջնորդը, որ իր ժամանակակիցնե-րէն կոչուած է փիլիսոփայն մեծ և հռչակաւոր հռետոր, իրմէ զար

*մը յետոյ ապրող Անանիա Սանահնեցիին համանունութեան պատճառով շփոթուած է Մխիթարեաններու կողմէն, սխալ և քմահաճոյ ենթադրութիւններով ։ Անանիա Նարեկացի, իբր գիտնական և իբր վարժապետ նոյն դարու մեծ անձնաւորութիւններուն, կարելի է նկատուիլ դարուն ոգին և ներկայացուցիչը, որով և կ'արժէ մեծ կարեւորութիւն տալ իր գրուածներուն և գաղափարներուն ։ Թերեւս այդ մտածութեամբ Հ. Գ. Զարպհանէլեան յանիրաւի Սանահնեցիին կ'ընծայէ Ընդդէմ Երկաբնակաց ճառը, ափսոսալով միանգամայն, որ հեղինակը (ըստ իր կարծեաց Սանահնեցի) «արդէն ազգին մէջ այլեւայլ տարաձայնութեանց և երկպառակութեանց առիթ՝ խնդրոց վրայ խօսելուն ատեն պէտք եղած զգուշութիւնը և անկողմնասիրութիւնը չի ցուցներ» ։*

*Մենք հակառակ այդ կարծեաց, և հակառակ Ընդդէմ Երկաբնակաց ճառին վերջէն յաւելուած սխալ վերնագրին, ըստ որում Անանիա գրած ըլլայ զայն «Հրամանաւ Տեառն Պետրոսի Հայոց Վերադիտողի», մեր բազմահմուտ վարդապետին հետ կընդունինք թէ այդ գրուածը Անանիա Նարեկացիի երկասիրութիւններէն է բացարձակապէս ։*

1. *Կիրակոս որ Սանահնեցիի գործերը կը թուէ իր պատմութեան մէջ, չի յիշատակեր Ընդդէմ Երկաբնակաց ճառ մը, որ կարեւորագոյն գործ մը ըլլալով կարելի չէր մոռնալ, եթէ երբեք Սանահնեցիին գործը ըլլար այն ։*

2. *Այդ ճառը ուղղուած է, ինչպէս կը տեսնուի վերջաբանէն, առ «Գերազարդ և ամենիմաստ հանճարով առլցեալ. Տէր Խաչիկ վերադիտող Հայոց» ։ Եւ երբեք յիշատակութիւն չկայ Պետրոս Կաթողիկոսի, որմէ պիտի կրնանք եզրակացնել թէ վերջամուտ է Պետրոսի անունով եղած խորագիրը ։*

3. *Արմաշի վանքին Ձեռագրին յիշատակարանին մէջ, գաղափարել տուող անձը կը գրէ «Զհեղինակաց ցանկալի և սուրբ գրոցս դիտելի է, թէ ո՞յք ոմանք էին. նախկինն է Անանիա վարդապետն, որ ըստ ոմանց ասի գալ կրթիչ և վարժապետ Սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն» ։ Եւ թէպէտ կ'աւել-*

ցընէ թէ սա գրեց «ի խնդրոյ տեառն Պետրոսի գետադարձի Հայրապետին մերոյ. այլ առընկալաւ Տէր Խաչիկ վերադիտողն Հայոց»։ Սակայն այդ պարագան հակառակ է ժամանակագրութեան։ Պետրոս և Խաչիկ ապրած են ԺԱ. դարուն (1019-1060) մինչ Անանիա Նարեկացի Ժ. դարու մատենագիր մըն է, հետևաբար իր ճառին մէջ յիշատակուած Կաթողիկոսն է Խաչիկ Ա. (971-991)։

4. Այդ ճառին բովանդակած հակաքաղկեդոնական զգացումները և պատկերամարտ գաղափարները կրնան արտայայտուած ըլլալ Կաթողիկոսի մը, որ բուռն պատկերամարտի համբաւը ունենար։ Գետադարձ և իր յաջորդը, Խաչիկ Բ., այդ նկարագիրը չունէին կամ պատեհութիւն չունեցան ցուցնելու։

5. Այս ամէնուն վրայ պէտք է աւելցնել Ուխտանէսի վկայութիւնը, որ առ Անանիա Նարեկացի գրած թղթոյն մէջ կ՚ըսէ. «Քանզի ի ժամանակին յայնմիկ, յորժամ եկեր առ Սուրբ Հայրապետն մեր Խաչիկ (Ա) բերելով նմա ընծայ և պատարագ հոգևոր զգիրս Հաւատարմաց՝ որ Ընդդէմ Երկաբնակացն, զոր ես լինքնին խօսեալ ի խորհուրդ հաւատոյ ի ձեռն հոգւոյն սրբոյ ի քեզ բնակելոյ»։ (Ուխտանէսի Պտմ. Գլ. Ա. էջ 11)։

Սխալմամբ Սանահնեցիին ընծայուած, բայց իրաւամբ Անանիա Նարեկացիինը եղող Ընդդէմ Երկաբնակաց ճառը կը բովանդակէ տասներկու գլուխներ, որոնք կը խօսին ընդ միմիանս հաղորդուելուն, և մեծի հինգշաբաթուն վրայ, ընդդէմ անոնց, որ աղաւնիացաւ կը համարին Քրիստոսի մարմինը, ընդդէմ Ներքինացելոց, պատկերաց պաշտաման, Քաղկեդոնի ժողովին, Վրաց բաժանման, չորս աթոռներուն, միւռոնին, բաղարջին, Քրիստոսի Ծննդեան տօնին, և երից սրբասացութեանց մասին։

«Վասն պատկերապաշտութեան»ը, որ գործին Զ. գլուխը կը կազմէ, արժանի է ամբողջովին յառաջ բերուիլ աստէն, իբր կատարելագոյն գրուածը պատկերներու պաշտաման դէմ։ Այդ գլխուն առաջին մասը, որով կ՚ուզէ պատկերապաշտութեան ծագումը ցոյց տալ, հաստատուած է Սողոմոնի Իմաս-

տութեան ԺԴ. գլխուն բովանդակութեանը վրայ, որուն գաղափարները փոխ առած է և որուն հետ շատ հանգիտութիւններ ունի բացատրութեան և ոճի տեսակէտով ։ Իսկ երկրորդ մասը, որ հեղինակին բուն ձեռնարկութիւնները կը բովանդակէ պատկերներուն դէմ, ցոյց կու տայ թէ Անանիա կատարեալ ծանօթութիւն և գիտակցութիւն ունի իր ճառած նիւթին վրայ, և իբրև ճշմարիտ հաւատացեալ և իմաստասէր միտք, կը դատէ թէ որչա՛փ վտանգաւոր է ռամկին և տգէտ ժողովրդեան առջև դնել պատկեր մը, որուն վրայ չի կրնար ուղղափառի մը անկեղծ և անաղարտ հաւատքը կազմել ։

«Դարձեալ ասացից սուղ ինչ բան յաղագս պատկերապաշտաման պատկերաց թէ ուստի ընկալեալ զայդպիսի պաշտօնս, ոչ ահա սկիզբն կռապաշտութեան գոյն իսկ եղեւ, զի զառաջինն, ոչ վասն պաշտաման ստեղծին, այլ վասն յիշատակի տարաժամ մանկանց մեռելոց, զորս ի պոռնկութենէ ծնան ։ Եւ տարակարծեալ (=տարակարձեալ?) կեանք յաղագս անօրէն ծննդեանն և ծնողացն առ գութ մանկանն, զնմանութիւն տրուպ հասակին և կերպարանացն նկարագրեցին առաջի աչաց միշտ նկատելով զմանուկն ։ Եւ սուտակապաշտուց մեծարելով յաղագս ծնողացն ախորժակի, և առ սակաւ սակաւ ընդերկարեալ, յետոյ ի տգիտացն ի պաշտօն առաւ զոր բազում ջանիւք Աստուած խափանեաց պատժիւք օրինացն, և պատուէր տալով, թէ մի՛ արասցես նմանութիւն զինչ և իցէ պատկերի ։ Եւ Եսայեաւ մարգարէին ասէ Աստուած, ո՞ւմ նմանեցուցիք զՏէր, միթէ ի հիւսանց ճարտարաց պատկերի՞ նմանեցայց. և ահա ոչ ունիմք վկայութիւն ի մարգարէիցն՝ պատկերի երկիր պագանել, կամ ոչ՝ յառաքելոցն, բայց միայն խաչին ։ Ապա թէ ոչ, ցուցէք մարգարէիցն վկայութիւն, թէ ո՞վ հրամայեաց երկիրպագանել պատկերի՝ որպէս խաչին ունիմք վկայութիւն բազում, յօրինաց և ի մարգարէից, բայց վասն պատկերի երկրպագութեան ոչ ուստեք կարես գտանել վկայութիւն ։ Եւ զի՞րդ զպատճառն գայթակղութեան զոր Աստուած հրաժարեցոյց երկրպագել, դարձեալ ի պաշտօն ա-

ուիք. ապա թէ ասիցես, թէ ոչ պաշտեմ այդ պատուեմ, այդ գիտութիւն ոչ ամենեցուն է՝ այլ սակաւուց, իսկ տխմարք և տգէտք, ի պատուելն քո պաշտելի և երկիրպագելի համարին և այնպիսի մտօք երկրպագելն, ո՞չ ահա կռապաշտութիւն համարեալ է, ո՞չ ուսար յառաքելոյն՝ որ յանդիմանէ զունողսն գիտութեան և բազմեալ ի մեհեանսն, աւանիկ թէպէտ և ինքեանք ոչ վնասէին, այլ զտկարս գայթակղեցուցանէին, և այնպէս ի Քրիստոս մեղանչէին։ Եւ դու պատուելովդ՝ պատճառս տաս տգիտաց ի կռապաշտութիւն անկանիլ, զի պաշտելի և երկրպագելի յարարածս, միայն խաչն է վկայութեամբ մարգարէից։ Զի եթէ պատկերն երկրպագելի էր, ընդէ՞ր ոչ մի ի մարգարէից վկայեաց ոք. քանզի մեք զԱստուած պաշտելի ի մարգարէից ուսաք, և զՔրիստոս Աստուած և որդի Աստուծոյ ի վկայութենէ մարգարէիցն ծանեաք. և զխաչն պաշտելի ի նոցունց ուսաք։ Եւ եթէ պատկերքդ եւս պաշտելի էր, ընդէ՞ր ոչ ծանուցին մարգարէքն, որ զամենայն ինչ ծանուցին մեզ ի յայտնութենէ հոգւոյն, այլ մեք զԱստուած որ ի մարգարէից ո՛չ վկայեցաւ, ոչ պաշտեմք, թող թէ զպատկերս։ Իսկ արդ՝ եթէ ասիցես, եթէ Քրիստոսի պատկերին երկիր ո՞չ պագանեմ. ասացից առ այդ՝ ես զՔրիստոս կենդանի պատկեր միշտ ի խաչին խոստովանիմ. որպէս ուսայ ի մարգարէիցն որում երկրպագանեմ։ Եւ զի՞արդ մարթի զկենդանի պատկերն ի խաչին բեւեռեալ՝ թողուլ, և նմանութեան լոկոյ, որ ի ճարտարաց նկարեցաւ, այնմ երկրպագանել։ Եւ արդ ո՞վ ոք զթագաւոր կենդանի տեսեալ յաթոռ փառաց նստեալ. թողուլ զայն. և մեռեալ պատկերի, որ ի մարդկանէ նմանագրեալ, այնմ երկրպագանիցէ։ Այլ մեք նկարագրեմք զպատկեր Քրիստոսի և զառաքելոց և զմարգարէից, և հայեցեալ տեսանեմք և պատուեմք, այլ ոչ հրամայեմք տխմարաց և տգիտաց ժողովրդոց առաւել քան զխաչին պատիւ և պաշտօն մատուցանել, զի մի՛ տգիտութեամբ գայթակղեալ ի կռապաշտութիւն անկանիցին։ Այլ եթէ զայս պատճառես, եթէ տօնել յիշատակ մարտիրոսի, և պատուել զպատկեր նորա բարե-

խօս ունիմք առ Աստուած, այդ իսկ են յետին տգիտութիւն. զի մեք գիտեմք զմարտիրոսն կենդանիք և անմահացեալք, և մերձ առ Աստուած որ և բարեխօս են վասն մեր, որպէս և Աստուածաբանն ասէ, թէ հաւատամք զոգիսն արձակել ի կապարանէ մարմնոյս, և առաւել ի գգաստութեան են մերձ առ Աստուած որ և բարեխօս իսկ են վասն մեր: Արդ զկենդանի պատկերն որ մերձ առ Աստուած են՝ թողեալ, զանբարբառ պատկերն ունիմք բարեխօս, զհետ եւ զժողովրդականն մանաւանդ թէ զգլխաւորն իսկ, որ առաւել քան զխաչ եւ զեկեղեցի, պատուեն եւ պաշտեն զպատկերս. և չրջեցուցանեն առաւել պատուով քան զխաչն, և գայթակղին յայնմիկ, և դուք ոչ զգուշացուցանէք, այլ առաւել յորդորէք պատկերապաշտ լինել, և համարձակութիւնդ ձեր յայդ՝ գայթակղութիւն լինի տկարաց. և այս առաւել քան զչափն պատուելով, զմիտս տկարացն զկծեցուցեալ ի Քրիստոս մեղանչէք, և գայթակղեցուցանէք զորդէսս, վասն որոց Քրիստոս մեռաւ: Եւ արդ՝ բաւական լիցի այս առ ի յանդիմանութիւն տգիտաց և խրատ իմաստնոց»: (Տես նաև ՏԱԹԵՒԱՑԻ անհարան հասոր «վասն կռապաշտութեան» էջ 279):

Երբ կը համրինք մեր եկեղեցական պատմութեան ԺԱ. դարուն, պէտք է այդ կէտէն սկսեալ երկու խումբերու վերածել Հայ հասարակութիւնը, հետեւաբար և Հայ վարդապետներու կրօնական գաղափարները. Կիլիկեան և Արեւելեան:

Այս դարուն տեղի ունեցող խնդիրները ծանօթ են ամենուս: Լատինները և Յոյները երկար ժամանակներէ ի վեր բուռն տենչ մը ունէին իրենց եկեղեցիներուն միացնել մեր եկեղեցին: Առիթը եկած էր, Հայերը պէտք ունէին իրենց օժանդակութեան, ուստի իրենց կողմէն ըլլալիք դոյզն օգնութեան մը փոխարէն կրօնական մեծամեծ զոհողութիւններ պահանջեցին, Այնպէսով Կիլիկիոյ բաժնին հայութիւնը դերծ չի կրցաւ մնալ օտար ազդեցութիւններէն, և իր մէջ ընդունեց ոչ-տոհմային սովորոյթներու բաժին մը:

Հայերու կացութիւնը, ուշադրութեան առարկայ ընելէ առաջ՝ սակայն՝ պէտք է վերջին ակնարկ մը նետել Արեւելեան Հայ վարդապետներու մաքի ու կամքի արամադրութեան մասին, ցոյց տալու համար պատկերներու նկատմամբ եղած այն դոյզն ներողամտութիւնը, որ դարերէ վերջ հազիւ ԺԲ. դարուն ի յայտ կու գար անոնց մէջ։

Խորովանոյշի բարեպաշտական զգացումները եկեղեցիին պայծառութեան մղեցին զինքը։ Ասոնցմէ եղան Հաղբատու և Սանահնի վանքերը (հաստատուած 967ին) որոնք դարերու ընթացքին մէջ, պահպանելով Հայ. ուղղափառ Եկեղեցւոյ հին աւանդութիւնները, այնքան լա՛ւ կերպով իրենց գրիչները սրեցին Կիլիկեցի եկեղեցականներու նորասէր ձգտումներուն դէմ։

Այլ սակայն հասած էր ժամանակը, ուր պատկերներու մասին մինչև այս ատեն ցոյց տրուած հակակրութիւնը կորսընցնէր իր բուռն նկարագիրը։ Նկարչութիւնն ու պատկերագրութիւնը հազիւ նշանակելի տեղ մը սկսած էին գրաւել Հայ գետնի վրայ, ուրեմն կարելի պիտի ըլլար գոնէ փոքր տեղ մը տալ անոր՝ եկեղեցիներուն մէջ, և ահա այդ գաղափարն է, զոր կ'ուզէ պաշտպանել Յովհաննէս Սարկաւագ վարդապետ որ իր ուսումը առած էր Հաղբատու և Սանահնի վանքերուն մէջ, և ապա առաջնորդ եղած էր Հաղբատու։ Կը զարմանանք որ Հ. Գ. Զարպհանէլեան Ընդդէմ Երկաբնակացը, Սանահնեցիին կընծայէ, առանց խորհելու թէ կարելի՞ է որ գրեթէ միեւնոյն ժամանակ, միեւնոյն վանքի երկու միաբանները այնքան հակառակ դրութիւններ պաշտպանեն իրենց գրուածներուն մէջ։

Յովհաննէս սարկաւագ իր «Յաղագս Բաղկեդոնականաց ճառին մէջ զոր գրած է «ի խնդրոյ Գագկայ ճգնաւորի» գլուխ մը նուիրած է «վասն պատկերաց»։

Այդ խորագրին ներքև պատկերներու մասին տարբերութիւններ կը գծէ։ Փրկչական կենսագրութիւնը «նկարեալ կեղեցիս, և կամ զբուն իսկ որ երբեմն յեդեսացւոյ քաղաքին» տեսած ատենները աւելի եւս կը յիշենք զՔրիստոս

գոհանանք անոնցմով «երկրպագելով սրտի մօտք նմին ինքեան Փրկչին»։ Աստուածածնայ պատկերին առջև պէտք է կ'ըսէ «աղաչել զծնողն ի բարեխօսութիւն»։ Իսկ երբ կը տեսնենք «առաքելոց, մարգարէից և յայտնի վկայից զդրօշմեալ կենդանագրութիւնս, օրհնել պարտիմք զնա «որ ընտրեաց զնոսա»։

Տեսանք արդէն թէ Խաչիկ կաթողիկոս կը յանդիմանէր Յոյները ըսելով թէ «և յանծանօթս (պատկերս Սրբոց) և որք ոչ են մեզ յանուն եկեալ, ձգիք»։ Սարկաւագ վարդապետ ալ նոյն գաղափարը կը պաշտպանէ ըսելով. «Են և անյայտ ոմանք սուրբք որոց զպատկերսն բերեն տունկք և տախտակք և անդրիանդք, առաջի նոցա ոչ համարձակ առ Տէր աղօթել, վասն որոյ երկբայութիւն է», և կը պատուիրէ «զերկբայեալսն ոչ պատուել և ո՛չ անարգել»։ Այսու հանդերձ բուռն հակառակորդ մըն է պատկերապաշտութեան և կը հրամայէ, «ոչ նիւթապաշտ և պատկերապաշտ լինիլ». և զզուանք կը յայտնէ պատկերներու չուայլութեան մասին, «բայց բազմութիւն պատկերաց ոսկեղինաց և արծաթեղինաց և այլոց նիւթոց, զորս շրջեցուցանեն ընդ ինքեանս կամ ի տունս հասարակաց, ո՛չ հաճեցայ»։ Յովհաննու այս խօսքերէն կրնայ նոյն իսկ եզրակացուիլ, թէ ինքը հակառակ է քանդակներու։ Իսկ ի վերջ գլխուն կ'ըսէ. «Եւ վասն բազմութեան պատկերաց դրօշելոց առ այժմ լուռ եղեց». կ'երեւայ որ կ'ուզէ դատապարտել այդ քանդակեալ պատկերներու յաճախութիւնը, բայց չգիտենք ի՞նչ փափկանկատութեամբ կը փակէ խօսքը առանց մանրամասնութեան մտնելու։

Յովհաննէս Սարկաւագ ունի երկրորդ թուղթ մըն ալ «Վասն մասանց պատուոյ և վասն պատկերաց» յորում աւելի հաստատ նկարագիր մը ցոյց կու տայ։ Նախ, հրեշտակաց պաշտելութիւնը մերժելէ վերջ կ'ըսէ. «Եւ եթէ կենդանի և սուրբ զօրութեանցն (հրեշտակայ) ոչ տուեալ է պաշտօն և երկրպագութիւն, զի՞նչ ասասցեն որք պատկերս իմն նոցա և որակութիւնս ստեղծանեն անձև և անորակ բնութեանցն և պաշտօնատարք լինին, ո՛չ ընկալաւ զայս ի հարցն եկեղեցի»։ Ամէն

սրբոց պատկերներու և գերեզմաններու պաշտօն մատուցանելը աւելորդապաշտութիւն կը նկատէ. «Բայց զգերեզմանս կամ զպատկերս ոմանց, թէև սուրբք իցեն, պաշտել ոչ հրամայեցաք, և ոչ ցուցանել ոք կարէ»: Այդ խօսքերէն քիչ վերջ շատ բնական և գեղեցիկ եղանակով կը պախարակէ պատկերապաշտներու սխալանքը ըսելով «...Առանց ընտրութեան և իմաստութեան զմեծ գործ բարեպաշտութեան վճարել կարծելով զանբաղդատական պատիւ Աստուածութեան ծառայից նորա կամ ումեք յարարածոց տայցեմք, և ոչ զարարիչն եւեթ, այլ և զծառայս նորա պատուել կարծելովն՝ տրամեցուցանեմք: Զայս ասելով ոչ զպատիւ սրբոցն կամիմ փոքր կացուցանել, քաւ լիցի, այլ զունայնից պատկերապաշտաց զչարամտութիւն եւ զխաղաւանս կամիմ զգաստացուցանել»:

Երբ Յովհաննէս Սարկաւագ կը խօսի սրբոց յատկութեանը մասին, կիմանայ այն սուրբերը, որոնք կամ բոլորովին տոհմային են և կամ ընդհանուր քրիստոնէութեան կը վերաբերին, իսկ սաստիկ հակառակորդ մըն է պատկերներու ա՛յն սուրբերուն, զորս յունական եկեղեցին կանոնած է Քաղկեդոնի ժողովէն վերջ. «զյաճախութիւն պատկերաց օտարօտեաց ոմանց և անծանօթից անուանեցելոց սրբոց. մանաւանդ որոյ զկնի հակառակ Քրիստոսի ժողովոյն Քաղկեդոնի, ոչ արժանի և տեսանելոյ անգամ ասասցուք»:

Հեղինակը առիթ առնելով խօսիլ քանի մը Գոնտացինեներու նկատմամբ, որոնք «Աստուածացուցին զնշան Խաչին, զնոյն ինքն զխաչեցեալն մեծապէս անգիտանալով». և քանի մը տողեր նուիրելով վախճանաբանական վարդապետութեան, վերստին կը սկսի պատկերապաշտութեան. «Երկնչիմ զառաւելութիւն սիրոյ պատկերագործութեան, գուցէ ի բանսարկուին խաբէութենէ արտաքոյ իրաւացւոյն, որպէս ահա ճառեցաւ վասն ոմանց հիւսիւսականաց մարդոց, անկանիցին, քանզի սովորութիւն յամենայնումն ի բարս գտեալ, ի բնութեան անկանի կարգ, և տայ խորհիլ օտարոտիս իմն և այլանդակս, որպէս բարւոքն՝ զաւինքն յանկագոյնսն, վասն զի և

կռոցն պաշտօն ո՛չ մերկ ընդ մերկ վաղվաղակի ի ներքս ի մուտ յաշխարհն, այլ ըստ որում գրեալն է, տարաժամ ոգով թաղծեալ հայր վաղամեռիկ որդւոյն արար պատկեր։ Եւ ոմանք ի թագաւորաց նախնեաց փառամոլութեան ախտիւ գերեալք, ըստ քաղաքաց առնապատկերս զիւրեանցն ի վերայ սեանց բարձրագունից և նշանաւոր տեղիս բարձանցն տային կացուցանել հրամայելով պատուել ներբողենիւք, երբեմն և նուիրօք խնկոց և տերեւովք ոստախիտ ծառոց։ Եւ յայնմանէ և յայսպիսի անպատեհ և անկարգ սովորութենէ եկին մարդիկ ի պաշտօն դից և դիւցազանցն անուանելոց, յոյր հայեցեալ անհասանելի և անճառ Աստուծոյ իմաստութեան, պատուէր տայր Մովսէսիւ տանն Իսրայէլի մի՛ ամենեւին պատկեր ինչ զուրուք դնել ի քաղաքս իւրեանց կամ նկարել յորմս տանց թէպէտ և զերկուս քերովբէսն ոսկիս, զայն այլոց խորհրդոց ծայրագունի հրամայեաց առնել և կանգնել առ տապանակաւն, զի թէ զպատկերաւ օձին պաշտեաց Իսրայէլ, զոր և Նէխսթա անուանեցին, յիրաւի զգուշացուցանէր զնոսա Տէր ի ձեռագործ պատկերաց»։

Սարկաւագի գրուածներուն մէջ ալ նշանակելի պարագան սա է, որ իրեն համար Քրիստոսի պատկերը՝ որուն պէտք է երկըրպագել, է «բուն իսկ որ երբեմն յԵդեսացւոց քաղաքին», «տուեալն ի Տեառնէ իւրն անպարագրութեան ամենասուրբ և Աստուածային, պատկեր բարեպաշտին Աբգարու»։ Իսկ նմանօրինակ ձեռագործ պատկերները, երկրորդական տեղ մը գրաւած են իր ճառին մէջ։ Գալով Աստուածածնայ պատկերին, յատկապէս կը յիշատակէ «զսրբոց և զԱստուածածնի կուսին ամենաշնորհ պատկերն զտուեալն, որպէս ասի հաստատութեամբ, խնդրողացն զայն երանելի առաքելոց,» որով կարծես կ'ակնարկէ այն աւանդութեան, ըստ որում Բարթողիմէոս զայն առաքեալներէն ստանալով (!) բերած էր ի Հայս։ Այդ պատկերին կ'ակնարկէ անշուշտ և Շնորհալւոյ երգին սա տունը, «Զկենդանագիր անարատ ծնողի քո անկանիմք առաջի անոխակալ տէրութեանդ քո»։ Բայց արդէն այս պատկերի

*մասին կանխաւ յայտնած ենք մեր կարծիքը, հետեւաբար կրնանք զգալ թէ ի՞նչ արժէք կրնան ունենալ Սարկաւագի և Շնորհալիի վերոյիշեալ տողերը ։*



## ՊԱՏԿԵՐՆԵՐԸ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ

### Բ. ՇՐՋԱՆ (Դար ԺԲ.—ԺԴ.)

*ԺԱ. դարուն այլեւս հայ եկեղեցին եղաւ փայլուն ռազմաբաժինը, որուն ուղղուեցան Լատինները և Յոյները եկեղեցական միութեան մարմաջով ։ Խաչակիր խումբերուն ծնունդ տուող պատճառները, ու արեւմտեան կազմակերպուած ոյժերուն այդ տեղերուն մէջ յաջորդական երեւումները, տեսակ մը միջոց եղան հաւատածաւալման, քանի որ անոնց գերագոյն հովանաւորութիւնը պապական աթոռէն կը բղխէր ։ Միւս կողմէ բիւզանդական կայսրերն ալ սկսած էին աստուածաբան պատգամաւորներ ղրկել Կիլիկիոյ հայ կաթողիկոսներուն, կրօնական միութեան գործին վրայ բանակցելու ։*

*Այդ բոլոր յարաբերութիւններուն չմասնակցեցան երկրին ներքին մասերը և կամ արեւելեան կոչուած վարդապետները, որոնք մեծ թիւ մը կը կազմէին։ Այս վերջինները միտադրած էին ազգին մեծամասնութեան հետ, հակառակ Կիլիկեցիներու օտարամոլ միտումներուն, նշանախէց մը անգամ չփոխել այն աւանդութիւններէն, զորս Նախնիք հրէտակած էին իրենց։*

Եկեղեցիին սպառնացող այս չփոթ կացութեան մէջ, արեւելեան վարդապետները կամ ըսենք Զօրագետացիք, կ'ամբաստանէին Կիլիկեցիները իբր անկարգ և անարգող եկեղեցական հնաւանդ սովորութիւններուն և ծիսից, մինչ վերջինները՝ Զօրագետացիները՝ կ'ամբաստանէին իբր յետադէմ մըտքեր։ Սակայն որչափ ալ յետսամիտ և տգէտ համարուէին արեւելցիք, սա ստոյգ է որ անոնք բարձրագոյն հանճարներու գործը կատարեցին Հայ եկեղեցին իր ծէսերուն ու աւանդութիւններուն մէջ պահպանելու և ճգնաժամական այդ վայրկեաններուն զայն փրկելու այն վտանգներէն որոնք ձուլման սխալ տրամաբանուած և աշխարհիկ նկատումներէ ծնած վարդապետութենէն կը ծագէին։

Կարելի չէ ուրանալ, որ մարդկային այն բոլոր երեւոյթներուն մէջ, ուր ազգեր ու ցեղեր իրենց հիմնաւորութեան կը ձգտին, չպիտի կրնան խուսափիլ այն չփոթ ըմբռնումէն, ուր աշխարհական ու կրօնական ոյժերը իրարու կը փարին, առանց կարենալ զիրար հասկնալու։ Ազգերու զարգացման հոգեբանական օրէնքները ցոյց կ'ուտան, թէ որչա'փ ժողովուրդներ զուրկ գտնուին հասարակաց շահուն և հանրային մեծ խնդիրներուն վրայ դէթ հիմնական սկզբունքներու համաձայնութենէն, չէ կարելի օգտակար արդիւնք մը յառաջ բերել անոնց մէջ։ Այն առենի մեր ժողովրդական վիճակն էր այս. զգացումներու լեզուն անհասկնալի եղած էր մէկ մէկու համար, ու ժողովրդական հատուածները իրենց սեփական գիւղերու ու քաղաքներու հեռանկարէն անդին բան մը չէին կարող տեսնել։ Այս տխուր կացութեան միջոցին էր որ օտար գետնի վրայ աշխարհական ու կրօնական իշխանութիւնները թէ թէի կուտային, աղգակցութեան ու խնամութեան կապերով պնդուած մէկմէկու հետ։ Ու անոնք, որոնք եկեղեցիին գիրկը աւանդապահներ էին, շատ իրաւամբ խոշոր վըտանգներ կը տեսնէին մեր բազմադարեան եկեղեցիին դէմ։

Զարմանալի է սակայն տեսնել որ Կիլիկեցիները միաբանական ձգտումներու մէջ միեւնոյն ջերմ համակրութիւնը ցոյց

կուտան թէ՛ Յոյներուն և թէ՛ Լատիններուն միանգամայն, և միևնոյն սրբութիւնը կը կարծէին գտնել այն երկու եկեղեցիներուն մէջ, որոնք փոխադարձաբար զիրար կը նզովէին իբր հերետիկոսական։ Ուրեմն շատ պարզ է տեսնել թէ անոնց համար կրօնականը պարզ պատրուակ մըն էր այն ատեն, երբ բիւզանդական կայսրերը քահանայապետներու պաշտօնը կը վարէին, և Հռովմի պապերը աշխարհակալի թագերով պսակուած էին։

Եւ տխո՜ւր իրողութիւն. տարամոլութեան անխտրական ձգտումը, սովորոյթի և ունակութեան սկզբունքով, տակաւ առաջնորդեց զիրենք հոգեկան այն տեսակ վիճակի մը, ուր՝ կանխաւ իբր պատրուակ գործածուած արտաքին ձեւակերպութիւնը՝ ժամանակ մը վերջ կորսուած իր հիմնական նկարագիրը, տեղի տայ լուրջ հպատակութեան մը երևոյթին։ Ահա մեր եկեղեցիին մէջ մուտ գտան դաւանական նոր նոր գաղափարներ, ծիսական արարողութիւններ, որոնց կարգէն է պատկերապաշտութիւնը կամ պատկերապատուութիւնը։

Տակաւին ԺԱ. դարուն պատկերներու պաշտօնի մասին եղած համակրութիւնը ընդհանրական գոյն չունէր, մասնաւորներու համար ընդունելի դատուած մեծարանք մըն է լոկ։ Այնպէս որ առաջին խաչակրութեան ժամանակ (1095) երբ Կոստանդին կ'օգնէ անոնց, առաջնորդներ տալով, Նիկեփոր Կալիստոս յոյն պատմիչը կը գրէ թէ Հայերը սիրով ընդունեցին Գերմանները, որովհետև անոնք ալ իրենց նման պատկերապաշտներ չէին [1] (Montesquieu.— De la grandeur des Romains et de la decad. Գլ. ԺԲ. էջ 183)։

Այս դարուն մէջ է որ պատկերներու պաշտելութեան հետ-

---

(1) Նիկոն Պոնտացիի կենսագիրը, որ ըստ ամենայն հաւանականութեան՝ կամ Եւտիմիոս է (ԺԲ. դար) և կամ նոյն այս Կալիստոս՝ կը գրէ Նիկոնի բերանով. «Եւ դարձեալ ոչ պաշտեն (Հայք) զպատկերն սրբոց, այլ մանաւանդ կաթողիկոսն իւրեանց և եպիսկոպոսունքն նզովեն զայնոսիկ որք պաշտեն զնոսա։ Եւ ոչ եւս երկրպագանեն խաչին եթէ նախ ոչ իցէ նա բեւեռեալ և մկրտեալ (իմա. օծեալ)»։ Այս Նիկոն յոյն կրօնաւոր մըն է Ժ. դարուն։

քեր գտնուիլ կը սկսին . ինչպէս կը տեսնուի Մագիստրոսի Թղթերէն մէկուն մէջ ։ Գրիգոր Մագիստրոս սնած յունական ոգւով և դաստիարակութիւնով, և յոյն կայսրերէ մագիստրոսութեան և դքսութեան պատիւը ընդունած, առաջին անձնաւորութիւնն է, որ առանց նկատողութեան առնելու իր աշխարհա-քաղաքական դիրքը, կը մտնէ գրագիտական ասպարէզին մէջ, որ կարծես մինչև այն ատեն կրօնաւորներու մենաշնորհն էր եղած ։ Գրիգոր, որ չկրցաւ բոլորովին ծածկել իր յունական միտումները, այսպէս կը գրէ, իր «Ցաղագս նկարագրութեան սրբոյ եկեղեցւոյն սրահի» թուղթին մէջ . «Բազմաց մոլորեալ ի սնոտի մտածութեան իւրեանց յածման բողբոջին ի խորհուրդս իւրեանց կասկածանս բերեալ՝ կարկառեն զբաքանութեամբ կռապաշտութիւն զմերս պաշտօն համարելով, իբր թէ պատուողացն զնշան խաչին և զպատկերս սրբոց . տակաւին դիւապաշտութեան հաւանեալ զմեզ ասին . . . և այսոքիկ բնաւին որոշելոցն յԱստուծոյ և յուսոյ յարութեան ո՛չ ունողացն, որք ի մանինեցւոցն ուսեալք անուանելոցն Թանդրակեցիք ։ Այլ դու՝ որ եսդ քրիստոնեայ արժանացեալ կոչման և լուսափայլութեան սրբոյ աւազանին, և հաւատացեալ յուսոյ յարութեան, և երկրպագեալ սրբոյ երրորդութեան, յորժամ տեսանես զնշան խաչին, երկիրպագցես, յիշելով, որ վասն քո խաչեցաւ Յիսուս Քրիստոս և տեսցես զքեզ ընդ նմա խաչեցեալ . . . ։ Իսկ զպատկեր սրբոցն պատուեսցես, և կացցես յաղօթս, զմտաւ ածելով զչարչարանս և զնահատակութիւն նոցա, զոր և ուսուցիչ քեզ հաւանեա՛, և զազգակիցն քոյ վկայ ճշմարտութեան, բարեխօս առ ճշմարիտն Աստուած կալցիս, զի այն՝ որ ոչ ննջեն, ըստ հաւատոց քոց ի ծառայ նորա, իբրև մարտիրոսի մարտիրոսասէրիդ ողորմեսցի» ։ (Զամչեան — Ի ծանօթութիւնս Դ. գրոց) «ի վերայ յարգութեան սուրբ պատկերաց ի Հայս» ։

Սակայն Մագիստրոսի այդ յունամիտ գաղափարները չունին այն մեծ հեղինակութիւնը, որով կարելի ըլլայ ըսել, թէ ազգութիւնը ամբողջ պարտաւոր էր իբրև իրը ընդունիլ ։ Մին-

*զուամ չարիս սերմանեաց սատանայ, որպէս առ ոմանս ի տգէտ ժողովրդոց մերոց զպատկերաց սրբոց զանընդունելութիւն, որ և ի մէնջ դարովին այնպիսիքն, նաեւ նզովս ի վերայ դնեմք՝ որ յանդգնին հայոյել, քանզի մեք՝ որք զառաջնորդականն ունիմք զաստիճան, ընդունիմք և երկրպագեմք պատկերի տնօրէնութեան Փրկչին մերոյ, այլ եւ զամենայն սրբոց պատկերս՝ ըստ իւրաքանչիւր կարգի պատուեմք, զորս յեկեղեցիս մեր նկարագրեմք, և ի պատարագամատուցի հանդերձս, և պատուհասել ըմբերանեմք զոչ ընդունողսն ի մերոց զարգէտսն և զտխմարսն»* (Թուղթ Ընդհանրական, Տպ. Կ.Պոլիս, էջ 62)։

*Ահա այս է այն առաջին յայտարարութիւնը, զոր Հայ Եկեղեցին ըրած է իր կաթողիկոսներէն մէկուն բերնով պատկերներուն ի նպաստ։ Պատմական իրողութիւններն ալ կը ցուցնեն, թէ այդ յայտարարութիւնը տեղի ունեցած է ԺԲ. Դարու կիսուն, որովհետեւ Շնորհալի Հայրապետը իր առ Ալեքսիս Թուղթը գրած է ՌԺԴ* 1165 *թուին։ Այդ օրէն այլ եւս վերջ կը գտնէ Հայ. Եկեղեցիի դիմադրութիւնը, որովհետեւ Շնորհալի այն հեղինակութիւններէն մէկը եղաւ ընդհուպ, որուն եւ ոչ մէկ կարծիք կամ աւանդութիւն պիտի կրնար դիմադրել։ Նա ինքն ըրաւ վերջին բարեկարգութիւնները Եկեղեցւոյ ծէսերուն մէջ, նորանոր երգերով ճոխացուց Հայ Եկեղեցիի Շարականն ու Տաղարանը, եւ պատկերներու յաղթութեան ի հաստատութիւն «Զկենդանագիր անարատ ծնողի քո»ն երգեց հրեշտակային ձայնով մը։*

*Շնորհալի Հայրապետ այս մասին իր գաղափարը աւելի ընդարձակ առաջ կը բերէ նաև այն թղթով, զոր ղրկեց Յունաց Էմմանուէլ կայսեր։ Այդ թուղթը կը բովանդակէ «Յաղագս աւանդութեանց եկեղեցւոյ» գլուխ մը, ուր երկարօրէն խօսելով պատարագի գինիին ու հացին, Ծննդեան Տօնին, և Խաչի նշանին մասին, կ՚անցնի հերքել այն զրպարտութիւնները զորս Յոյները պատկերներու առթիւ կ՚ընէին Հայոց համար, «Ըստ այսմ իսկ եւ յաղագս փրկչականն պատկերի եւ սրբոց նորին ի մերոց ոմանց տգիտաց հակառակութիւն ցուցա-*

նի, եւ ձեր առ այնոսիկ դայթակղեալ՝ իբրեւ օրինադրութիւն ի մէնջ կարծելով համօրէն ազգիս ։ Այլ մեք և որ ըստ մեզ այսպէս ունիմք եւ քարոզեմք, թէ որպէս զԱստուածընկալ Խաչն տեսանելով, ոչ երեւելի նիւթոյն, այլ աներեւութին Աստուծոյ որ ի նմա՝ զերկրպագութիւն մատուցանեմք, այսպէս եւ փրկչական պատկերին, ոչ նիւթոյն եւ դեղոցն, այլ Քրիստոսի, որ է պատկեր աներեւութին Աստուծոյ Հօր, երկրպագանեմք նովաւ ։ Իսկ զՍրբոցն պատկերս պատուեմք եւ փառաւորեմք միջնորդ եւ բարեխօս առ Աստուած ունելով, սակայն զերկրպագութիւնն Աստուծոյ, ի ձեռն նոցա մատուցանեմք, զի երկրպագելի միայն Արարչին է պատկեր եւ ոչ արարածոյ» ։

Ներսէս Շնորհալի կանգ չառնէր հոս ; եւ աւելի յառաջ կ'երթայ ապացուցանելու համար թէ որովհետեւ «Պատկեր և անուն միեւնոյն են, լոկ կերպարան եւ սոսկ ձայն նշանակելոյ իրին, մին աչաց և միւսն ականջաց տալով զգայութիւն և էութիւն», ուրեմն ով որ կ'երկրպագէ Քրիստոսի անուան, կ'երկրպագէ նաեւ անոր պատկերին, և փոխադարձաբար ։ Սակայն պէտք է ըսել թէ այդ նմանութենէն՝ որ առերեւոյթ է բոլորովին, այդպիսի եզրակացութեան մը հանիլ դաւանաբանական խնդրոյ մը մէջ ուղիղ տրամաբանութեան գործ չէ ։ Այսու հանդերձ, մեզի համար նուիրական են Շնորհալիի գըրուածները նոյն իսկ իրենց ամէն թերութիւններով ։ «Եւ արդ, եթէ անունն Քրիստոսի, որ և պատկերն, կ'ըսէ Շնորհալի, այնու ի վեր է քան զամենայն անուն, զի երկրպագի յերկնաւորաց եւ երկրաւորաց, որպէս ասաց առաքեալ . . . ապա չէ օրէն զծառայական բնութեան անուն եւ պատկեր, հաւասար բնութեամբ տիրականին պատկերի եւ անուան երկրպագելի վարկանել» . իսկ գալով սրբոց պատկերներու՝ «պատուել եւ յարգել՝ ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան» եւ «ի տեսլենէ պատկերի իւրոցն . . . օրինակ առնուլ մեզ բարեաց» ։

Ցոյժ գեղեցիկ է տիրական եւ սրբոց պատկերներու համ-

դէպ Շնորհալիի ըմբռնումը, բայց աւա՜ղ որ չատ քիչերու մատչելի պիտի ըլլար գաղափարի այս աստիճանաւորութիւնը, որով կարող ըլլայինք միայն բուն կրօնական եւ քրիստոնէական շրջանակին մէջ, ուրկէ դուրս պիտի սկսէր աւելորդապաշտութիւնը։

Վերջին դարերու համար հիմ մը եղաւ Շնորհալիի դաւանանքը, այնուհետեւ ոչ ոք թերեւս երկմտեցաւ համբոյր մը տալ նուիրական պատկերին, զերծ համարելով ինքզինքը կռապաշտութեան աղտեղանքէն, եւ ստուգիւ կը տեսնուի որ իրմէ քիչ մը վերջ, ԺԳ. դարուն, Սիսի ժողովներէն մէկը (Ա.) վճռեց ամենայն համարձակութեամբ, «ընդունիլ զնկարագրութիւն պատկերի Փրկչին եւ ամենայն սրբոց, եւ մի խոտել զնոսա իբրեւ զպատկերս հեթանոսաց»։

Այսու հանդերձ կ'երեւայ դարձեալ որ Շնորհալիի վճիռն ու Սիսի ժողովին կանոնը, ի գործ դրուեցան միայն Կիլիկեան սահմաններու մէջ, իսկ արեւելեան գաւառները դիմադրութիւններ յարուցին չարունակ։ Այս դիմադրութիւնները ինքնին երեւան կուգան, երբ ուշի ուշով կարդանք Մխիթար Ա. Կաթողիկոսի (1341—1355) թուղթը, որով սա սխալ մեկնութիւններ կուտայ, պատկերներու նուագութիւնը բացատրելու համար։ (Չամչեան Դ. Գիրք Ծանօթութիւն էջ 1017)։ Արեւելեան սահմաններու մէջ պատկերներուն նուազութիւնը բացատրելու այդ քաշքշուած պատճառաբանութիւնը՝ Կիլիկեան կաթողիկոսի մը կողմէ՝ իր մեծ նշանակութիւնը ունի։

Պատկերներու պաշտպանութեան վճիռը տրուելէն վերջ, բնական էր, որ Հայերն ալ կատարուած այդ իրողութեան հոսանքէն մղուէին, ընդունելու համար պատկերները իրենց եկեղեցիներուն մէջ, առանց մոռնալու, որ իրենց նախնիքը պատկերամարտներ եղած էին։ Նմանութեան ոգին տարափոխիկ հիւանդութեան մը ազդեցութիւնը ունի, ամէնքն ալ կրնան վարակուիլ անկէ, երբ զգուշաւորութեան միջոցներէն զուրկ գտնուին։ Հայերը ոչ միայն ընդունեցին պատկերները, այլ և Ցայսմաւուրքին մէջ յատուկ օր մը սահմանեցին յիշա-

տակելու Նիկկիոյ Բ. Ժողովը, որուն ժողովականները «Նորոգեցին զպատիւ եւ զերկրպագութիւն սրբոց պատկերացն» (Հին Ցայսմաւուրք Հոկտ. 11, էջ ԾԺԷ) եւ Դեկտ. 5ին յիշատակուած է Սանփաննոս ճգնաւոր մը, որ պատկերներու պաշտպան կանգնած ըլլալուն համար սպաննուեցաւ Կոստանդին Կաւալինոսի (Կոփրոնիմոս ?) հրամանով (1) ։

Երբ անգամ մը ընդունուեցաւ պատկերներու եկեղեցական գործածութիւնը, այլեւս անհնար պիտի ըլլար արգիլել ժողովուրդին այն աւելորդապաշտ ցոյցերը, որով պիտի ուզէր հաւասարիլ իր նախակարապետ յոյներուն, և թերեւս իսկ գերազանցել զանոնք ։ Այլ եւս անհնար պիտի ըլլար, ըստ ասութեան Անանիա Նարեկացիին՝ պատուելուն և պաշտելուն կամ յունական ըմբռնումով Լատրիին և Փրոսքինիսիսին մէջտեղ զանազանութիւն մը դնել տալ հասարակ ժողովուրդին որ տգիտութեան և կոյր աւելորդապաշտութեան չափով պիտի ձեւէր Տէրունականն ու Սրբոց պատկերները, և աւանդու-

(1) Թէ որչափ բուռն է Հայերուն պատկերներու մասին ունեցած անտիրելութիւնը, նոյն իսկ ԺԴ. դարուն, յայտնի կ'երեւայ հետեւեալ պատմութենէն, զոր յառաջ կը բերէ Վարդան (էջ 154—155). «Ցեօթն հարիւր և երկոտասան թուին հանգեաւ ի Քրիստոս անուանի ճգնաւորն և արժանաւորն պատուելի աստիճանաց և կոչմանց, ուր կոչեաց շնորհն Աստուծոյ. ի քահանայութիւն, ի վարդապետութիւն և յարհեպիսկոպոսութիւն տանն Դարդմանայ և այլոց Բերդից և գաւառաց այրն անուանի՝ յՕրեւանի աշխարհի՝ Տէրն Յովհաննէս Տուայեցի անուանեալ... Առաջ ինքնին, չորքայ ի սուրբ Բեթղեհէմ, և տեսի անդ զսուրբ առաքելոցն պատկերսն նկարեալ ի պարիսպ եկեղեցւոյն, և ի պատճառս անարգութեան փորեալ էին զաչսն, տրտմեցայ ընդ իրսն, և աղօթեցի առ սուրբ առաքեալսն աղաչելով յայտնել ինձ՝ եթէ հաճոյ է նոցա ամենայն ուրեք նկարել զնոսա։ Եւ յորժամ դարձայ յՕրուսաղէմ՝ յայն գիշերի տեսի ի տեսլեան երկու այր փառաւորս, զի զայլին առխս, և ելի ես ընդ առաջ նոցա և ասացի. Թէ ով էք սուրբքդ Աստուծոյ. և նոքա ասեն՝ Պետրոս և Յովհաննէս աղաչեցիր ցուցանել քեզ վասն ձեւակերպելոյն զմեզ քրիստոնէից. որ քնաւ չէ մեզ համոյ եւ ձանձրացեալ եմք, եւ յայտնեմք ուրեք եւ չցանկ մեզ» ։ Այս տեսիլքը ինչ արժէք ալ որ ունենայ, իր առարկայական իրականութեան մէջ, սա յայտնի է թէ իր ենթակայական տպաւորութեան բացատրութիւն, կրնայ մեզի բացատրել թէ ինչ գիտեր կը առեղծէին Հայերը վերնական յայտնութիւններով խափանել տալու պատկերներու պաշտօնը ։

թեամբ պահուած մարտիրոսական չարչարանքները աւելի պիտի խօսէին իր բորբոքած երեւակայութեան քան Յիսուսինը, որ վարդապետական ոճով գրուած Աւետարաններովը կը քարոզուէր ։ Ոչ մէկ միջոց պիտի կրնար դիմադրել ժողովրդական հոսանքին, ժամանակը պիտի կատարէր իր պաշտօնը զոհացում տալու համար տկար հոգիներու և անոնց հիւանդ զգացումներուն ։

Այն միակ միջոցը, որով եկեղեցին արգիլեց պատկերներու առատութիւնը, թերեւս եղաւ օծման արարողութիւնը, որուն վրայ պիտի խօսինք քիչ յետոյ ։ Օծումը ամփոփեց պատկերներու կիրառութեան սահմանը որ կրնար անհունօրէն ընդարձակիլ ժողովրդական կամքին ձգուած ատեն, և պահանջեց որ կրօնական յարգանքի արժանի . նկատուին միայն այն պատկերները, որոնք սրբուած են օծման իւղով, կամ միւռոնով ։ Առանց այդ պայմանին, ամէն պատկեր որ դուրս կուգար նկարչին վրձինէն, կամ ոսկերչին հալոցէն, անմիջապէս առարկայ պիտի ըլլար պաշտաման, ինչպէս եղած էր Լատին և Յոյն սովորութիւններով . ըստ որում անոնք կը գոհանան աղօթք մը մրմնջելով նորանկար պատկերին վրայ, զայն հասարակաց պաշտաման իբր առարկայ ներկայացնելէ առաջ ։ Այդ վիճակին մէջ հարկ եղաւ որ օծուած պատկերները տարուին այն տեղերը, ուր ժողովրդական ջերմեռանդութիւնը պէտք կը տեսնէր, մահամերձի մը սնարին մօտ և կամ ուրիշ ցաւով հեծող թշուառի մը քով ։ Ասկէ պատկերով խաչահանգիստ ընելու սովորութիւնը ծնաւ ։ Մեր այս գաղափարին իբր հաստատութիւն առաջ կը բերենք հատուած մը, զոր Սմբատ Դպիր գրած է Միքայէլ Կաթողիկոսին, առ Պետրոս Դ. (ԺԶ. դար) ղրկած թուղթին թիկունքը, «Զնշխարս սրբոց ամենեցուն պատուեմք յարգութեամբ, և ի նշխարաց նոցա մասունս եդեալ փակեալ ի խաչի և յայլ անօթս մեծագին, դնեմք ի վերայ սրբոյ սեղանոյ մեծարանօք ։ Զխաչս օրհնեալս մեծաւ պատւով մեծարեմք և դնեմք բազմոցի ։ Պատուեմք զօրհնեալ (խմա. օծեալ) պատկերս միայն, և զնոսին եւս

դնեմք ի վերայ սեղանոյ ։ Երկիցս յամի քահանայք մեր եւ կղերականք զխաչ և զպատկեր տանին ի տունս և ագարքն և ախտաժէտքն, որք վասն ծերութեանն և վասն խօթութեանն գալ յեկեղեցի ոչ կարեն, զպաշտօն յարգութեան և մեծարանաց նոցին ընծայեն և համբուրեն ։ Խաչք և պատկերք յաճախագոյն գործեն առ մեզ սքանչելի ։ (Ա. Վ. ՊԱԼՃԵԱՆ, Պտմ. Կաթողիկէ վարդապետութեան էջ 156) ։

Պատկերներու օծման սկզբնաւորութիւնը թերեւս ոմանց համար հնագոյն բան մը կ'երեւայ, ինչ որ սխալ կարծիք մըն է մեզի համար, և բոլորովին ենթադրական ։ Սակայն երբ պատմութեան դիմենք, հոն ալ հակասութիւններու պիտի հանդիպինք ։ Յովհան Իմաստասէր Օձնեցի Հայրապետը իր Ընդդէմ Պաւղիկեանց ճառին մէջ այսպէս կը գրէ. «Որպէս և անհաւատիկ մեք բանիւ առաքելոցն հաւատացեալքս ամենասուրբ Երրորդութեան, նկատեմք օծեալ իւղովն զփրկութեան գործարանս, զեկեղեցիս, զսեղանս, զխաչս, զպատկերս և հաւատամք ընդ նմին ի ներքս գալ Աստուածային զօրութեան» (էջ 43) ։ Պէտք է ըսել թէ Օձնեցիի զպատկերս բառը պատկերներու օծում ենթադրել կուտայ այնպիսի ժամանակի մը մէջ, ուր ամէն մարդ մէկ մէկ պատկերամարտ էր եղած ։ Ասիկա կարծեմ բանաւոր չէ ։ Որովհետեւ անոնք որ կը քարոզեն թէ պատկերները լոկ զարդ են եկեղեցւոյ և ոչ առարկայ պաշտելութեան, չէին կրնար ընդունիլ թէ Աստուածային զօրութիւնը բնակած է անոնց մէջ ։ Ուստի ըստ ամենայն հաւանականութեան պիտի ըսենք թէ Օձնեցիի գրուածին զպատկերսը [illegible] ա-ւանցքի յաւելուած մըն է լոկ և վերջէն բնագրին հետ հիւսուած ։

Գէթ այդ կարծիքը պաշտպանելու համար, ունինք պատմական իրողութիւն մը, որուն պիտի ապաւինինք ա[illegible] մեծ ծանրակշռութիւն տալ և հեղինակութիւն ։

Խաչի օծումն ու օրհնութիւնը շատ հին սովորութիւն մըն է մեզի համար, այս ոչ ոք կրնայ ուրանալ ; եւ Շնորհալի իր առ Կիւր Մանուէլ գրած թուղթին մէջ զայդ կը պաշտպանէ .

«Ցաղագս օրհնութեան Խաչի, զոր ունիմք ի նախնեացն հարց, որում եւ ձերքդ հակառակին, զոր եւ յայսր աշխարհի ղնոյն իսկ տեսաք յունարէն գրով ի Հին Կտակարանս». և այդ սովորութիւնն ալ այսպէս կը փաստաբանէ. «Եւ որ ի դէպ է, ընթեռնուլ նախ զԱստուածային զբանսն, զմարգարէիցն եւ զառաքելոցն եւ զաւետարանչացն եւ զաղօթս քահանայականս ի վերայ նորոյ յօրինեալ խաչին, և ապա կանգնել յԱրեւելս եւ երկրպագե՛լ, եթէ լոկ նիւթոյն առանց օրհնութեան զերկրպագութիւն մատուցանել, որպէս զի ամենայն ձեւ քառակուսի երկրպագելի եղիցի, որ ի նկարակերտութիւնս կամ յայլ նիւթս աշխարհի»: Եւ երբ անմիջապէս կը խօսի ի մասին պատկերներու, կը հարցնենք թէ, եթէ պատկերներու օծումը գոյութիւն ունենար մինչեւ այն ատեն, ինչո՞ւ համար պիտի լռէր անոր մասին, երբ խաչին օծման նկատմամբ կը խօսի, և այդօրինակ ենթադրեալ սովորութեան մը յիշատակութիւնը, մանաւանդ մեծ օգուտ մը պիտի մատուցանէր իրեն, երբ կը պաշտպանէր պատկերներու գոյութիւնը: Այդ լռութիւնը ամենէն բացայայտ պատասխանն է այն ճշմարտութեան, ըստ որում տակաւին մօքերնուն անգամ չէին անցըներ օծման այդ արարողութիւնը պատկերներուն համար: Շնորհալիէն ալ առաջ, Թ-Ժ դարուն ապրող մեր նշանաւոր եկեղեցական մատենագիրներէն մէկը, Խոսրով Անձեւացի, իր ժամանակի Մաշթոցներուն ակնարկելով կը գրէ. «Այլև օրհնութիւն միւռոնի, Խաչի եւ եկեղեցւոյ, քահանայական ձեռնադրութեան և օծումն... գրովք սրբովք մեզ կատարեալ լինին...» (Տե՛ս Հ. ՏԱՇԵԱՆ, Մայր ցուցակ Հայ Ձեռագրաց Ա. Հտ. Բ. Գիրք էջ 136 սիւնակ Բ.): Խոսրով որ օրհնութեան կամ օծման ենթարկուած նիւթերը կը յիշէ, ինչո՞ւ ուրեմն չի յիշեր՝ անոնց կարգին՝ պատկերը, եթէ երբեք այն ալ մէկն էր անոնցմէ: Խոսրովի լռութիւնը՝ որ արգիւնք չէ անշուշտ ո՛ և է թաքուն նպատակի՝ կրնայ ապացոյց մը նկատուիլ, թէ մինչեւ Ժ. դար, պատկերներու օծումը տեղ մը չէր կրցած գրաւել մեր Մաշթոցներուն մէջ: Եւ արդէն Օձնեցիին մատենագրութեան

«Ցանկ»ին մէջ ալ պատկերներու օծման յիշատակութիւն չկայ բնաւ, բացի խաչի օրհնութենէն։ Ուրեմն չպիտի սխալած ըլլանք, երբ ըսենք թէ Մաշթոցին մէջ գտնուած «Զնկարեալ եկեղեցի եւ պատկեր օրհնելոյ եւ օծելոյ կանոն»ը գործ է ԺԴ. դարու, յորում բուրվառի բոժոժներու թիւն ու որակն իսկ Աստուածաբանութեան գլուխներէն մէկը կը կազմէին։ Գրութեան ոճն ալ, որ արծաթի դարուն գրուածոց դրոշմն իսկ չունի, կը մատնէ անկեալ գրականութեան մը լեզուն, ուրկէ ԺԴ. դարը կը հոտի բացարձակապէս։

Ահա այդ կանոնին ամբողջութիւնը։

Ցերեկօրեայ հսկումն առնեն, եւ յերրորդ ժամուն զան ի մէջ եկեղեցւոյն եւ ասեն.

Սաղմոս՝ ի թիւ

Երանեալ են ամբիծք. (ամբողջ)

Այս եղեւ ի բեմն, ասեն.

Օրհնեցէք զՏէր յերկնից (13 տուն)

Եւ զկնի ասեն Սաղմոս

Օրհնեցէք մանկունք զՏէր (գլերջ) փառք Հօր .

Քարոզ, վասն ի վերուս։

Եւ եպիսկոպոսն ասէ զաղօթս զայս.

Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն Արարածոց, որ արարեր զզօրս հրեղինաց եւ զդասս Սերովբէից՝ քեզ փառաբանիչս, որք անդադար ձայնիւ զերեքսրբեանն՝ Սուրբ, Սուրբ, Սուրբ, Տէր զօրութեանց, լի են երկինք եւ երկիր փառօք քո ասելով՝ փառաբանեն զքեզ։ Այլեւ արարեր զմարդն եւ եդեր զնա ի դրախտին փափկութեան, ի լուսեղէն փառսն, յորմէ խաբմամբ չարին արտաքս ընկեցաւ։ Բայց Դու ամենողորմդ Աստուած, ո՛չ անտես արարեր, այլ գթացեալ յազգս մարդկան, առեր այն Քեզ, եւ ընտրեցեր զհինգերորդն զՆոյ եւ յանմահութիւն փոխեցեր, եւ զՆոյ ի ջրհեղեղէն տապանաւն ապրեցուցեր։ ԶԱբրահամ սիրեցեր, եւ զաւակէ նորին՝ զազգ մարդկան օրհնել խոստացար, և ընդ Մովսիսի խօսեցար, և զգրաւորական օրէնս նմա պարգեւեցիր։ Եւ այն

*մարդասէրիւք խոստացար յազգս մարդկան, եւ ծանուցեր զՔեզ Տէր եւ Արարիչ ամենայն արարածոց ։ Եւ առաքեցեր զծոցածին Որդիդ Քո գալ եւ ծնանիլ ի Սրբոյ կուսէն Մարեմայ, որ եղեւ մարդ կատարեալ, անշփոթ միութեամբ, եւ քարոզեաց ափեղերաց, եւ ուսոյց մեզ՝ զՔեզ Հայր կարդալ ։ Եւ բարձրացեալ ի վերայ փայտ խաչին՝ եհեղ զարիւն իւր, ի վերայ գլխոյ նախնւոյն մերոյ Ադամայ եւ փրկեաց զարարածս ի ծառայութենէ մեղաց եւ մահու, եդաւ ի գերեզմանի, յարեաւ յաւուր երրորդի եւ համբարձաւ փառօք ի յերկինս ։ Եւ առաքեաց զառաքեալսն ընդ ամենայն ափեղերս քարոզել եւ աւետարանել զՔեզ Տէր եւ Աստուած եւ ի նոցանէ ուսեալք եղեն անթիւ դասք Ս. Հայրապետաց եւ Մարտիրոսաց, Ս. Կուսանաց եւ Ճգնաւորաց, որք վասն անուան քո տանջեցան եւ պսակեցան ի Քէն Տէր ։ Եւ մեք մեղուցեալ ծառայքս քո՝ վասն փառաց եւ պատուոյ քո արարաք այժմ զտիպ և զօրինակ պատկերի՝ զՍրբոց հրեշտակաց եւ զսրբոց մարդկայինս սեռի, որք քեզ արժանաւորեցան՝ եւ ընկալան ի քէն զՀոգիդ Սուրբ ։ Եւ արդ ժողովեալքս՝ ի տաճար քո սուրբ Հայր երկնաւոր՝ աղաչեմք զքեզ, առաքեա զշնորհս Հոգւոյդ Սրբոյ՝ որպէս ի վերնատունն, եւ օրհնեա զպատկեր, զոր արարաք յանուն սրբոց քոց ։ Յիշեա՛, Տէր, եւ զարարող սորա եւ պարգեւեա զմասն եւ զբաժին յարքայութեան քում ։ Օրհնեա՛ Տէր եւ զՔո առաջի կացեալ ժողովուրդս և արժանաւորեա փառս մատուցանել քեզ Հօր և Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ ։*

Խաղաղութիւն ամենեցուն : Աստուծոյ երկիրպագեսցուք ։

*Սուրբ ես Տէր և ի սուրբս հանգուցեալ՝ սրբեա զկենդանագիր պատկերս զայս սրբոց քոց վկայից, զոր այժմ մեք ստացաք ի յիշատակ նոցա և ի պայծառութիւն Ս. Եկեղեցւոյ և ի պատիւ և յերկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեանդ ։ Դու, Տէր, օրհնեա՛ և սրբեա՛ զպատկերս զայս եւ ընկալ զերկրպագութիւնս մեր ի պատիւ փառաց քոց ։ Շնորհեա եւ վարձս բարիս՝ որք վաստակեցին ի սմա, եւ տուր նո-*

ցա զբարի պարգեւաց քոց զհատուցումն : Պարգեւեա մեզ ամենեցուն զթողութիւն մեղաց եւ զընդունելութիւն Հոգւոյդ Սրբոյ , որպէս զի հաւատացեալքս՝ արժանապէս ընծայել կարասցուք զփառս եւ զպատիւ եւ գոհութիւն եւ օրհնաբանութիւն Քեզ Հօր և Որդւոյ եւ Հոգւոյդ Սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս :

Ապա դպիրքն ասեն . Շարական Գ.Զ .

Ջորս ըստ պատկերի քում ստեղծեր (3 տուն) :

Սարկաւագն երգէ .

Ամէն ալէլուեա , ալէլուեա , ալէլուեա .

Իսկ եպիսկոպոսն՝ Ս. Միւռոնաւն սրուակի օծանէ նախ զճակատ պատկերին եւ ապա զայլ պաշտանեալ տեղիսն , ըստ այսմ երիցս ասելով .

Օրհնեսցի , օծցի եւ սրբեսցի ճակատ պատկերիս , այս նշանաւ Ս. Խաչիս եւ Ս. Միւռոնաւս , եւ լինիցի արտաքահաս օգնական եւ փրկիչ ի Տէր ապաւինելոց , ճանապարհորդաց պահապան , ալեկոծելոց օգնական , հիւանդաց բժշկարան , մեղաւորաց քաւարան , եւ աներկիւղ պահեսցէ զայնոսիկ՝ որք ի տարակուսի կան , յանուն Հօր եւ Որդւոյն և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ . . . :

Օրհնեսցի , օծցի և սրբեսցի (այս ինչն) պատկերիս Աստուածային օրհնութեամբ , եւ տացի սմա զօրութիւն բժշկել զհիւանդս , հալածել զդեւս , բարեխօսել վասն մարդկան, շինութիւն տալ տանց , և առողջութիւն շնորհել հոգւոց և մարմնոց յանուն Հօր և այլն :

Օրհնեսցի , օծցի եւ սրբեսցի (այս ինչն) պատկերիս զօրութեամբ Ս. Հոգւոյն , եւ Ս. աջ նորա , եւ այլն .

Եւ ապա խունկ մատուցանեն եւ համբուրեն ամենեքեան կարգաւ զօծեալ պատկերն , եւ երգեն շարական ըստ պաշտմանն նկարմանն : Նմանապէս եւ քարոզն կամ Սուրբ Խաչիւ , կամ Սուրբ զԱստուածածինն , եւ կամ Ս. Ճգնաւորօքն , ըստ որոց իցէ պատկերն նկարեալ , ասելի է : Նոյնպէս եւ աղօթք ըստ պաշտմանն : Եւ ապա ՀԱՅՐ ՄԵՐ :

Մաշտոցի այդ կանոնը, որուն մէջ կրօնական աւելորդապաշտութեան մը խտացումը կայ, զարմանք կ'առթէ մեզի, որովհետեւ 1. Պատկերի օծում ո՛չ Լատինները ունին եւ ո՛չ Յոյները, որոնցմէ փոխ առնուած է մեր եկեղեցւոյ պատկերապաշտութիւնն ալ։ 2. Մեր աչքին առջեւ ունենալով պատմականապէս՝ անցեալ դարերու բուռն պատկերամարտութիւնը և Մաշտոցի խմբագրութեան դարուն այդքան ծայրայեղ պատկերապաշտութիւնը, չենք կրնար ըմբռնել թէ ինչ մեծ յեղաշրջութիւն տեղի ունեցած է այդչափ քիչ ժամանակէն, մեր նախնեաց կրօնական գաղափարներուն մէջ։ Այն հաւատքը, ըստ որում մեր քրիստոնեայ նախնիք կը հաւատային, թէ յանուն Քրիստոսի նահատակուող սուրբերը կրնան «ազգին վերակացու լինիլ, զպաղատանս փոխ տալ, մաղթանօք զԱրարիչն հաշտեցուցանել, գլորելոցն ձեռն տալ եւ կանգնել, համարձակութիւն հայցել ամաչելոցս, և տկարութեան՝ զօրութիւն. դանդաղանաց լքման՝ ջիղս և կազդուրութիւն, բժշկութիւն իշխանականին ի վիշապին խածմանէ, չարեաց եւ չարին ընդդիմակցութիւն, է երբեք զի և հարկաւորաց մարմնոյ պիտոյից անկարօտութիւն» (Յոհ. Սրկ.)։ Ընդհանուր առում մը ունեցաւ յետոյ, այնպէս որ այդ միեւնոյն զօրութիւնը վերագրուեցաւ սուրբերու մասունքներուն և պատկերներուն, պատկերի և անձի չփոթութեան պատճառաւ։ Ահա այս էր ուրկէ կը վախնային մեր նախնիք, եւ որ դժբախտաբար իր իրականութիւնը ունեցաւ դարեր վերջ։

Թէպէտ Յոյները պատկերի օծում չունին,՝ սակայն հաւանական է հաւատալ, թէ մեր պատկերի օծման արարողութեան և աղօթքներուն մէջ բովանդակուած հայցուածները բոլորովին փոխառութիւն են յունական ըմբռնումներէ, որոնք ի յայտ կուգան նոյն իսկ անպաշտօն կերպով, բոլոր հաւատացեալներէն։ Եւ պաշտօնականն իսկ զերծ չէ այդ ըմբռնումներէն, քանի որ նորանկար պատկերի օրհնութեան առեն յոյն եպիսկոպոսը կ'ըսէ «. . . ըստ այսմ հրամանատարութեան կազմեցաք զպատկերս զայս, և աղաչեմք զքեզ Թագաւոր

մեր, առաքեա զՇնորհս Հոգւոյն քո սրբոյ ի պատկերս յայս։ Օրհնեա՛ և Սրբեա՛ զսա, ամենասուրբ անուամբ քով, և տուր սմա զօրութիւն սքանչելեաց ի բժշկութիւն հոգւոց և մարմնոց ծառայից քոց։ Եւ որ ոք հաւատով աղաչեսցէ առաջի սորա, ընկալ զպաղատանս նորա, որպէս խունկ հաճոյական ի ձեռն Ս. Հրեշտակի քո, և կատարեա զխնդրուածս նորա։ Եւ որ եւս նկարել զսա՝ պահեա հզօր աջով քով անփորձ ի չարէ, ի խնամս գթութեան քո, և տուր նմա զառատ ողորմութիւնս քո» եւայլն։ Ասկէ զատ մեր Մաշտոցին, աղեկոծերոց օգնական, և շինութիւն զաղ ցանց հատուածները կը պատշաճին յունական սովորութիւններուն ըստ որում ամէն ճանապարհորդի համար արարողութիւն մը կը կատարուէր, երբեմն Աստուածածնի պատկերին ամբարձումով, իսկ տուները յանձնուած էին խնամքին ա՛յն պատկերին, որուն կանթեղը մշտավառ կը պահէ Յոյնը իր բնակարանին մէջ։

Իբրեւ վերջին բառ մը պիտի ըսենք, թէ Մայր-Մաշտոցի պատկերներու օծման կանոնը, մէկն է այն գլխաւոր կէտերէն, որոնք հիմնական բարեփոխութեան մը կը կարօտին։





## ՊԱՏԿԵՐՆԵՐԸ ԲՈՂՈՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Հիմա մեր աչքին առջեւ ունինք պատկերներու մասին եղած վէճերու գլխաւոր երեւոյթները։ Գրքիս յառաջաբանին մէջ երբ ամէն բան անծանօթ էր մեզի, կը վարանէինք բան մը ըսել պատկերներու ծագման և անոնց գործածութեանը մասին։ Հիմա ընթերցողներն ալ մեզի հետ անցած ըլլալով

այն բոլոր փուլերէն որոնք երկրաքնական խաւերու պէս կազմուեցան քրիստոնէական եկեղեցւոյ ծոցը, պատկերներու չուրջ, ալ դիւրաւ և առանց առաջնորդի պիտի կրնան երթալ հասնիլ այն կէտին, որ մեր նպատակը կազմած էր կանուխէն։

Տեսանք թէ Քրիստոնէութեան առաջին դարերէն սկսեալ պատկերները գործածուեցան մեր կրօնին մէջ, իբր խորհրդանշան Սիրոյ, Յուսոյ և Յարութեան, գործածուեցան հաւատացեալներու մխիթարութեան, և եկեղեցւոյ արեամբ մկրտուած վկաներու փառաւոր յաղթանակին յիշատակութեանը համար։ Այն վայրկեանին երբ եկեղեցւոյ Հայրերը պէտք զգացին զանոնք ներս մտցնելու եկեղեցիէն, յայտարարեցին թէ պատկերները պիտի գծուին զարդարելու համար Աստուծոյ նուիրուած սրբավայրերը, և չինելու տգէտ միտքերը, որոնց վրայ այնչափ ազդեցութիւն չէր կրնար ընել այդ դէպքերու պատմութիւնը։ Ըստ ինքեան չատ անմեղ սովորութիւն մըն էր ասիկա, որովհետեւ պէտք է խոստովանիլ թէ ուր որ կը թերանայ գրականութիւնը, վրձինը կուգայ զայն լրացնել։ Անհունութիւն մը նկարագրելու համար, զոր օրինակ, պէտք պիտի ըլլար հատորներ լեցնել առանց թերեւս կարենալ բան մը հասկցընելու ռամիկ մտքերու. նկարչութիւնը՝ սակայն, բաւական պիտի համարի նուրբ ճարտարութեամբ երկու երանգ իրարու խառնել, ամպեղէն կամար մը ձեւացնել և անոր մէջէն ցոյց տալ անջրպետ մը, որ անհուն հեռաւորութեան մը գաղափարը պիտի կրնայ ներշնչել։ Այս տեսակէտով միայն իրաւացի կը գտնենք պարծանքը նկարիչներուն, թէ «մեր արուեստը լոյս է, որովհետեւ ծերերն ու մանուկները առհասարակ կը վերծանեն»։ Բայց որովհետեւ երեւակայութեան հետ միայն գործ ունի նկարչութիւնը, պէտք էր որ սորբին դիրք մը գրաւէր եկեղեցիին մէջ, բաղդատմամբ Ս. Գրոց և Խաչին, որոնք հաւատքի և դաւանանքի անհուն ներշնչումներ կուտային մարդուն հոգւոյն և սրտին, իբր փրկարար և բարերար ազդեցութիւններ։

Սակայն դարեր անցան, և ամէն բան կորանցուց իր նախ-

նական պարզութիւնը, նիւթը չփոթուեցաւ՝ իր ներկայացուցած նախատիպին հետ, և այսպէսով պատկերներն ալ նոյն անձնաւորութիւններուն տեղը բռնեցին յանիրաւի ։

Փափաքելի էր որ Եկեղեցին նորէն գտնէր իր նախկին պարզութիւնը պատկերներու գործածութեան մասին, փափագելի էր որ նորերը պատկերներու մասին խորհէին ինչպէս կը խորհէին մեր նախնիքը, որոնք մեզմէ աւելի հաւատացեալ, աւելի բարեպաշտ, և աւելի սուրբ անուան արժանացած են իրաւամբ ։ Եւ միթէ այս չէ՞ գիտակից հաւատքին պահանջը, ճշմարիտ քրիստոնեային զգացումը ։

Հիմա քրիստոնէական ամէն եկեղեցի ունի գրեթէ, առաւել կամ նուազ, պատկերի կիրառութեան սովորութիւնը, բացի այն եկեղեցիներէն, որոնք կազմուած են վերածնութեան դարուն ։

Ուստի պէտք տեսնելով, այդ նոր եկեղեցիներուն ալ ցոյց տալ, թէ եկեղեցիին մէջ պատկերներու գործածութիւնը ունի իր մեծ և անվիճելի օգտակարութիւնը, (բայց նախկին պարզ ըմբռնումով գործածուած ատեն), յառաջ պիտի բերենք նոյն իսկ կարծիքը այն մարդերուն, որոնք այդ կրօնական նոր դրութիւններուն կամ հիմնադիրը եղած են, և կամ մէկ կարեւոր ներկայացուցիչը, և այսպէսով վերջացուցած պիտի համարինք մեր գործը ։

Վոն Մէյէր գերմանացին կը գրէ. «Եկեղեցիներու մէջ լաւ պատկերներու գործածութիւնը անվիճելի առաւելութիւն մը ունի ։ Սուրբի մը լաւ պատկերը լուռ քարոզ մըն է»։

Ուօլֆարդ (Woplfahrt) կ՚ըսէ. «Եկեղեցիներու պատկերները ժողովրդեան պատկերազարդ Ս. Գիրքն են»։

«Դիտեցէք մեծ վարպետներու, Ռափայէլի, Դոմինիքէնի, Գուիդի եւ Գիրշինի պատկերները, կը գրէ Վոն Հէրդէր, դիտեցէք սուրբերու այս բոլոր պատկերները և ըսէք թէ այդ հոգեկան շնորհը, այդ վսեմ խառնուրդը չի՞ յուզեր մինչև իսկ հոգին ։»

«Ով որ կեանքէն կը վերցնէ նկարչութիւնը, կ՚ըսէ Լու-

տեր, յափշտակած կ'ըլլայ գոյութեան քաղցրագոյն հրապոյրները. չատ անգամ նկարչութիւնը խօսքէն աւելի լաւագոյն թարգման մըն է: Սխալ է ըսել, թէ անօգուտ է պատկերը: Երբեմն Հրէից տաճարներու մէջ կային քերովբէներ, մարդերու և անասուններու տեսլական (fantastique) պատկերներ: Այն խորհրդանշանները, որոնք կը զարդարեն մեր քրիստոնէական տաճարները, հաւատացեալներու պաշտելութեան համար չեն դրուած, անոնք չքնաղ զարդարանք եւ բարեպաշտիկ յիշատակներ են: Կը հաւատա՞ք ուրեմն որ, եթէ Յիսուսի Քրիստոսի կեանքի տեսարանները նկարուէին մեր նուիրական չէնքերուն վրայ, այդ նիւթական պատկերացումները պիտի չտանէին հոգին Փրկչին կենաց գերագոյն հայեցողութեան: Մերժեցէք ուրեմն, քանի որ պատկեր չէք ուզեր, մերժեցէք աշխարհացոյցերը, սրնգախաղի պատկերները, որոնց միջոցաւ արուեստաւորը երբեմն կը զարդարէ բեմ մը, սիւն մը, կտրեցէք նաև այն աքաղաղը, որ կը բարձրանայ մեր զանգակատան նետին վրայ»:

Լուտերի գաղափարը ամենէն աւելի իր մէջ կը խտացնէ նախնական դարերու ըմբռնումին պայծառատեսութիւնը, կը սրտնեղի պատկերը անօգուտ նկատողներուն հանդէպ ու ասանկով ջատագովներէն մէկը կը հանդիսանայ պատկերներու կիրառութեան: Լուտերի այս ըմբռնումին հակառակ, արդի Բողոքականութիւնը՝ յուռի նախապաշարումի մը վրայ հիմնուած՝ պատկերին կը նայի, իբր թէ աշխարհքի ամենէն զզուելի գործին նայելու սկզբունքով: Արդէն մտքերու ընդդիմամարտ կռիւներուն մէջ բացարձակապէս անթարգմանելի պիտի մնան այն ժխտական ուղղութիւնները, որոնք զիրար կը խաչաձեւեն մարդկային կեանքի կրօնական պատմութեան մէջ, որուն բանալին դեռ չէ յանձնուած մարդոց:

Հակառակ արդի բողոքականութեան, Հայ-Բողոքականութեան մանաւանդ, բռնած ընթացքին Լուտերի ակնյանդիման զգացումներէն վերջ, ամենէն գեղեցիկ դրուագը պիտի կազմէ այս գրքին՝ Շուբարդի կեանքին մէկ պարագան, զոր

հետեւեալ կերպով կը պատմէ ինքը . — «Միշտ աչքիս առջեւ ունիմ այն Փրանկիսկեան կրօնաւորը որ իր վանքին պարտէզին մէջ ծնրադիր Քրիստոսի պատկերին առջեւ, տակաւին արիւնշաղախ իր դաժաններուն խարազաններէն, յանկարծ ոտքի ելաւ այն վայրկենին, երբ ես ներս կը մտնէի ։ Իր աչքերը կը փայլէին քաղցր բարեպաշտութիւնով մը ։

—Գեղեցի՛կ պատկեր, Հայր, ըսի անոր ։

—Սկզբնատիպը աւելի գեղեցիկ է ։

—Բայց ինչո՞ւ չէք դիմեր սկզբնատիպին (Յիսուսի) ։

—Կ'երեւի թէ քաղաքական էք դուք, ուրեմն գիտցէք որ արուեստը իմ երեւակայութեանս տեղը կը բռնէ, մինչ իմ միտքս ճշմարիտ Քրիստոսին քով կը բնակի ։ Առանց հոգւոյդ առջեւ պատկեր մը ունենալու կրնա՞ս աղօթել ։ Աւելի լաւ չէ՞ որ վարպետի մը ձեռքը գծէ սրբոց պատկերը, քան թէ մեր երեւակայութիւնը, որ շատ անգամ հիւանդոտ է ։

—Այլեւս պատասխան մը չունէի տալու, կը գրէ Տաւբարդ։

ՎԵՐՋ

